ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

**12**

ԴԵԿՏԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ ● 1973

ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

12 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1973

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении

# Բովանդակություն

*Ա. Ե. ՔՈՉԻՆՅԱՆ— ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների կատարման, կուսակցական և պետական կարգապահության ամրապնդման գործում սկզբնական կուսկազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը բարձրացնելու միջոցառումների մասին . . . . . . . 3*

*Պ. Պ. ԱՆԻՍԻՄՈՎ— ՀԿԿ Կենտկոմի պլենումների միջև ընկած ժամանակամիջոցում (1973 թ. ապրիլ—նոյեմբեր) Կենտկոմի բյուրոյի աշխատանքի մասին . . . . . . . . . . 27*

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի որոշումը . . . . 39*

ՀՈԴՎԱԾՆԵՐ

*Ս. Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Կառավարման արդյունավետ կառուցվածքը . . 46*

*Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ— Պահանջմունքների հասարակական արժույթը . . 53*

*Հ. Մ. ՀԱԿՈԲՅԱՆ— Արդի կապիտալիզմը և սոցիալական հավասարության պրոբլեմը . . . . . . . . . . . 62*

ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

*Դ. Վ. ԱՅՎԱԶՅԱՆ— Ականավոր բանաստեղծն ու գիտնականը . . . 72*

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

*Օ. ՏԻՄԱՇԿՈՎԱ— Սկանդինավյան սոցիալ-դեմոկրատիան և արդի կապիտալիզմը . . . . . . . . . . . 78*

ՄԱՄՈՒԼԻ ԷՋԵՐԻՑ

*ԿԱՆԴԻԱՆՈ ՖԱԼԱՍԿԻ— Մուսոլինիի վախճանը . . . . . . . 90*

*ՅՈՒ. ԳԱՎՐԻԼՈՎ.— ՆԱՏՕ-ի երկրների ռազմական ծախսերը . . . 100*

ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ

*Հ. Գ. ԳԱՍՊԱՐՅԱՆ— Աշակերտի աշխարհայացքի ձևավորման հզոր գործոնը 101*

*1973 թ. «Լենինյան ուղիով» ամսագրում տպագրված հոդվածների և նյութերի ցանկ . . . . . . . . . . 106*

# Содержание


А. Е. Кочинян — О мерах по повышению роли и ответственности первичных партийных организаций в деле выполнения поставленных XXIV съездом КПСС задач хозяйственного и культурного строительства, укрепления партийной и государственной дисциплины . . . 3

П. П. Анисимов — О работе бюро ЦК КП Армении за период между пленумами ЦК (апрель—ноябрь 1973 г.) . . . . . . . 27

Постановление пленума ЦК КП Армении . . . . . . . 39

**Статьи**

С. А. Карапетян — Эффективная структура управления . . . . 46

А. С. Симонян — Общественная ценность потребностей . . . . 53

О. М. Акопян — Современный капитализм и проблема социального равенства . . . . . . . . . . 62

**Знаменательные даты**

К. В. Айвазян — Выдающийся поэт и ученый . . . . . 72

**Международная жизнь**

О. Тимашкова — Скандинавская социал-демократия и современный капитализм . . . . . . . . . . 78

**Из страниц печати**

Кандиано Фаласки — Конец Муссолини . . . . . . . 90

Ю. Гаврилов — Военные расходы стран НАТО . . . . . 100

**Вопросы воспитания молодежи**

Г. Г. Гаспарян — Важный фактор формирования мировоззрения ученика 101

Перечень статей и материалов, напечатанных в журнале «Ленинян угиов» в 1973 году . . . . . . . . . . 106





Ա. Ե. ՔՈՉԻՆՅԱՆ

ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար


# ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԱՌԱՋԱԴՐԱԾ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԻ ԿԱՏԱՐՄԱՆ, ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԵՎ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԵՐՆ ՈՒ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## ԶԵԿՈՒՑՈՒՄ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ, 1973 Թ. ՆՈՅԵՄԲԵՐԻ 14-ԻՆ*

**Ընկերնե՛ր:**

Կուսակցության XXIV համագումարի պատմական որոշումներով զինված սովետական ժողովուրդը եռանդուն պայքար է մղում երկրի ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյակի պլանային առաջադրանքները հաջողությամբ կենսագործելու, կոմունիստական կուսակցության հոյակապ կանխագծումները իրականացնելու համար:

Կոմունիստական շինարարության խնդիրների լուծման հաջողությունը մեծապես կախված է կուսակցական կազմակերպությունների մարտունակությունից, նրանց կազմակերպական ու քաղաքական աշխատանքի մակարդակից, յուրաքանչյուր կոմունիստի ստեղծագործական նախաձեռնությունից ու ակտիվությունից, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի կառավարման գործում, մեր քաղաքական-հասարակական կյանքի բոլոր ոլորտներում կուսակցական ազդեցության ուժեղացումից:

Ահա թե ինչու, կուսակցության XXIV համագումարը, նախանշելով երկրի զարգացման ժամանակակից փուլում կոմունիստական շինարարության հերթական խնդիրները, ամբողջ ուժով ընդգծեց կուսակցության՝ բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների քաղաքական ղեկավարի դերի հետագա բարձրացումը, որպես այդ խնդիրների հաջող կատարման կարևորագույն պայման, որպես սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման օբյեկտիվ օրինաչափություն:

Կուսակցությունը կազմակերպությունների մի կուռ սիստեմ է, և շատ կարևոր է, որ այդ սիստեմի յուրաքանչյուր օղակ որքան կարելի է լավ գործի, ավելի ակտիվորեն նպաստի կուսակցության առաջատար դերի աճին: Որ-

* *Տպագրվում է կրճատումներով:*

շակի կերպով կարելի է ասել. ինչպես գործում են այդ օղակները, այնպես էլ գործում է կուսակցությունն ամբողջությամբ վերցրած:

Այս մասին առավել հստակ ու ցայտուն կերպով ասել է ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում. «...Եթե մեր կուսակցությունը միշտ և ամեն ինչում հանդես է գալիս որպես միասնական, միաձույլ ուժ, վստահորեն գործում երկրի ներսում և միջազգային ասպարեզում, հաջողությամբ լուծում իր առջև կանգնած խնդիրները, ապա դա հսկայական չափով որոշվում է նրանով, որ հանրապետական, երկրամասային, մարզային, օկրուգային, քաղաքային և շրջանային կուսակցական կազմակերպությունները անշեղորեն կենսագործում են կուսակցության քաղաքականությունը, հանդիսանում ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հուսալի հենարանը»:

Կուսակցության քաղաքականության իրականացման ասպարեզում կարևորագույն տեղ են գրավում նրա սկզբնական կազմակերպությունները: Գտնվելով և գործելով աշխատավորական կոլեկտիվների ընդերքում, նրանք վճռական դեր են խաղում հանրային արտադրության բոլոր տեղամասերում կուսակցության գծի իրագործման համար մարդկանց ուժերի մոբիլիզացման ուղղությամբ, իրենց կազմակերպական ու քաղաքական-գաղափարական աշխատանքով ապահովում են էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի հետագա վերելքը:

Իններորդ հնգամյակում մեր հանրապետության բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ինտելիգենցիայի առջև դրված են մեծ ու պատասխանատու խնդիրներ, որոնց լուծման ուղղությամբ թեև քիչ գործ չի կատարվել, բայց հիմնական աշխատանքը դեռ առջևում է:

Կուսակցության XXIV համագումարի սահմանած դիրեկտիվներից ելնելով, հնգամյակի մնացյալ տարիներին մենք պետք է արագացնենք արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության տեմպերը՝ իրացնենք մեծ չափերի հասնող կապիտալ ներդրումներ, լայնորեն ծավալենք բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարությունը, հասնենք գիտության ու կուլտուրայի հետագա զարգացման, ժողովրդական բարեկեցության զգալի բարձրացման:

Այդ ամբողջ հսկայական գործը կատարելու համար մենք պետք է կատարելագործենք ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ու հանրային արտադրության բոլոր տեղամասերի կուսակցական ղեկավարումը, մեծ ուշադրություն նվիրենք սկզբնական կուսակցական կազմակերպությունների ստեղծագործական նախաձեռնության և ակտիվության զարգացմանը, հիմնարկ-ձեռնարկություններում գործերի վիճակի համար նրանց պատասխանատվության բարձրացմանը:

Ներկայումս հանրապետությունում գործում են 4.818 սկզբնական կուսակցական կազմակերպություններ, որոնք միավորում են 135.473 կոմունիստի: Նրանց գրեթե 60 տոկոսը այժմ զբաղված է նյութական արտադրության բնագավառում:

Լայն ու բազմազան են տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում սկզբնական կուսակցական կազմակերպությունների գործունեության ոլորտները: Նրանց աշխատանքում, բնականաբար, գլխավորը եղել ու մնում է պայքարը կոմունիստական շինարարության հիմքը հանդիսացող էկոնոմիկայի հետագա զարգացման համար: Հանրապետության սկզբնական կուսակցական կազմակերպությունները, կուսակցության շրջկոմներն ու քաղկոմները ներկայումս աշխատավորներին մոբիլիզացնում են՝ ապահովելու հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա առաջադրանքները, ակտիվորեն և հաստատակամորեն պայքարում հանրային արտադրության արդյունավետության բարձրացման համար, ուժեղացնում ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ իրենց վերահսկողությունը:

Ընթացիկ տարվա 10 ամիսների արդյունքները ցույց են տալիս, որ արդյունաբերական շատ ձեռնարկությունների, շինարարական, տրանսպորտային և այլ կազմակերպությունների աշխատավորական կոլեկտիվներ կուսակ-



ցական կազմակերպությունների ղեկավարությամբ պատվով են կատարում իրենց պլանային առաջադրանքներն ու սոցիալիստական պարտավորությունները: Արդյունաբերական արտադրանքի իրացման պլանը հանրապետությունում կատարվել է 102 տոկոսով: Աճի տեմպերը կազմել են 105,2 տոկոս:

Դրական արդյունքների ձեռքբերմանը զգալի չափով նպաստեց այն, որ սկզբնական կուսակցական կազմակերպությունները սկսել են խորամուխ լինել ձեռնարկությունների տնտեսական գործունեության մեջ, բարձրացրել են կազմակերպական-մասսայական աշխատանքի մակարդակը, ավելի գործիմաց կերպով են իրականացնում արտադրության կուսակցական ղեկավարումը:

Այդ տեսակետից ուշագրավ է, օրինակ, Երևանի էլեկտրալամպերի գործարանի՝ «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման գլխավոր ձեռնարկության կուսակցական կազմակերպության աշխատանքի փորձը (կուսկոմիտեի քարտուղար՝ ընկ. Ս. Գուրունյան): Այստեղ բնորոշն այն է, որ իր պրակտիկ գործունեության մեջ կուսակցական կոմիտեն հենվում է արտադրամասային կազմակերպությունների վրա, կուսակցական խմբերի ուշադրությունն ուղղելով անմիջականորեն բրիգադներում, արտադրական տեղամասերում կազմակերպական և քաղաքական-մասսայական աշխատանքի մակարդակի հետագա բարձրացմանը:

Գործարանում լավ է կազմակերպված սոցիալիստական մրցությունը: Բոլոր արտադրամասերը, աշխատամասերն ու բրիգադները, յուրաքանչյուր բանվոր ու ինժեներ ունեն կոնկրետ պարտավորություններ: Մրցության առջևից են ընթանում կոմունիստները, որոնք հայրենասիրական բազմաթիվ նախաձեռնությունների և արժեքավոր առաջարկությունների հեղինակներ են:

Եվ արդյունքներն էլ, բնականաբար, իրենց զգալ են տալիս: Էլեկտրալամպերի գործարանը արդյունաբերական արտադրանքի իրացման 10 ամսվա պլանը գերակատարեց, թողարկելով 2 միլիոն ռուբլու լրացուցիչ արտադրանք, ընդ որում արտադրության ծավալի աճը անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ կազմեց 109,5 տոկոս:

Արտադրության արդյունավետ կազմակերպման և թողարկվող արտադրանքի որակի բարելավման ուղղությամբ աշխատանքի դրական փորձ են կուտակել «Էլեկտրոն» գործարանի, Երևանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի, Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ, Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատների, Երևանի ավտոգործարանի և այլ ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունները:

Փաստերը ցույց են տալիս, սակայն, որ կուսակցական որոշ կազմակերպություններ դեռևս արդյունավետ չեն գործում, թույլ են ազդում ձեռնարկությունների տնտեսական գործունեության վրա:

Վերցնենք, օրինակ, Երևանի ավտոդողերի գործարանը: Այստեղ խիստ անբավարար են իրականացվում ձեռքի աշխատանքը կրճատելու, արտադրական պրոցեսները մեքենայացնելու և ավտոմատացնելու միջոցառումները, ցածր է աշխատանքային և արտադրական կարգապահությունը, մեծ է կադրերի հոսունությունը: Միայն 1973 թվականի 9 ամիսներին ձեռնարկություն են ընդունվել 880 մարդ և ազատվել 682-ը: Զարմանալի չէ, որ գործարանը շարունակ տենդի մեջ է: Չեն կատարվել համախառն արտադրանքի, արտադրության աճի, աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանները և մյուս ցուցանիշները: Լուրջ կշտամբանք է առաջ բերում թողարկվող արտադրանքի որակը: Խոտանից առաջացող կորուստներն ինն ամսում, օրինակ, կազմել են 268 հազար ռուբլի:

Դուք հիշում եք, որ ավտոդողերի գործարանի ղեկավարությունը լուրջ քննադատության ենթարկվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի այս տարվա ապրիլին կայացած պլենումում: Անցած ժամանակաշրջանում այստեղ դրական տեղաշարժեր, իհարկե, կատարվել են: Բայց դեռևս շատ աշխատանք է պահանջվում դրությունը կայունացնելու համար: Ուստի կուսակցության Լե-

նինյան շրջկոմը և Երևանի քաղկոմը պետք է ակտիվորեն միջամտեն ձեռնարկության գործերին, կուսկոմին լուրջ և որակյալ օգնություն ցույց տան՝ արմատապես բարելավելու գործարանի աշխատանքը:

Հանրապետության արդյունաբերական շատ ձեռնարկությունների գործունեության մեջ տեղ գտած լուրջ թերությունների գլխավոր պատճառներից մեկը եղել և մնում է սկզբնական կուսակցական կազմակերպությունների դեռևս անբավարար աշխատանքը: Նրանք հետևողականորեն չեն պայքարում ապահովվելու պլանային առաջադրանքների կատարումը, հարկ եղածին պես չեն մոբիլիզացնում աշխատավորական կոլեկտիվների ուժերը՝ հասնելու արտադրության վերելքի: Եվ պատահական չէ, որ, օրինակ, այս տարվա տասն ամիսներին արդյունաբերական արտադրանքի իրացման պլանը չեն կատարել 98 ձեռնարկություններ կամ հանրապետության ձեռնարկությունների 14,4 տոկոսը: Նրանք չեն իրացրել նախատեսվածից մոտ 34,5 միլիոն ռուբլու արտադրանք:

Լուրջ անհանգստություն է առաջացնում և այն, որ պետական պլանը սիստեմատիկաբար ձախողում են այնպիսի խոշոր ձեռնարկություններ, ինչպիսիք են Երևանի նուրբ բրդյա գործվածքեղենի և Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատները, Երևանի «Պոլիվինիլացետատ» և Լենինականի հղկող հաստոցների գործարանները, «Հայքիմկենցաղ» ֆիրման և այլն:

Հանրապետության արդյունաբերության աշխատանքի վերլուծությունը ցույց է տալիս, որ որպես էական թերություն շարունակվում է մնալ աշխատանքի արտադրողականության դանդաղ աճը: 1972 թվականի համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ աշխատանքի արտադրողականությունը անցած 10 ամիսներին աճել է ընդամենը 2,1 տոկոսով, որը մոտ երկու անգամ պակաս է այս տարվա համար նախատեսված, առանց այն էլ խիստ համեստ, առաջադրանքից: Աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին ստացվել է արտադրության ծավալի աճի միայն 45 տոկոսը, պլանով նախատեսված 71 տոկոսի փոխարեն:

Աշխատանքի արտադրողականության աճի առաջադրանքները սիստեմատիկաբար թերակատարում է հանրապետության ձեռնարկությունների ընդհանուր թվի մոտ 25 տոկոսը:

Մեզ դեռևս չի հաջողվել հաղթահարել բացասական այնպիսի երևույթ, ինչպիսին է փոնդահատուցման, շահույթների նվազումը:

Ներկա պլենումի նախապատրաստության ընթացքում մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունների աշխատանքի ուսումնասիրությունը ցույց տվեց, որ որոշ կազմակերպություններ դեռևս համապատասխան հետևություններ չեն արել ՍՄԿԿ Կենտկոմի 1972 թվականի դեկտեմբերյան պլենումի պահանջներից:

Ձեռնարկությունների կողմից պետական պլանային առաջադրանքների թերակատարումը սկզբնական կուսակցական շատ կազմակերպությունների համար դեռևս չի դարձել արտակարգ դեպք, չի դիտվում որպես պետական կարգապահության կոպիտ խախտում: Ցավոք, մենք քիչ օրինակներ կարող ենք բերել, երբ սկզբնական կազմակերպությունները, կուսակցության շրջկոմները ու քաղկոմները ժամանակին և հրատապ կերպով խորամուխ եղած լինեն պետական առաջադրանքների թերակատարման պատճառների մեջ, կուսակցական պատասխանատվության ենթարկած լինեն գործը ձախողողներին:

Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման արդի էտապում տնտեսական աճը ավելի ու ավելի մեծ չափով պետք է տեղի ունենա այսօրվա գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների լայն ներդրման, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման մյուս ինտենսիվ գործոնների կիրառման հաշվին: Հարկավոր է ամենօրյա ուշադրության կենտրոնում պահել առաջին հերթին աշխատանքի արտադրողականության, ձեռնարկությունների տեխնիկական մակարդակի բարձրացման, թողարկվող արտադրանքի որակի բարելավման, մեքենաների և սարքավորումների, հումքի և նյութերի ռացիոնալ օգտագործման հարցերը:



Փաստերը ցույց են տալիս, սակայն, որ այդ հարցերը հազվադեպ են դառնում կուսակցական ժողովների քննարկման առարկա, իսկ եթե անգամ քննարկվում են, ապա հաճախ մակերեսորեն, առանց պրակտիկ միջոցառումների խոր ու հիմնավորված մշակման: Եվ, ըստ երևույթին, պատահական չէ, որ այս տարի հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունները նոր տեխնիկայի արմատավորման պլանները առայժմ կատարում են 80,5 տոկոսով: Պետական որականիշի է արժանացել առայժմ ընդամենը 83 արտադրատեսակ:

Այսօրվա պլենումում հարկ կա արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրել այն բանի վրա, որ մինչև ընթացիկ տարվա վերջը մենք պետք է լուծենք մի շարք բարդ ու պատասխանատու խնդիրներ այն հաշվով, որպեսզի ապահովենք պլանային առաջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների կատարումը:

Մենք պարտավորություն ենք ստանձնել տարեկան պլանը կատարել 103 տոկոսով, այնինչ առայժմ կատարում ենք 101,7 տոկոսով: Եթե նկատի ունենանք, որ չորրորդ եռամսյակի պլանը արտադրության ծավալի տեսակետից միջին եռամսյակայինից ավելի է 18,7 տոկոսով, իսկ արտադրանքի իրացման գծով՝ 12,8 տոկոսով, ապա պարզ կարելի է պատկերացնել, թե ինչպիսի դժվարություններ դեռ պետք է հաղթահարել:

1974 թվականի շեմին մենք պարտավոր ենք զգաստորեն գնահատել հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ գործերի վիճակը, էկոնոմիկայի զարգացման խնդիրներին մոտենանք հեռանկարի հաշվառումով: Իսկ հաշվարկումները ցույց են տալիս, որ, 1973 թվականի արդյունքների համաձայն, հանրապետությունում արդյունաբերական արտադրության ծավալը 1970 թվականի համեմատությամբ կավելանա մոտ 19,9 տոկոսով, հնգամյակի առաջադրանքներով նախատեսված 31,2 տոկոսի փոխարեն: Ըստ պլանի նախագծի 1974 թվականին արտադրության աճը պետք է կազմի մոտավորապես 11 տոկոս: Թեև դա բարձր ցուցանիշ է, բայց չի փակում հնգամյակի առաջին տարիներին արտադրության աճի տեմպերի մեջ առաջացած նվազեցումը:

Կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվների կատարումն ապահովելու համար 1975 թվականին արտադրության աճը պետք է կազմի 23 տոկոս:

Ինչպես տեսնում եք, մեր առջև չափազանց բարդ խնդիր է ծառացած և դրա լուծման համար արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական կազմակերպությունները, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները պետք է մեծ աշխատանք կատարեն, ըստ ամենայնի մոբիլիզացնեն մարդկանց եռանդն ու ջանքերը, արտադրության բոլոր հնարավորություններն ու ռեզերվները:

Ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը Ալմա-Աթայում տեղի ունեցած հանդիսավոր նիստում սպառիչ հստակությամբ ձևակերպեց հնգամյակի ներկա էտապում կուսակցական կազմակերպությունների խնդիրները և դրանց կենսագործման կոնկրետ ուղիները:

«Հնգամյակի առաջադրանքները կատարելու համար, իսկ մենք պարտավոր ենք դրանք կատարել,— ասաց ընկեր Բրեժնևը,— մենք պետք է նրա մնացած կեսում անենք ավելին, քան առաջին կեսում, ընդ որում բոլոր ուղղություններով՝ գործող կարողությունների ինտենսիվ օգտագործման և նորերի ժամանակին գործարկման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի որակի բարելավման ուղղությամբ: Դրանով է այսօր որոշվում կուսակցական կազմակերպությունների թե՛ պատասխանատվության չափը, թե՛ նրանց պահանջկոտության չափը»:

Ելնելով այդ ցուցումներից, ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունները տնտեսական ղեկավարների հետ մեկտեղ պարտավոր են կարճ ժամանակում վերլուծել յուրաքանչյուր ձեռնարկության, յուրաքանչյուր

արտադրամասի, աշխատամասի գործերի վիճակը և նախատեսել ընթացիկ տարվա պետական պլանների, ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարմանն ուղղված կոնկրետ միջոցառումներ, բարձրացնել պլանի կենսագործման համար յուրաքանչյուր աշխատողի անձնական պատասխանատվությունը:

Կուսակցության քաղկոմների և շրջկոմների, սկզբնական կազմակերպությունների խնդիրն է՝ ամեն ինչ անել ապահովելու հանրապետության ժողովրդական տնտեսության առջև կանգնած պրոբլեմների լուծման գործին աշխատավորների ակտիվ մասնակցությունը: Անհրաժեշտ է այսուհետև է՛լ ավելի լայն թափ հաղորդել սոցիալիստական մրցությանը և, առաջին հերթին, լարված հանդիպական պլանների մշակման ու ընդունման արդեն լայն տարածում գտած շարժմանը:

Սոցիալիստական պարտավորությունների արդյունքներն ամփոփելիս այսօր գլխավոր չափանիշը պետք է դառնա ոչ միայն պլանի գերակատարման տոկոսը, այլև ստանձնած և կատարված պլանների լարվածությունը, արտադրության աճի՝ կոնտրոլ թվերով առաջադրված տեմպերի ապահովումը: Անհրաժեշտ է մեկընդմիշտ վերջ տալ այն արատավոր պրակտիկային, երբ տնտեսական որոշ ղեկավարներ, սահմանված պլանների կատարումն ապահովելու համար աշխատավորական կոլեկտիվների ուժերը մոբիլիզացնելու փոխարեն, բռնում են պետական առաջադրանքները նվազեցնելու հեշտ ուղին:

Յուրաքանչյուր ձեռնարկության գործունեության կարևորագույն ցուցանիշները պետք է դառնան բարձր արտադրողական աշխատանքը, եղած արտադրական կարողությունների օգտագործման մակարդակը, ինչպես նաև նոր հզորությունների ժամանակին յուրացումը:

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները պարտավոր են ավելի խորը թափանցել արդյունաբերական բոլոր օբյեկտների տնտեսական գործունեության մեջ, ուժեղացնել կուսակցական-քաղաքական և կազմակերպական աշխատանքը արտադրական կոլեկտիվներում, խրախուսել այն ձեռնարկությունների փորձը, որոնք ստանձնում և կատարում են արտադրանքի լրացուցիչ թողարկման հանդիպական լարված, բայց և ռեալ պլաններ:

Նրանք պետք է արտադրական բոլոր կոլեկտիվներում, արդյունաբերության բոլոր տեղամասերում հարկ եղածին պես բարձրացնեն աշխատանքային կարգապահությունը, անհաշտ պայքար մղեն անտնտեսվարության ու թափթփվածության, պրոգուլների դեմ, ապահովեն խնայողության խստագույն ռեժիմը, լայնորեն արմատավորեն հանրային արտադրության արդյունավետության բարձրացման ինտենսիվ խթանները, արագացնեն գիտատեխնիկական առաջադիմությունն այն հաշվով, որպեսզի հաստատուն հիմք ստեղծվի հնգամյակը ամբողջությամբ վերցրած հաջող կատարելու համար:

Մեծ ու պատասխանատու խնդիրներ են դրված կառույցների կուսակցական կազմակերպությունների առջև: Շինարարներն այս տարի սկսել են աշխատել որոշ չափով ավելի լավ: Կենտրոնացած կապիտալ ներդրումների հաշվին գործարկվել են 282 միլիոն ռուբլու հիմնական ֆոնդեր: Դա անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ 40 տոկոսով ավելի է: Շահագործման են հանձնվել բնակելի տներ՝ 496 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ, որը 2 անգամ ավելի է, քան անցյալ տարվա նույն ժամանակաշրջանում: Շարք են մտել հանրակրթական բազմաթիվ դպրոցներ, մանկապարտեզներ, մանկամսուրներ և կուլտուր-կենցաղային այլ հիմնարկներ, ինչպես նաև գյուղատնտեսական արտադրական օբյեկտներ:

Աշխատանքի լավ փորձ է կուտակել «Քաջարանշին» տրեստի կուսակցական կազմակերպությունը: Շինարարների այս կոլեկտիվն արդեն 1973 թվականի օգոստոսի սկզբներին զեկուցեց հնգամյակի երեք տարվա կապալային աշխատանքների պլանը տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով կատարելու մասին: Կուսակցական կազմակերպությունը տրեստի ադմինիստրացիայի հետ մեկտեղ մեծ ուշադրություն է նվիրում շինարարության մեջ



աշխատանքի առաջադիմական եղանակների և ձևերի արմատավորմանը: Հանրապետությունում առաջիններից մեկը Զլոբինի մեթոդով աշխատել սկսեց սոցիալիստական աշխատանքի հերոս Գառնիկ Մանասյանի ղեկավարած բրիգադը. երկուսուկես տարում բրիգադն ավարտեց հնգամյա առաջադրանքը, տնտեսելով 22.795 ռուբլու շինանյութ: Ներկայումս տրեստում ստեղծվել են տնտհաշվարկային մեթոդով աշխատող յոթ բրիգադներ, որոնց բանվորները, տիրապետելով մի քանի պրոֆեսիայի, ապահովում են շինարարական աշխատանքների լրիվ կոմպլեքսի կատարումը:

Աշխատանքի դրական փորձ են կուտակել նաև շինմոնտաժային մի քանի այլ տրեստների ու վարչությունների կուսակցական կազմակերպություններ:

Միաժամանակ հարկավոր է ասել, որ հանրապետությունում կապիտալ շինարարության վիճակն ամբողջությամբ վերցրած դեռևս բավարար համարել չի կարելի և մենք լուրջ պահանջներ ենք ներկայացնում կառույցների կուսակցական կազմակերպություններին:

Կենտրոնացված կապիտալ ներդրումների 10 ամսվա պլանը ամբողջությամբ վերցրած կատարվել է 89,1 տոկոսով, շինմոնտաժային աշխատանքներինը՝ 96,8 տոկոսով: Տարեկան պլանի դիմաց շահագործման չեն հանձնվել ավելի քան 411 միլիոն ռուբլու հիմնական ֆոնդեր: Չեն գործարկվել մասնավորապես Արզնու հանքային ջրերի գործարանը, Կիրովականի կահույքի ֆաբրիկան, Սպիտակի ալրաղաց կոմբինատը և արդյունաբերական մի շարք այլ օբյեկտներ, որոնք պետք է շարք մտնեին դեռևս 1972 թվականին: Առաջ է եկել ընթացիկ տարում ուրիշ շատ օբյեկտների գործարկման ժամկետները ձախողելու ռեալ սպառնալիք: Բավական է ասել, որ հանրապետության 148 կարևորագույն նորակառույցներից կապիտալ ներդրումների ընթացիկ տարվա պլանը կատարվում է միայն 51-ում: Մի՞թե դա չի վկայում սկզբնական կուսկազմակերպությունների, քաղկոմների և շրջկոմների թույլ աշխատանքի մասին:

Կառույցների կուսակցական կազմակերպությունները պարտավոր են մոտիկից խորամուխ լինել յուրաքանչյուր օբյեկտի ետ մնալու պատճառների մեջ, հատուկ ուշադրություն նվիրել արտադրության մեջ շինարարության ինդուստրիալ մեթոդների արմատավորմանը, շին-մոնտաժային աշխատանքների որակի բարձրացմանը, ինքնարժեքի իջեցմանը, բոլոր միջոցները ձեռնարկել ապահովելու ընթացիկ տարվա պետական առաջադրանքների կատարումը:

Գործը կազմակերպելիս պետք է մշտապես նկատի ունենալ, որ արդյունաբերության մեջ հնգամյակի առաջադրանքների կատարման կարևորագույն պայմաններից մեկը նոր արտադրական կարողությունների գործարկումն է:

Նախատեսված է ընթացիկ հնգամյակում արդյունաբերական արտադրության աճի 20 տոկոսը ստանալ նոր գործարկվող կարողություններից:

Շինարարական մինիստրությունները, կառույցների տնտեսական ղեկավարներն ու սկզբնական կուսակցական կազմակերպությունները պարտավոր են անվերապահ կերպով ապահովել արտադրական նոր հզորությունները ժամանակին շահագործման հանձնելու ծրագիրը: Այդ նպատակին պետք է ուղղված լինի նրանց տնտեսական, քաղաքական-մասսայական ու կազմակերպական աշխատանքը:

Կենսագործելով կուսակցության XXIV համագումարի որոշումները, հանրապետության գյուղի աշխատավորները հնգամյակի անցած ժամանակաշրջանում որոշակի հաջողությունների հասան գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների ավելացման գործում:

Մեր անասնապահների, գյուղի բոլոր աշխատավորների ջանքերով էր, որ 1972—1973 թթ. ձմռան շրջանում անասնապահական մթերքների արտադրությունն ու մթերումներն ավելացնելու համար ծավալված համամիութենական սոցիալիստական մրցության մեջ մեր հանրապետությունը ևս հաղթող ճանաչվեց և արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի կարմիր դրոշին: Համամիութենական մրցանակներ նվաճեցին նաև Արտաշատի, Մասիսի և Սիսիանի շրջանները:

Անասնապահության բնագավառի 650 առաջավորներ պարգևատրվեցին ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով:

Հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները հաջողությամբ են կատարում նաև հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա պլանային առաջադրանքներն ու սոցիալիստական պարտավորությունները:

Այս տարի արտադրվել է 273 հազար տոննա հացահատիկ և նախատեսված 38 հազարի դիմաց պետությանն է հանձնվել ավելի քան 57 հազար տոննա: Հացահատիկային կուլտուրաների միջին բերքը հեկտարից կազմել է 17,3 ցենտներ: Նոյեմբերի 5-ի տվյալներով մթերվել են մոտ 270 հազար տոննա բանջարեղեն, պլանով նախատեսված 220 հազարի դիմաց, բոստանային կուլտուրաներ՝ 73,5 հազար տոննա, 67 հազարի փոխարեն, կարտոֆիլ՝ 51,5 հազար տոննա, պլանավորված 50 հազարի դիմաց, պտուղ՝ 59 հազար տոննա՝ 49,5 հազարի փոխարեն և խաղողի՝ 37,6 հազար տոննա, 36 հազարի դիմաց: Կատարվել և գերակատարվել են մսի, կաթի, ձվի և բրդի մթերումների պետական պլանները, ինչպես նաև լրացուցիչ առաջադրանքները:

Այդ ամենը ձեռք է բերվել հանրապետության գյուղի աշխատավորների եռանդուն ջանքերով, նրանց ոգեշունչ աշխատանքով, կոլտնտեսությունների և սովխոզների կուսակցական կազմակերպությունների արդյունավետ գործունեության, նրանց քաղաքական ու կազմակերպական ակտիվ աշխատանքով:

Չնայած գյուղատնտեսության ասպարեզի մեր հաջողություններին, ժողովրդատնտեսական այդ ճյուղի զարգացման գործում դեռևս կան լուրջ թերություններ ու բացեր, որոնք հաղթահարելու համար տակավին քիչ ջանք ու եռանդ չի պահանջվում կուսակցության շրջկոմներից և սկզբնական կազմակերպություններից:

Հնգամյակի անցած երկու տարիների արդյունքների վերլուծությունը ցույց է տալիս, որ հանրապետության գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը նկատելիորեն ետ է մնում հնգամյա պլանով սահմանված բնագծերից: Այսպես, 1971—1972 թվականներին համախառն արտադրանքի պլանը կատարվել է 92 տոկոսով: Միայն բուսաբուծության գծով համախառն արտադրանքի առաջադրանքը թերակատարվել է 77,7 միլիոն ռուբլով, այդ թվում խաղողի ու պտղի արտադրության գծով՝ 73,2 միլիոն ռուբլով:

Նախնական հաշվարկներով գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրության 1973 թվականի պլանը կկատարվի 96,5 տոկոսով: Չնայած 1974 թվականի նախագծով գյուղատնտեսական մթերքների արտադրությունը նախորդ տարվա համեմատությամբ պետք է աճի 19,4 տոկոսով, բայց դա զգալիորեն ցածր է հնգամյա պլանով սահմանված առաջադրանքից: Պատկերն ավելի պարզ դարձնելու նպատակով ասենք, որ հնգամյակի վերջին տարվա համար նախատեսված մակարդակին հասնելու համար արտադրության աճի տեմպը 1971—1973 թվականների միջինի համեմատությամբ պետք է կազմի 34,1 տոկոս:

Ահա տեսնում եք, թե ինչպիսի դժվարություններ ու անհետաձգելի լուծում պահանջող խնդիրներ են ծառացած հանրապետության կուսակցական, սովետական, գյուղատնտեսական օրգանների առջև: Իրերի դրությունն ավելի է բարդանում, երբ խորամուխ ես լինում առանձին տնտեսությունների ֆինանսա-տնտեսական գործունեության մեջ: Դրանցից շատերը տարիներ շարունակ չեն կատարում իրենց պլանային առաջադրանքները, էլ չենք ասում ստանձնած պարտավորությունների մասին:

Ահա, օրինակ, Արթիկի շրջանի Սպանդարյանի կոլտնտեսության աշխատանքը: Թվական տվյալներ բերելու հարկ չկա, քանի որ վերջին 3—4 տարիների ընթացքում այստեղ արտադրության ոչ մի ճյուղի գծով պլանները չեն կատարվում: Ցածր են ինչպես դաշտավարության, այնպես էլ անասնաբուծության ցուցանիշները: Եվ հասկանալի է, թե ինչու կոլտնտեսությունն այսօր ընկած է ֆինանսական ծանր դրության մեջ. պետությունից վերցրած վարկերի գումարը հասնում է 630 հազար ռուբլու, այն դեպքում, երբ տնտեսության տարեկան համախառն եկամուտը չի գերազանցում 75 հազարից:



Բայց այդ ամենն ասես չի անհանգստացնում ո՛չ կոլտնտեսության նախագահ Հարությունյանին, ո՛չ էլ սկզբնական կուսակցական կազմակերպության քարտուղար Սահակյանին, մյուս կոմունիստներին, որոնք միջոցներ չեն ձեռնարկում տնտեսությունն այդ վիճակից դուրս բերելու համար:

Տնտեսական տարին հաճախ մեծ վնասներով են փակում Էջմիածնի, Նաիրիի, Աշտարակի, Մարտունու, Ապարանի, Արարատի, Ստեփանավանի, Արագածի, Ամասիայի և այլ շրջանների շատ տնտեսություններ:

Ո՞րն է պատճառը, ինչի՞ վրա է, որ կոլտնտեսությունների ու սովխոզների կուսակցական կազմակերպությունները պատշաճ ուշադրություն չեն դարձնում:

Գյուղատնտեսության արտադրության պլանային առաջադրանքների կատարման ընթացքի վերլուծությունը ցույց է տալիս, որ բազմաթիվ տնտեսություններում դեռևս անբավարար են օգտագործվում հողը, ջուրը, տեխնիկան, պարարտանյութերը, անասնապահության զարգացման հնարավորությունները: Հետևողական աշխատանք չի կատարվում կապիտալ միջոցների նպատակային իրացման, արտադրության մեջ գիտության նվաճումների և առաջավոր փորձի ներդրման, աշխատանքային կարգապահության ամրապնդման ուղղությամբ:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմին անհանգստացնում է հատկապես խաղողագործության և այգեգործության ներկա վիճակը:

Ճիշտ է, խաղողի և պտղի հնգամյա պլանների թերակատարման հիմնական պատճառը 1971—1972 թվականների ձմռան դաժան սառնամանիքներն էին, սակայն դրա կողքին կա և այլ բացատրություն: Բանն այն է, որ մի շարք շրջաններում, հատկապես Արարատյան դաշտի տնտեսություններում, անբավարար ուշադրություն է նվիրվում բարձր եկամտաբեր այդ ճյուղերի հետագա զարգացմանը: Ոչ մի կերպ չի կարելի հանդուրժել վերջին տարիներս շատ տեղերում բավականին տարածում ստացած այն տենդենցը, երբ բանջարա-բոստանային կուլտուրաների ցանքատարածությունները ավելացվում են պտղատու և խաղողի այգիների կրճատման հաշվին: Ստացվում է այնպես, որ հանրապետությունում ամեն տարի միջին հաշվով քանդվում են 1000—1100 հեկտար խաղողի և 450—500 հեկտար պտղատու այգիներ, բայց դրանց փոխարեն հիմնվում են ընդամենը 550 հեկտար խաղողի և 400 հեկտար պտղատու այգիներ:

Մի շարք շրջանների տնտեսություններում խաղողի և պտղատու այգիների նոսրությունը հասնում է 25—30 տոկոսի: Շատ տնտեսություններում դանդաղ են ընթանում հին այգիների վերակառուցման, դրանք լիարժեք դարձնելու, նոր իրացվող հողերում այգիներ հիմնելու, բարձր բերքատու սորտերի ընտրության, այգեգործության և պտղաբուծության աշխատատար գործողությունների մեքենայացման աշխատանքները:

Կուսակցության շրջկոմները, կոլտնտեսությունների և սովխոզների սկզբնական կուսակցական կազմակերպությունները անտարբեր են անցնում նաև այնպիսի փաստերի կողքով, երբ ամեն տարի ոռոգելի հողատարածություններից 14—15 տոկոսը գործածությունից դուրս է մնում. ցածր է ջրի օգտակար գործողության գործակիցը:

Մի շարք կոլտնտեսություններում ու սովխոզներում պատշաճ ուշադրություն չի նվիրվում տեխնիկայի արդյունավետ օգտագործմանը, նրա խնամքին ու պահպանությանը, հարկավոր աշխատանք չի կատարվում սերմնաբուծության գործի կազմակերպման, ցանքաշրջանառությունների արմատավորման ուղղությամբ: Դա է պատճառը, որ դեռևս ցածր է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասունների մթերատվությունը:

Գյուղատնտեսական արտադրության կազմակերպման գործում գոյություն ունեցող թերությունների շարքը կարելի է շարունակել: Բայց ասվածն էլ բավական է ապացուցելու համար, որ կուսակցության որոշ շրջկոմներ, սկզբնական կազմակերպություններ տակավին անբավարար են զբաղվում հանրային արտադրության հետագա զարգացումն ապահովելու հարցերով, հե-

տնողական պայքար չեն կազմակերպում աշխատատար պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման հիման վրա արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, աշխատանքի բոլոր տեղամասերում արդյունավետ աշխատանքի մթնոլորտ ստեղծելու համար:

Առաջիկայում մասնավորապես զգալի աշխատանք պետք է կատարել անասնապահության հետագա զարգացումն ապահովելու ուղղությամբ:

Սկզբնական կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ տնտեսությունների վարչությունների հետ մեկտեղ գործուն միջոցներ ձեռնարկել անկորուստ անցկացնելու անասունների ձմեռումը, վերամշակելու և տնտեսաբար օգտագործելու կուտակված անասնակերը, հասնել այն բանին, որպեսզի մսուրային շրջանում ապահովվի անասնապահության բարձր մթերատվությունը:

Գյուղատնտեսական այդ կարևորագույն ճյուղում արտադրության վերելքի հասնելու համար անհրաժեշտ է զգալիորեն բարելավել տոհմային գործը, զոոանասնաբուժական ծառայության դրվածքը, հատուկ ուշադրություն նվիրել աշխատատար պրոցեսների մեքենայացմանն ու ավտոմատացմանը, արտադրության մեջ լայնորեն արմատավորել գյուղատնտեսական գիտության նորագույն նվաճումները, աշխատանքի առաջավոր փորձը, մասնավորապես մատղաշների ինտենսիվ աճեցման առաջադիմական մեթոդը, ծրագրված աշխատանք կատարել ավելացնելու կերային կուլտուրաների ցանքատարածությունները, բարձրացնելու դրանց բերքատվությունը, կուլտուր-տեխնիկական միջոցառումների անշեղ կիրառման միջոցով ապահովելու բնական խոտհարքների բարելավումը:

Խիստ կարևոր է, որ կուսակցական կազմակերպությունները հետևողական կերպով հաղթահարեն նորի, առաջադիմականի հանդեպ այս ու այնտեղ դրսևորվող անտարբեր, պահպանողական վերաբերմունքը, լինեն տեխնիկական պրոգրեսի կրքոտ պաշտպաններ, ուսումնասիրեն և տարածեն արտադրության առաջավորների աշխատանքի ուսանելի մեթոդները:

Թե չէ մեզանում ստացվում է այնպես, որ արտադրության առաջավորների, նորարարների ջանքերի մի մասը գնում է այն բանին, որպեսզի ծածկվի թերացողների, ետ մնացողների թույլ աշխատանքը: Դա վերաբերում է ոչ միայն մարդկանց աշխատանքին, այլև ամբողջական տնտեսությունների և շրջանների գործունեությանը:

Դա վերաբերում է նաև արդյունաբերությանը, շինարարությանը, ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերին:

Համընդհանուր վերելք հանրային արտադրության բոլոր տեղամասերում, ահա այսօրվա մեր նշանաբանը:

Այս հարցերը մշտապես պետք է գտնվեն կուսակցության շրջկոմների, կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական կուսակցական կազմակերպությունների ամենօրյա ուշադրության կենտրոնում, եթե մենք ուզում ենք իսկապես բարձրացնել նրանց դերն ու պատասխանատվությունը էկոնոմիկայի կազմակերպման ու ղեկավարման ասպարեզում:

Տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառում սկզբնական կուսակցական կազմակերպությունների դերի և պատասխանատվության բարձրացումը աներևակայելի է առանց ներկուսակցական աշխատանքի համակողմանի բարելավման: Սկզբնական կազմակերպությունների գործունեության ակտիվացման, կոմունիստների ստեղծագործական նախաձեռնության զարգացման, հիմնարկ-ձեռնարկությունների աշխատանքի վրա նրանց ազդեցության ուժեղացման ուղղությամբ կատարված կարևոր քայլ էր ադմինիստրացիայի գործունեության վերասհկման իրավունքի վերաբերյալ կանոնադրական դրույթների ճշգրտումը, որն արվեց ՍՄԿԿ XXIV համագումարում:

Համագումարն ընդգծեց, որ անհրաժեշտ է է՛լ ավելի ուժեղացնել ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ կուսակցական կազմակերպությունների վերահսկողությունը և կանոնադրական այդ իրավունքը տարածեց



նաև գիտահետազոտական ինստիտուտների, ուսումնական հաստատությունների, կուլտուր-լուսավորական և բուժական հիմնարկությունների սկզբնական կուսակցական կազմակերպությունների վրա: Մեր հանրապետությունում ադմինիստրացիայի գործունեության վերահսկման իրավունք ստացան լրացուցիչ 1433 սկզբնական կուսակցական կազմակերպություններ, որոնք իրենց կազմում ունեն մոտավորապես 26 հազար կոմունիստ:

Կանոնադրական դրույթների հիշյալ ճշգրտումները կարևոր, սկզբունքային նշանակություն ունեն: Դրանք իրենցից ներկայացնում են ոչ միայն վերահսկողության ուժեղացում, այլև կուսակցության որոշումների և դիրեկտիվների պրակտիկ կենսագործման ասպարեզում սկզբնական կուսակցական կազմակերպությունների պատասխանատվության բարձրացում: Հարկավոր է ասել, որ կուսակցական շատ կազմակերպություններ ճիշտ են հասկացել վերահսկողության իրավունքից բխող իրենց խնդիրները, հարկ եղածին պես ներազդում են հիմնարկ-ձեռնարկությունների աշխատանքի վրա, պատշաճ վերահսկողություն իրականացնում ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ:

Փաստերը միաժամանակ ցույց են տալիս, որ վերահսկողության իրավունք ստացած ոչ քիչ թվով սկզբնական կուսակցական կազմակերպություններ դեռևս չեն վերակառուցել իրենց աշխատանքը կանոնադրական նոր պահանջների ոգով: Դեռևս հարկ եղած բեկումը չի երևում և՛ գիտահետազոտական հիմնարկների, և՛ կուլտուր-լուսավորական ու բուժական հիմնարկների մի շարք սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքում:

Պետք է մեկընդմիշտ հիշել, որ ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ հստակ կազմակերպված կուսակցական վերահսկողությունը կոչված է օգնելու կոլեկտիվների առջև դրված կարևորագույն խնդիրների լուծմանը, տնտեսական կադրերի կողմից արտադրության կառավարման բոլոր լծակները հմտորեն օգտագործելուն: Ղեկավարման կոլեկտիվությունը կուսակցությունը միշտ էլ իրագործում է հանձնարարված գործի համար կադրերի անձնական պատասխանատվության հետ սերտ միասնությամբ: Դա կուսակցության կանոնադրության պահանջներից մեկն է և դրա անշեղ կատարումը կոլեկտիվ ղեկավարման բարձր արդյունավետության կարևորագույն նախադրյալն է:

Վ. Ի. Լենինը նշել է, որ կոլեկտիվության հետ մեկտեղ անհրաժեշտ են միանձնյա պատասխանատվությունը և միանձնյա տնօրինությունը, որպեսզի չլինի քաշքշուկ և որպեսզի անկարելի լինի խույս տալ պատասխանատվությունից:

Իրագործելով վերահսկողությունը, սկզբնական կուսակցական կազմակերպությունը չպետք է բռնի մանրախնդիր խնամակալության, տնտեսական ղեկավարներին փոխարինելու ուղին, անհիմն կերպով միջամտի նրանց օպերատիվ կարգադրիչ ֆունկցիաներին: Մյուս կողմից էլ չի կարելի հանդուրժել, երբ տնտեսական ղեկավարը անտեսում է կոլեկտիվի կարծիքը:

Երևանի տրամվայ-տրոլեյբուսի վարչության պետ ընկ. Եղիազարյանը, օրինակ, փորձում է հաշվի չնստել կուսակցական կազմակերպության հետ: Կազմակերպության ժողովներում նա իրեն այնպես է պահում, ասես արտադրական խորհրդակցություն է անցկացնում, իր մտքերն ու դատողությունները շարադրելով գրեթե որպես կարգադրություններ ու դիրեկտիվներ: Եվ դա այն դեպքում, երբ ակնհայտ է, թե որքան անմխիթարական է գործերի վիճակը քաղաքային տրանսպորտում և առայժմ չի երևում, որ վարչության պետը մտահոգված է աշխատանքի բարելավման խնդրով:

Պրակտիկան ցույց է տալիս, որ այնտեղ, ուր կուսկազմակերպության վերահսկողության ֆունկցիաները մոռացության են տրվում, ուր կոմունիստ ղեկավարը դուրս է գալիս կուսակցական վերահսկողության սահմանից, այնտեղ լուրջ վրիպումներն ու թերությունները անխուսափելի են դառնում:

Այսպես, դեռևս անցյալ տարի Գորիսի ռետինե կոշկեղենի գործարանի ժողովրդական վերահսկողության խումբը սկզբնական կուսկազմակերպությա-

նը և կուսակցության շրջկոմին հայտնել էր ձեռնարկության դիրեկտոր Հարությունյանի կողմից թույլ տրվող կոպիտ չարաշահումների և լուրջ խախտումների մասին: Սակայն, ինչպես սկզբնական կուսկազմակերպությունը, այնպես էլ կուսակցության շրջկոմը, այդ ահազանգերին պատշաճ նշանակություն չտվեցին: Բարձրացված հարցը միայն վեց ամիս անց քննարկվեց, այն ժամանակ, երբ արդեն դիրեկտորը հասցրել էր վերահսկողության խմբի նախագահ ընկ. Հակոբյանին ազատել աշխատանքից՝ «համաձայն իր դիմումի»:

Եվ միայն Հայաստանի կոմկուսի Կենտկոմի միջամտությունից հետո գործը հասցվեց տրամաբանական վախճանի, Հարությունյանը հանվեց աշխատանքից և խստորեն պատժվեց:

Կուսակցության XXIV համագումարի որոշումներում հատուկ տեղ է տրված կուսակցության քաղաքականության իրականացման ասպարեզում մինիստրությունների և գերատեսչությունների սկզբնական կուսակցական կազմակերպությունների դերի հետագա բարձրացման, վերադաս օրգանների դիրեկտիվների կատարման գործում ապարատի աշխատանքի վերահսկումն ուժեղացնելու հարցերին:

Համագումարից անցել է երկուսուկես տարի: Բայց այդ ժամանակամիջոցում հանրապետության ոչ բոլոր մինիստրությունների ու գերատեսչությունների սկզբնական կազմակերպություններն են, որ իրենց աշխատանքը հարկ եղածին պես են վերակառուցել համագումարի պահանջների ոգով: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ նրանցից շատերը դեռևս չեն կարողանում կոմունիստների և անկուսակցականների ջանքերը կենտրոնացնել տվյալ ճյուղի գլխավոր պրոբլեմների և ուղղությունների վրա, արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, գիտատեխնիկական առաջադիմությունն արագացնելու, կուսակցական և պետական կարգապահությունն ամրապնդելու վրա:

Կոմունիստները միշտ չէ, որ սրությամբ են արձագանքում ապարատի գործունեության լուրջ թերություններին, սկզբունքային գնահատական չեն տալիս աշխատանքում տեղ գտած բացասական երևույթներին: Իսկ դա հանգեցնում է այն բանին, որ հանրապետական վերադաս որոշ մարմիններում տեղ են գտնում անտնտեսվարության, պաշտոնական դիրքի չարաշահման, պետական ու ֆինանսական կարգապահության կոպիտ խախտման փաստեր:

Դուք արդեն գիտեք, որ վերջերս Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի բյուրոն, քննարկելով Հայկոոպի վարչությունում, «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորումում և շինանյութերի արդյունաբերության մինիստրությունում տեղ գտած չարաշահումները, անտնտեսվարության փաստերը, կուսակցական ու պետական, ինչպես նաև ֆինանսական կարգապահության կոպիտ խախտումները, աշխատանքից ազատեց և կուսակցական տույժի ենթարկեց նրանց ղեկավարներին՝ ընկ. ընկ. Ստեփանյանին, Խաչատրյանին և Սեկոյանին:

Այդ կապակցությամբ ես ուզում եմ ձեր ուշադրությունը հրավիրել հետևյալ հանգամանքների վրա: Իհարկե, իր վարքագծի ու արարքների համար պատասխանատու է առաջին հերթին ինքը՝ կոմունիստը: Բայց նրա բարոյական կերպարի, նրա գործողությունների համար պակաս պատասխանատու չէ նաև այն սկզբնական կուսակցական կազմակերպությունը, որտեղ նա հաշվառման մեջ է: Պետք է ուղղակի ասել, որ եթե Հայկոոպի վարչության, «Հայգյուղտեխնիկայի» հանրապետական միավորման և շինանյութերի արդյունաբերության մինիստրության կուսակցական կազմակերպություններն ու նրանց բյուրոների քարտուղարները գտնվեին իրենց կոչման բարձրության վրա, համարձակ կերպով բացահայտեին գերատեսչություններում տեղ գտած անհրապույր գործերը, ապա թերևս հնարավոր լիներ խուսափել աղաղակող այն չարաշահումներից ու թերություններից, որոնց համար Կենտրոնական կոմիտեի բյուրոն կազմակերպական խիստ եզրակացություն արեց:

Մինչդեռ թերությունները համարձակորեն բացահայտելը, կուսակցությանն ու պետությանը վնաս հասցնող ամեն տեսակ գործողությունների դեմ



հանդես գալը կուսակցության կանոնադրության մեջ վավերացված է որպես կոմունիստի ուղղակի պարտականություն: Հենց այդ բանն է, մեղմ ասած, մոռացության մատնվել նշված հանրապետական գերատեսչությունների սկզբնական կուսկազմակերպություններում: Գործերին ակտիվորեն չեն միջամտել նաև կուսակցության համապատասխան շրջկոմները:

Լուրջ բարելավման կարիք է զգում նաև առևտրի, կենցաղային և բուժսպասարկման հիմնարկ-ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունների աշխատանքը: Այստեղ ևս ոչ բոլոր կոմունիստներն են բավարար ակտիվությամբ պայքարում օբյեկտներում հարկ եղած կարգ ու կանոն հաստատելու, նրանց գործունեությունը այսօրվա պահանջների մակարդակին բարձրացնելու, մեր հասարակությանը խորթ երևույթները հաղթահարելու համար:

Այդ ամենի մասին խստությամբ ասվել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի այս տարվա ապրիլին տեղի ունեցած պլենումում, ինչպես նաև առևտրի, կենցաղային և բուժսպասարկման աշխատողների կուսակցական-տնտեսական ակտիվի՝ վերջերս տեղի ունեցած հանրապետական ժողովներում:

Առևտրի և հասարակական սննդի ձեռնարկություններում ներկայումս կան 222 սկզբնական կուսկազմակերպություններ, որոնցում հաշվառման մեջ են 4.753 կոմունիստներ: Նման մեծ ուժը կարող էր զգալիորեն ավելի արդյունավետ գործել, եթե կուսակցության քաղկոմները և շրջկոմները բարելավեին նրանց ցույց տրվող օգնությունն ու ղեկավարումը, մշակեին և հետևողականորեն իրագործեին առևտրական հիմնարկների և օբյեկտների կուսկազմակերպությունների ավելի հստակ ու նպատակահարմար կառուցվածք: Դա ասվում է այն պատճառով, որ այժմ առևտրի տարբեր օբյեկտներում աշխատող կոմունիստները մտնում են մի միացյալ կազմակերպության մեջ, մի բան, որը հնարավորություն չի տալիս ավելի կոնկրետ աշխատանք կատարել:

Մեր կարծիքով հասունացել է այդ կառուցվածքը վերանայելու և առևտրի սիստեմի սկզբնական կուսկազմակերպությունների նպատակասլաց աշխատանքն ապահովող առավել արդյունավետ ձևեր ընտրելու անհրաժեշտությունը: Պետք է լուծել նաև ինչպես առևտրի օբյեկտներում, այնպես էլ սպասարկման ձեռնարկություններում կուսակցական խմբեր կազմավորելու հարցը: Ներկայումս դրանց թիվը շատ քիչ է: Մենք համոզված ենք, որ տեղերում կոմունիստների թեկուզև փոքրաթիվ, բայց մարտական, ակտիվորեն գործող խմբերի առկայության պայմաններում սպասարկման ոլորտի կոլեկտիվները հնարավորություն կունենան հաջողությամբ կատարելու իրենց առջև դրված խնդիրները:

Իսկ առևտրի, բնակչության կենցաղային և բուժսպասարկման հիմնարկ-ձեռնարկությունների սկզբնական կուսակցական կազմակերպությունների անելիքները շատ են: Նրանք պարտավոր են պրակտիկ հետևություններ անել իրենց հասցեին ուղղված քննադատական լուրջ դիտողություններից և անհաշտ պայքար մղել մեր հասարակությանը խորթ բարքերի դեմ, օբյեկտներն ամրապնդել գործունյա, ազնիվ մարդկանցով, ապահովել աշխատանքի բարձր կուլտուրա, հաջողությամբ կատարել ինչպես պլանային առաջադրանքները, այնպես էլ կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովներում ստանձնած պարտավորությունները:

Ինչպես գիտեք, վերջերս վարչական մարմինների աշխատողների հանրապետական ակտիվի ժողովում տրվեց սովետական իրավակարգի և սոցիալիստական օրինականության պահպանման վիճակի խոր և բազմակողմանի վերլուծությունը և նշվեցին այդ բնագավառի կուսակցական կազմակերպությունների հերթական խնդիրները: Ուստի թույլ տվեք այսօր ձեր ուշադրությունը հրավիրել վարչական օրգանների և նրանց սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքի միայն մի քանի կողմերի վրա:

Նախ ասենք, որ մեզ դեռևս չի բավարարում սոցիալիստական սեփականության պահպանության ուղղությամբ վարչական մարմինների կողմից

տարվող աշխատանքի մակարդակը: Նրանք տակավին շատ գործ պետք է անեն՝ մինչև վերջ կենսագործելու հանրային ունեցվածքի շռայլումների և հափշտակումների դեմ մղվող պայքարն ուժեղացնելու մասին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի որոշումները: Խոսքն այն մասին է, որ վարչական օրգանների կուսակցական կազմակերպությունները իրենց ամենօրյա ուշադրության կենտրոնում պահեն հանրային ունեցվածքի պահպանության հարցերը, հասնեն այն բանին, որպեսզի սոցիալիստական սեփականության շռայլումների և հափշտակումների դեմ մղվող պայքարում ներքին գործերի մինիստրության, դատական ու դատախազական օրգանների բոլոր ծառայություններում անշեղորեն կիրառվեն սովետական օրենքները:

Կուսակցական կազմակերպությունների մարտունակության աստիճանը որոշվում է նաև նրանով, թե նրանք ինչպիսի եռանդով ու հետևողականությամբ կնպաստակամղեն կոլեկտիվների ուժերը հանցագործությունների կըրճատմանն ու կանխմանը, ամենուրեք հասարակական կարգուկանոնի հաստատմանը:

Այդ խնդիրների հաջող կատարումը վճռականապես կախված է այն բանից, թե վարչական օրգանների կուսակցական կազմակերպություններն ինչպիսի արդյունավետությամբ կբարձրացնեն հանձնարարված գործի հանդեպ կադրերի պատասխանատվությունը, ինչ մեթոդներով ու եղանակներով կհասնեն բարձր կարգապահության բոլոր ծառայություններում: Փաստերը ցույց են տալիս, որ վարչական մարմինների սկզբնական կուսակցական շատ կազմակերպություններում գաղափարական և կազմակերպական աշխատանքը պատշաճ բարձրության վրա չի գտնվում: Նրանց գործունեության մեջ դեռևս քիչ են նախաձեռնությունն ու ձեռներեցությունը, հարկավոր հաստատակամություն չի ցուցաբերվում բոլոր կոմունիստների կողմից կանոնադրական պահանջների անշեղ կատարումն ապահովելու գործում:

Վարչական օրգանների աշխատանքում դեռևս քիչ չեն պետական կարգապահության խախտումները, ծառայական պարտքի հանդեպ անբարեխիղճ վերաբերմունքի փաստերը: Վերցնենք օրինակ, ներքին գործերի Երևանի Սպանդարյանի շրջանային բաժնի սկզբնական կուսկազմակերպության գործունեությունը (կուսբյուրոյի քարտուղար՝ ընկ. Հակոբյան): Այստեղ ցածր է աշխատողների նկատմամբ ցուցաբերվող պահանջկոտությունը, կոլեկտիվում տիրում է լիակատար բարեհոգության մթնոլորտ, չնայած աշխատանքի արդյունքները դրա համար ոչ մի հիմք չեն տալիս:

Համանման թերություններ գոյություն ունեն նաև ներքին գործերի մի շարք քաղաքային և շրջանային այլ բաժինների սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքում:

Վարչական մարմինների կուսակցական կազմակերպությունների այսօրվա առաջնահերթ խնդիրն է զգալիորեն բարելավել քաղաքական-դաստիարակչական և մասսայական աշխատանքը կոլեկտիվներում, առանձնահատուկ ուշադրություն նվիրել կադրերի կոմպլեկտավորման գործին, հասնել այն բանին, որպեսզի օրգաններում աշխատանքի անցնեն միանգամայն անբասիր, կուսակցության ու ժողովրդի շահերին ազնվաբար ծառայելու ընդունակ մարդիկ: Դա ասվում է այն պատճառով, որ սոցիալիստական օրինականությունը պահպանելու և անշեղորեն կիրառելու կոչված մեր վարչական օրգանների աշխատողների մեջ կան նաև առանձին մարդիկ, որոնք իրենք են խախտում օրինականությունը, թույլ են տալիս հանցանքներ, անգամ կաշառք վերցնում, դրանով իսկ արատավորելով սովետական օրենքի պահապանի բարի անունը: Այդպիսի մարդիկ չպետք է տեղ գտնեն վարչական օրգաններում:

Կենտրոնական կոմիտեի պլենումը պետք է կուսակցության քաղկոմներից և շրջկոմներից պահանջի արմատապես բարելավել վարչական օրգաններին ու նրանց սկզբնական կուսակցական կազմակերպություններին ցույց տրվող օգնությունն ու ղեկավարումը այն հաշվով, որպեսզի ամենուրեք, մեր հասարակության բոլոր ոլորտներում հաստատվի օրինակելի կարգուկանոն, խըստիվ կերպով կիրառվեն սոցիալիստական օրինականության և սովետական իրավակարգի պահանջները:



Հանրապետության բուհերի, դպրոցների և ուսումնական մյուս հաստատությունների կուսակցական կազմակերպությունները զգալի աշխատանք են կատարել ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրների իրականացման ուղղությամբ: Նրանք սկսել են ավելի հետևողականորեն և կոնկրետ զբաղվել ուսումնական պրոցեսի կատարելագործման, աշակերտների, ուսանողների գաղափարական դաստիարակության բարելավման, հանձնարարված գործի համար ուսուցիչների, պրոֆեսորա-դասախոսական կազմի պատասխանատվության բարձրացման հարցերով, կիրառելով ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության՝ կանոնադրությամբ տըրված իրավունքը:

Դրա հետ մեկտեղ պետք է նշել, որ առանձին բուհերի, տեխնիկումների, դպրոցների և ուսումնական մյուս հաստատությունների կուսկազմակերպությունների գործունեությունը դեռևս լուրջ բարելավման կարիք է զգում: Նրանք առայժմ հետևողական կերպով չեն պայքարում ուսումնա-դաստիարակչական աշխատանքի կազմակերպման գործում եղած թերությունների վերացման համար, հարկավոր միջոցներ չեն ձեռնարկում ապահովելու մանկավարժական կոլեկտիվների և պրոֆեսորա-դասախոսական կազմի արդյունավետ աշխատանքը: Ավելին, նրանք դեռևս հետևողականություն հանդես չեն բերում, վճռական պայքար չեն մղում այնպիսի անվայել երևույթների ու փաստերի դեմ, երբ որոշ միջնակարգ դպրոցներում հասունության ատեստատներում գնահատականները միտումնավոր կերպով բարձրացվում են, բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատություններում երբեմն թույլ են տրվում դրամաշորթության դեպքեր:

Բուհերի և տեխնիկումների սկզբնական կուսակցական կազմակերպությունների պարտքն է՝ գործն այնպես կազմակերպել, որպեսզի ուսանողները հաստատակամ կերպով տիրապետեն գիտություններին, ձգտեն դառնալ ժամանակակից պահանջներին համապատասխան մասնագետներ, օժտված լինեն կուսակցության և ժողովրդի հանդեպ իրենց քաղաքացիական պարտքը կատարելու պատրաստակամությամբ:

Քաղաքական-դաստիարակչական աշխատանքի ամբողջ սիստեմում մի առանձին տեղ պետք է հատկացնել աշխատավորներին, առանձնապես երիտասարդությանը, սովետական հայրենասիրության, մեր ժողովրդի հեղափոխական, մարտական ու աշխատանքային տրադիցիաների ոգով, ժողովուրդների լենինյան բարեկամության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելուն:

Սովետական ժողովրդի անխախտ բարեկամությունը սոցիալիստական հասարակարգի մեծագույն նվաճումն է: Ռուս մեծ ժողովրդի, մեր երկրի բոլոր ժողովուրդների հետ լենինյան բարեկամությունն ու եղբայրությունը եղել է, կա և կլինի հայ ժողովրդի, Սովետական Հայաստանի բոլոր աշխատավորների ձեռք բերած աննախընթաց նվաճումների և գալիք հաղթանակների գրավականը: Մենք այսուհետև էլ պետք է աչքի լույսի պես պահենք ու պահպանենք մեր անսասան հավատարմությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան դրոշին, ռուս մեծ ժողովրդի, սովետական բոլոր ժողովուրդների հետ եղբայրական բարեկամության և միասնության դրոշին:

Երկու հակադիր սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի միջև մղվող գաղափարական սուր պայքարի պայմաններում մենք երբեք չպետք է աչքաթող անենք մեր հասարակարգին խորթ տրամադրությունների ներթափանցման հնարավորությունը: Բուրժուական պրոպագանդան չի խորշում ամեն տեսակ նենգ ու ստոր միջոցներից, փորձելով ոտնձգություն կատարել սովետական հասարակարգի բարոյա-քաղաքական միասնության, սովետական ժողովուրդների եղբայրական մեծ բարեկամության հանդեպ, թիրախ ընտրելով առաջին հերթին երիտասարդության որոշ մասի քաղաքական անփորձությունը:

Կուսակցական կազմակերպություններից հրամայաբար պահանջվում է է՛լ ավելի անզիջում, հաղթական պայքար մղել մեր գաղափարախոսությանը խորթ բարքերի ու երևույթների դեմ: Սկզբնական կուսակցական կազմակերպությունները, գաղափարական ճակատի բոլոր աշխատողները պետք է իրենց բանավոր ու գրավոր պրոպագանդայում անողոք կերպով մերկացնեն բուրժուական գաղափարախոսության մեքենայությունները, իրենց կրքոտ խոսքով ու կոնկրետ գործերով աշխատավորներին, պատանիներին ու աղջիկներին, ամբողջ երիտասարդությանը համակեն կուսակցության ու ժողովրդի վեհ գործին հավատարմորեն ծառայելու զգացումով:

Շատ են նաև գիտական հիմնարկների սկզբնական կուսակցական կազմակերպությունների անելիքները: Նրանք պետք է իրենց ամենօրյա ուշադրության կենտրոնում պահեն կոլեկտիվների հստակ գործունեության ապահովման խնդիրները, է՛լ ավելի ակտիվորեն ներազդեն գիտահետազոտական աշխատանքների ընթացքի, դրանց արդյունավետության բարձրացման վրա:

Ներկայումս, արդի գիտատեխնիկական հեղափոխության ծավալման պայմաններում, երբ գիտությունն ավելի ու ավելի է վերածվում անմիջական արտադրողական ուժի, առաջին պլան է մղվում արտադրության հետ գիտության դաշինքի հետագա ամրապնդումը: Գիտական օջախների սկզբնական կուսակցական կազմակերպությունները, ֆունդամենտալ հետազոտությունների զարգացման ապահովմանը զուգընթաց, պետք է առանձնահատուկ ուշադրություն նվիրեն կիրառական ուսումնասիրություններին, գործն այնպես կազմակերպեն, որպեսզի գիտության մարդիկ իրենց բաժինը բերեն հանրային արտադրության ինտենսիվ զարգացմանը, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը, պրակտիկայում գիտական արդյունքների և հանձնարարականների արագ ներդրմանը:

Այդ խնդիրների հաջող կատարման համար հարկավոր է, որ սկզբնական կուսակցական կազմակերպությունները առավել ակտիվորեն միջամտեն հետազոտությունների թեմատիկայի ընտրությանն ու մշակմանը, միջոցներ ձեռնարկեն գիտահետազոտական բոլոր հիմնարկներում ու լաբորատորիաներում բարձրացնելու աշխատանքային կարգապահությունը, հանձնարարված գործի հանդեպ մարդկանց պատասխանատվությունը, է՛լ ավելի ուժեղացնեն իրենց ազդեցությունը գիտության բնագավառի ամբողջ գործունեության վրա:

Աշխատավորների կոմունիստական դաստիարակության, նրանց գաղափարական համոզվածության բարձրացման գործում կարևոր դեր են խաղում արվեստն ու գրականությունը, ստեղծագործական միությունները, կուլտուրայի օջախները, որոնց կուսակցական կազմակերպությունների աշխատանքը ևս լուրջ բարելավման կարիք է զգում:

Ղեկավարվելով «Գրական-գեղարվեստական քննադատության մասին» և «Սովետական կինեմատոգրաֆիայի հետագա զարգացման մասին» ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հայտնի որոշումներով, այդ բնագավառների կուսակցական կազմակերպությունները իրենց պրակտիկ գործունեությամբ պետք է առավել ակտիվություն ցուցաբերեն ստեղծագործական պրոցեսի նպատակասլաց կազմակերպման գործում, նպաստեն դասակարգայնության, կուսակցականության և ժողովրդայնության լենինյան սկզբունքների ամրապնդմանը, պայքարեն սովետական արվեստի գաղափարական և գեղագիտական բարձր մակարդակի համար: Նրանք պետք է զգալիորեն ուժեղացնեն իրենց ազդեցությունը ստեղծագործական բոլոր միությունների ու կազմակերպությունների գործունեության վրա, սուր կերպով արձագանքեն կոմունիստական գաղափարախոսությանը խորթ, սխալ կոնցեպցիաների ամեն տեսակ դրսևորումներին, ապահովեն գեղարվեստական ստեղծագործություններում սովետական ժողովրդի աշխատանքային հերոիկայի, մեր հիանալի իրականության լայն արտացոլումը:

Ընկերնե՛ր:

Կուսակցական կազմակերպությունները կարող են առավել արդյունավետությամբ կատարել տնտեսական ու կուլտուրական շինարարության ղեկավարման գործում, կուսակցական և պետական կարգապահության ամրապնդման ասպարեզում իրենց առջև դրված խնդիրները միայն այն դեպքում, եթե նրանք անշեղորեն ղեկավարվեն ներկուսակցական կյանքի լենինյան սկզբունքներով, ամեն կերպ զարգացնեն կոմունիստների ակտիվությունը և ստեղծագործական նախաձեռնությունը:



Ղեկավարվելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներով, հանրապետության կուսակցական շատ կազմակերպություններ նկատելի առաջընթաց քայլ են կատարել ներկուսակցական դեմոկրատիայի հետագա զարգացման, կուսակցական կարգապահության ամրապնդման ուղղությամբ: Դա իր պրակտիկ մարմնավորումն է գտնում առաջին հերթին հարցերի գործարար քննարկմամբ անցնող կուսակցական ժողովներում, որոնք հանդիսանում են կազմակերպությունների բարձրագույն օրգանը և առաջնակարգ դեր են խաղում կոմունիստների դաստիարակության գործում:

Մեր կուսակցական շատ կազմակերպություններում բարելավվել է ժողովների նախապատրաստության և անցկացման գործը, ապահովվում է քաղաքական և կազմակերպական աշխատանքի հարցերի ազատ և անկաշկանդ քննարկումը: Կոմունիստների ելույթները դարձել են է՛լ ավելի բովանդակալից և գործնական:

Չնայած այդ ամենին, կուսակցական ժողովների նախապատրաստության և անցկացման պրակտիկայում դեռևս գոյություն ունեն շատ թերություններ: Հաճախ այստեղ քննարկման են դրվում երկրորդական, աննշան հարցեր, իսկ կենտրոնական, գլխավոր պրոբլեմները, որոնք հուզում են ամբողջ կոլեկտիվին, մնում են տեսադաշտից դուրս:

Կուսակցական ժողովը հանդիսանում է կոմունիստների կյանքի ղեկավարման կոլեգիալ օրգանը, նրանց միջև կարծիքների գործարար ու սկզբունքային փոխանակման տրիբունան: Քննադատությունն ու ինքնաքննադատությունը կուսակցությունը դիտում է որպես իր շարքերի ամրապնդման և մարտունակության բարձրացման կարևորագույն պայման: Մինչդեռ սկզբնական որոշ կազմակերպություններում թերությունների վերհանման այդ մեթոդը պատշաճ կիրառություն չի գտնում: Քիչ չեն նաև դեպքերը, երբ շրջանցվում են կոմունիստների իրավացի դիտողություններն ու առաջարկությունները, միջոցներ չեն ձեռնարկվում դրանց կենսագործման ուղղությամբ:

Կուսակցական աշխատանքի պրակտիկայից դեռևս չեն վերացվել նաև քննադատության ուղղակի խլացման դեպքերը: Բերեմ մի այսպիսի օրինակ: Լենինականի մսի պահածոների կոմբինատի կուսակցական կազմակերպության ժողովներից մեկում ՍՄԿԿ անդամ ընկ. Յուրովը քննադատեց ձեռնարկության կուսբյուրոյի և նրա քարտուղար ընկ. Դիլանյանի աշխատանքը, բերելով քարտուղարի կողմից իր պաշտոնական դիրքը չարաշահելու մի շարք փաստեր: Փոխանակ սկզբունքորեն մոտենալու կոմունիստի ահազանգին, սկզբնական կազմակերպության բյուրոն և ժողովը շտապեցին Յուրովին ենթարկել կուսակցական պատասխանատվության: Այնինչ, հետագայում լիովին հաստատվեց, որ Դիլանյանը, իրոք, թույլ է տվել կոմունիստին անվայել արարք, իր անձնական կարիքների համար օգտագործելով ձեռնարկությանը պատկանող նյութերը:

Ինչպես և սպասվում էր, կուսակցության Լենինականի քաղկոմը չեղյալ համարեց կոմբինատի սկզբնական կազմակերպության ոչ ճիշտ որոշումը և Դիլանյանին ազատեց բյուրոյի քարտուղարի պարտականություններից, նրա անձնական քարտում գրանցելով խիստ նկատողություն:

Կուսակցական կազմակերպության դերն ու պատասխանատվությունը բարձրացնել՝ նշանակում է բարձրացնել յուրաքանչյուր կոմունիստի մարտունակությունը, արտադրության մեջ նրա ավանգարդային դերը, նշանակում է խելացիորեն կիրառել կուսակցական հանձնարարությունների սիստեմը: Ահա, թե որ հարցերի վրա իրենց ուշադրությունը պետք է բևեռեն սկզբնական կուսակցական կազմակերպությունները: Կուսակցական կազմակերպություն-

ների կարևորագույն խնդիրն է բոլոր կոմունիստներին, անկախ նրանց զբաղեցրած պոստերից, դաստիարակել կուսակցության ծրագրում ձևակերպված բարոյական կոդեքսի պահանջների անշեղ պահպանման ու կիրառման ոգով:

Ցավոք, մեզանում կան կոմունիստներ, որոնք կոպտորեն խախտում են կուսակցական և պետական կարգապահությունը, չարաշահում իրենց պաշտոնական դիրքը, բռնում են դրամաշորթության, ընչաքաղցության ուղին, ձեռք մեկնում դեպի սոցիալիստական սեփականությունը: Փաստերը վկայում են, որ սկզբնական կուսակցական որոշ կազմակերպություններ դեռևս թույլ են պայքարում նման բացասական երևույթների դեմ, ժամանակին չեն կանխում մանր զանցանքները, որոնք, աստիճանաբար վերաճելով, դառնում են հանցանքներ, և որոնց համար հարկ է լինում հաճախ մարդկանց նկատմամբ ձեռնարկել ծայրահեղ միջոցներ:

Մեզ մեծ մտահոգություն է պատճառում այն, որ դեռ կան մարդիկ, որոնք շահի ետևից ընկնելով, իրենց մանր սեփականատիրական, աղայական վերաբերմունքով, ուղղակի ասենք, գցում են սովետական քաղաքացու, կոմունիստի, ղեկավարի արժանապատվությունը: Եվ վատն այն է, որ այդ ամենը տեղի է ունենում սկզբնական կուսակցական կազմակերպությունների, կոմունիստների աչքի առաջ, որոնք, ցավոք, կարգի չեն հրավիրում չափը կորցրած մարդկանց:

Ինչպես կարող է պատահել, օրինակ, որ Երևանի թղթի-կարտոնի ֆաբրիկայի կոմունիստները (կուսբյուրոյի քարտուղար՝ ընկ. Աթոյան) նկատած չլինեին կոլեկտիվի շահերի նկատմամբ ձեռնարկության դիրեկտոր Ծատախչյանի անտարբեր, արհամարհական վերաբերմունքը: Չէ՞ որ լինելով ձեռնարկության վարչական կորպուսի շենքում, նրանք չէին կարող չտեսնել դիրեկտորի կաբինետի աչք ծակող շքեղությունը, մարմարապատ կաբինետ, ընդունարանում խփող շատրվան և այլն: Իսկ դրանից տառացիորեն մի քանի քայլ այն կողմ՝ ջարդոտված ապակիներով արտադրամասեր, խառնափնթոր տերիտորիա, հակասանիտարական անտանելի վիճակ:

Այդ սանձարձակ ղեկավարը ներկայումս վտարված է կուսակցության շարքերից և քրեական պատասխանատվության է կանչված հափշտակումների և ֆինանսական խախտումների համար: Բայց դարձյալ օրինական հարց է առաջանում, թե հապա ո՞ւր էին ձեռնարկության 20 կոմունիստները, մի՞թե իսկապես նրանք այդ ամենը չէին տեսնում: Իհարկե, տեսնում էին, բայց մնում կատարվող խայտառակությունների լուռ վկաները:

Նման այլանդակությունները արմատախիլ անելու գործում դեռևս շատ անելիքներ ունեն կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները: Պետք է գոհունակությամբ նշել, որ կուսակցության Երևանի, Լենինականի, Կիրովականի քաղկոմները, Ղափանի շրջկոմը և կուսակցական մի քանի այլ կոմիտեներ զգալիորեն վերակառուցել են իրենց աշխատանքը մեր հասարակությանը անհարիր երևույթների դեմ մղվող պայքարում: Այս ասպարեզում մենք կուտակել ենք աշխատանքի ուսանելի ոչ քիչ փորձ: Ահա, օրինակ, կուսակցության Սովետականի շրջկոմի գործունեությունը: Չնայած շրջկոմը համեմատաբար նոր է կազմակերպվել, բայց կարճ ժամանակաշրջանում հասցրել է նկատելի գործ կատարել հակահասարակական երևույթների դեմ, պետական ու կուսակցական կարգապահության ամրապնդման պայքարում: Այդ գործում սկզբնական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով անհրաժեշտ է ձեռնպահ մնալ այն պրակտիկայից, երբ կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները կոմունիստ ղեկավարների անձնական գործերը որպես կանոն քննարկում են իրենց բյուրոներում, շրջանցելով սկզբնական կազմակերպություններին:

Իհարկե, հաճախ իրադրությունը պահանջում է ղեկավարների նկատմամբ եզրակացություն անել կոմիտեների բյուրոներում: Բայց այդ դեպքում անհրաժեշտ է բյուրոյի որոշումը քննարկման դնել այն սկզբնական կազմակերպությունում, որտեղ տույժի ենթարկված կոմունիստը հաշվառման մեջ է գտ-



նվում: Մենք իրավունք չունենք կուսակցության անդամներից թաքցնել կոմունիստի, այդ թվում և ղեկավար աշխատողի անհրապույր գործերը: Չպետք է մոռանալ այն հանրահայտ դրույթը, որ մեր կուսակցության մեջ երկու կարգապահություն չկա: Կա միայն մի կարգապահություն բոլոր կոմունիստների համար:

Ընկերնե՛ր:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ձեռնարկած լուրջ միջոցառումների շնորհիվ ներկայումս հանրապետությունում ուժեղացել է մեր իրականության մեջ դեռևս գոյություն ունեցող բացասական երևույթների դեմ մղվող պայքարը: Նկատելիորեն բարելավվել է քաղկոմ-շրջկոմների աշխատանքն այդ բնագավառում: Նրանք իրենց պրակտիկ աշխատանքում ելնում են այն բանից, որ հասարակության նյութական հարստությունների աճի, մարդկանց բարեկեցության բարձրացման պայմաններում գաղափարական-դաստիարակչական անբավարար աշխատանքի առկայության դեպքում կարող են առաջանալ անցանկալի երևույթներ, իսկ հաճախ աշխուժանալ շորթողական տրամադրությունները, ընչաքաղցությունը, եսամոլությունը: Չնայած սոցիալիստական մեր հասարակարգում մանրբուրժուական ինդիվիդուալիզմը սոցիալական որևէ հիմք չունի, բայց այն կարող է որոշ մարդկանց մոտ դրսևորվել «սպառողական» հոգեբանության տեսքով:

Այո, քիչ չեն փաստերը, երբ ոմանք հակված են ապրելու ուրիշների հաշվին, վարելու պարազիտային կյանք, զբաղվելու սպեկուլյացիայով, հարստանալու անաշխատ եկամուտներով, արհամարհելով մեր հասարակարգում գործող կանոնները, մեր սոցիալական, քաղաքական ու հոգևոր շահերը: Նման երևույթների դեմ մղվող պայքարի ուղիները կուսակցական կազմակերպությունները պետք է որոնեն և՛ վարչական միջամտության մեջ, և՛ աշխատավորական մասսաներին սովետական օրենքների ու սոցիալիստական համակեցության կանոնների խստագույն պահպանման ոգով դաստիարակելու մեջ, մեր հասարակությանը խորթ բարքերի դեմ համընդհանուր անհանդուրժողականության կարծիք ստեղծելու և, առաջին հերթին, աշխատանքի նկատմամբ հասարակության բոլոր անդամների մոտ կոմունիստական վերաբերմունք պատվաստելու մեջ:

Այդ իմաստով անգնահատելի, կարելի է ասել, վճռական է աշխատավորական կոլեկտիվների դերը անհատի համոզմունքների, նրա հասարակական բարձր գիտակցականության ձևավորման գործում: Այդ բանը ամբողջ ուժով բազմիցս նշել է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, սկզբնական կուսակցական կազմակերպությունների առջև խնդիր դնելով՝ է՛լ ավելի արդյունավետ կերպով օգտագործել մեր հասարակության կարևորագույն սոցիալական օղակը հանդիսացող՝ աշխատավորական կոլեկտիվի ներգործուն մեծ ուժը մարդկանց դաստիարակության գործում:

Սկզբնական կուսակցական կազմակերպությունների գործունեության կարևորագույն մասն է կազմում արհմիութենական, կոմերիտական ու հասարակական մյուս կազմակերպությունների աշխատանքի ղեկավարումը: Նրանք իրենց ամենօրյա գործունեության մեջ պետք է մեծ տեղ տան հիմնարկ-ձեռնարկությունների գործերում այդ կազմակերպությունների ակտիվությունը բարձրացնելու և ստեղծագործական նախաձեռնությունը զարգացնելու հարցերին: Չպետք է մոռանալ, որ արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների աշխատանքի համար առաջին հերթին պատասխանատու են կուսակցական կազմակերպությունները: Նրանք պետք է ապահովեն հանրային արտադրության արդյունավետ կազմակերպման, սոցիալիստական գործարար մրցության լայն ծավալման գործում արհմիութենական կազմակերպությունների ակտիվացումը, ուժեղացնեն կոմերիտական կազմակերպություններում կուսակցական կորիզը:

Հարկավոր է կոմերիտական կազմակերպություններին սովորեցնել երիտասարդության հետ աշխատելու նոր ձևերին ու մեթոդներին, առանձնահատուկ ուշադրություն նվիրել պատանիների և աղջիկների մարքս-լենինյան

կոփվածությանը, նրանց մոտ հանրային ունեցվածքի, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակությանը, ամեն կերպ խրախուսել կոմերիտականների ինքնագործունեությունը, աջակցել և տարածել նրանց օգտակար նախաձեռնությունները:

Տնտեսական և կուլտուրական շինարարության կուսակցական ղեկավարման անբաժանելի բնագավառն է կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության գործը:

Մեր հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ներկայումս աշխատում է բարձրորակ մասնագետների, գրագետ, գործունյա կազմակերպիչների բազմահազարանոց մի բանակ: Արդյունաբերության ղեկավար աշխատողների 93,7 տոկոսը, օրինակ, և շինարարության ղեկավար աշխատողների 82,7 տոկոսն ունեն բարձրագույն կրթություն: Հանրապետության կոլտնտեսությունների նախագահների 60,2 և սովխոզների դիրեկտորների 80,7 տոկոսը հանդիսանում են բարձր որակավորման մասնագետներ:

Խնդիրն այն է, որպեսզի կուսակցական կազմակերպությունները խելացիորեն և ճիշտ տեղաբաշխեն կադրերը, մշտապես զբաղվեն նրանց տեսական և քաղաքական դաստիարակության, որակավորման հետագա բարձրացման հարցերով, վերջապես, կուսակցական հսկողություն սահմանեն նրանց գործունեության նկատմամբ: Անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել կադրերին ղեկավար աշխատանքի ընտրելու և առաջադրելու գործում եղած թերությունները վերացնելուն, հաշվի առնելով նրանց թե՛ քաղաքական և թե՛ գործնական հատկանիշները, նրանց թե՛ գործարարությունը և թե՛ որակավորումը:

Եթե մենք ցանկանում ենք կադրերի հետ տարվող աշխատանքում սխալներ թույլ չտալուց երաշխավորված լինել, ապա պետք է անշեղորեն առաջնորդվենք նրանց ընտրության ու տեղաբաշխման լենինյան սկզբունքներով՝ քաղաքական ու գործնական հատկանիշներով: Հենց այդ պատճառով էլ այս կամ այն աշխատողին առաջ քաշելու հարցը քննարկելիս կամ որոշելիս շատ կարևոր է իմանալ նրա մասին կուսակցական կազմակերպության կարծիքը, հաշվի առնել կազմակերպության տեսակետը: Դրանով իսկ մենք առավել մանրակրկիտ ու հավաստի տեղեկություններ կիմանանք կադրերի վերաբերյալ, մյուս կողմից էլ կբարձրացնենք ղեկավարների ընտրության գործում կուսակցական կազմակերպությունների հեղինակությունն ու պատասխանատվությունը:

Կադրերի հետ տարվող աշխատանքում մշտապես պետք է հիշել, որ այդ գործում չի կարող լինել որևէ մանրուք: Այստեղ ամեն ինչ կարևոր է: Եվ այն, թե ղեկավարը ինչպիսի կազմակերպական ու գործարար հատկանիշներ ունի, ինչպիսի սկզբունքային հարաբերություններ է ստեղծում ենթակաների հետ, և այն, թե նա որքանով է ցավում գործի համար, ինչպիսի հետևողականություն է հանդես բերում իր որոշումներում և հրամաններում:

Կադրերի հետ կատարվող դաստիարակչական աշխատանքում կուսակցական կազմակերպությունները պետք է մշտապես շեշտը դնեն այն բանի վրա, որ պետական կարգապահության պահպանումը բոլորի համար հանդիսանում է գործնական, պաշտոնական հարաբերությունների անխախտ օրենքը, պարտադիր պայմանը:

Կենտկոմի պլենումում ամենայն պատասխանատվությամբ պետք է հայտարարել, որ այսուհետև ևս կպատժվեն բոլոր նրանք, ովքեր պետական գործին նայում են իրենց անձնական շահերի տեսանկյունից: Այդ կապակցությամբ ասեմ, որ մեզանում կան անազնիվ մարդիկ, որոնց սրտովը չէ մեր իրականության մեջ դեռևս գոյություն ունեցող բացասական երևույթների դեմ մղվող պայքարի ուժեղացումը: Նրանք ամեն տեսակի անթույլատրելի մեթոդներով փորձում են խանգարել մեզ: Ոմանք զրպարտչական բնույթի անանուն նամակներ են հղում, մյուսները բռնում են շանտաժի և ահաբեկման ուղին, փորձում են լարված մթնոլորտ ստեղծել կուսակցական մեր այն աշխատողների և կոմունիստների շուրջը, ովքեր համարձակորեն, սկզբունքայնությամբ



պայքարում են սովետական օրենքները, կուսակցական կյանքի լենինյան նորմերը կոպիտ կերպով ոտնահարողների դեմ:

Սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաջող գործունեությունը, նրանց ակտիվության ու մարտունակության բարձրացումը զգալիորեն պայմանավորված են կուսակցության քաղկոմ-շրջկոմների կողմից նրանց աշխատանքի ղեկավարման մակարդակով:

ՍՄԿԿ XXIV համագումարից հետո Հայաստանի կոմկուսի շրջկոմներն ու քաղկոմները որոշակի կերպով ուժեղացրել են սկզբնական կազմակերպություններին ցույց տրվող օգնությունն ու ղեկավարումը, սկսել են ավելի լավ զբաղվել նրանց քարտուղարների ընտրության և դաստիարակության հարցերով: Ներկայումս սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարների 56 տոկոսն ունի բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն: Ժողովրդական տնտեսության ճյուղերում գործող սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարների մոտ 80 տոկոսը մասնագետ է:

Կուսակցության շատ կոմիտեներ առանձնապես պլանավորված աշխատանք են կատարում սկզբնական կազմակերպությունների քարտուղարների ուսուցումը արդյունավետ կազմակերպելու ուղղությամբ, ստեղծում են դպրոցներ, մշտական գործող սեմինարներ, լայնորեն օգտագործում աշխատանքի փորձի փոխանակում:

Այդ առումով աշխատանքի ուսանելի փորձ է կուտակվել կուսակցության Երևանի քաղկոմում: Քաղկոմը, կուսակցության շրջկոմների հետ մեկտեղ, պրակտիկայում կիրառում է քարտուղարների ուսուցման, նրանց ցույց տրվող օգնության մի շարք արդյունավետ ձևեր ու եղանակներ: Ամիսը մեկ անգամ, օրինակ, անց է կացվում «Կուսաշխատողի օր» միջոցառումը, որին մասնակցում են ապարատների աշխատողները, սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարները: Այնտեղ նրանք կատարում են փորձի փոխանակում, ծանոթանում են տվյալ շրջանի հիմնարկ-ձեռնարկությունների աշխատանքի ընթացքին, վերադաս կուսակցական օրգանների որոշումներին և կոնկրետ հանձնարարականներ ստանում իրենց հետագա անելիքների վերաբերյալ:

Քաղկոմը մշտապես գործող սեմինարների, դպրոցների միջոցով շերտավորված աշխատանք է կատարում սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների հետ, ձգտում է ամեն կերպ բարձրացնել նրանց ակտիվությունը, գործն այնպես կազմակերպել, որ նրանք սիստեմատիկ կերպով հարստացնեն իրենց տեսական գիտելիքներն ու պրակտիկ հմտությունները:

Սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների հետ կատարվող աշխատանքի ուսանելի փորձ են կուտակել նաև կուսակցության Լենինականի քաղկոմը, Շամշադինի, Թալինի և մի շարք այլ շրջկոմներ:

Պետք է միաժամանակ ասել, որ սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների աշխատանքի ղեկավարման, նրանց ուսուցման գործում գոյություն ունեն էական թերություններ: Կուսակցության որոշ շրջկոմներ պատշաճ ուշադրություն չեն նվիրում քարտուղարների կողմից կուսակցական շինարարության տեսական հիմունքների ուսումնասիրմանը, նրանց բավարար չափով չեն ուսուցանում մարդկանց հետ աշխատանքի մեթոդներին ու ձևերին: Անցկացվող սեմինարները հաճախ հանգում են միայն տնտեսություններում գործերի վիճակի ընթացիկ վերլուծությանը:

Հարկ կա նշելու, որ կուսակցության ոչ բոլոր քաղկոմներն ու շրջկոմներն են ամենայն պատասխանատվությամբ զբաղվում պատրաստված կոմունիստներին կուսակցական ղեկավար աշխատանքի առաջ քաշելու կարևորագույն գործով, իսկ երբեմն էլ թույլ են տալիս կոպիտ սխալներ:

Այդ տեսակետից բնորոշ է հետևյալ օրինակը: Կուսակցության Ղուկասյանի շրջկոմը շրջկենտրոնի սովխոզի կուսկազմակերպության ազատված քարտուղար էր հաստատել Վանոյանին: Հիմա դժվար է ասել, թե շրջկոմը նրա գործնական ու քաղաքական որ հատկանիշների համար էր այդ պատվավոր և պատասխանատու պարտականությունը վստահել նրան: Մի բան միայն

պարզ է, որ աշխատանքը ձախողելու համար շուտով նա ազատվեց քարտուղարի պարտականություններից: Բայց ահա վեց ամիս անց կուսակցության շրջկոմը նրան ուղարկեց մեկ ուրիշ պատասխանատու աշխատանքի՝ անասնամթերման շրջանային գրասենյակի կառավարչի պաշտոնին: Դեռ ավելին, շրջկոմը Վանոյանին միաժամանակ հաստատեց պանրի գործարանի սկզբնական կուսկազմակերպության քարտուղար, մի կազմակերպություն, որտեղ հաշվառման մեջ են նաև անասնամթերման գրասենյակի կոմունիստները: Ինչպես և պետք էր սպասել, կուսակցության շրջկոմի աշխատողների անպատասխանատվության հետևանքները շուտով իրենց զգալ տվեցին: Հանցագործ կապերի մեջ մտնելով գրասենյակի մի քանի աշխատողների հետ, Վանոյանը յուրացրեց 100 հազար ռուբլու պետական միջոց: Այստեղ, արդեն, ինչպես ասում են, մեկնաբանություններն ավելորդ են:

Կուսակցության քաղկոմ-շրջկոմների աշխատանքում կա նաև մի բաց, որի վրա ես ուզում էի ձեր ուշադրությունը հրավիրել: Բանն այն է, որ նրանք պատշաճ տեղ չեն տալիս կուսակցական կոմիտեների կազմում սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներին ընդգրկելու հարցերին: Շատ շրջկոմների և քաղկոմների կազմում սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարները աննշան թիվ են կազմում այն դեպքում, երբ տնտեսական ղեկավարները այնտեղ ներկայացված են բավականին լայնորեն: Ի դեպ, քիչ չեն փաստերը, երբ քաղկոմների ու շրջկոմների կազմում ընտրվում են նույնիսկ այն հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները, որտեղ տարեցտարի չեն կատարվում պլանները, թույլ են տրվում պետական միջոցների շռայլումներ ու հափշտակություններ:

Կուսակցական-կազմակերպական աշխատանքի ևս մի հարց: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ կուսակցության որոշ շրջկոմներ կուսակցական սկզբնական կազմակերպությունների քարտուղարների հետ կենդանի, կազմակերպական աշխատանքի փոխարեն, հրապուրվում են բազմաքանակ խորհրդակցություններով ու նիստերով, անթիվ որոշումներով, մի բան, որը դուրս է մղում գլխավորը՝ կոնկրետ, գործնական աշխատանքը:

Ընկերնե՛ր:

Մեր կուսակցության ուժն ու հեղինակությունը բնորոշող գործոններից մեկն այն է, որ մենք չենք թաքցնում մեր աշխատանքի թույլ տեղերը և թերությունները, դրանց մասին ասում ենք համարձակ և բացահայտ:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի այս տարվա ապրիլյան պլենումում քննադատաբար, մանրակրկիտ կերպով և բազմակողմանիորեն վերլուծվեց հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ, հասարակական կյանքի բոլոր ոլորտներում գործերի վիճակը, քննարկվեց ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների և հնգամյակի առաջադրանքների կատարման ուղղությամբ սկզբնական կուսակցական կազմակերպությունների, քաղկոմների և շրջկոմների աշխատանքը: Այնտեղ պարզորոշ կերպով նշվեցին առաջադրված խնդիրների կատարման կոնկրետ ուղիները:

Այսօր մենք կարող ենք ասել, որ կատարվում է մեծ ու կարևոր մի աշխատանք, որի արդյունքները կարող են երևալ միայն այն դեպքում, եթե հետևողականորեն իրականացվեն հավանության արժանացած միջոցառումները, եթե գործի մեջ ներգրավվեն բոլոր կուսակցական կազմակերպությունները, կոմունիստները, աշխատավորական լայն մասսաները:

Գործի շահերը պահանջում են, որպեսզի մենք խստագույն կերպով ուժեղացնենք վերահսկողությունը հենց մեր կողմից ընդունված որոշումների կենսագործման վրա, հասնենք դրանց անշեղ իրականացմանը՝ իրենց բոլոր հոդվածներով ու կետերով: Ինչի՞ նման է, օրինակ, որ հանրապետության հաստոցաշինական ձեռնարկությունների մի շարք սկզբնական կուսակցական կազմակերպություններ մինչև օրս դեռ չեն քննարկել Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ապրիլին տեղի ունեցած պլենումի որոշումը:

Կուսակցության շրջկոմները և քաղկոմները, Կենտկոմի բաժինները դեռևս հարկ եղածին պես սկզբնական կազմակերպություններին, յուրաքանչյուր



կոմունիստի չեն հասցնում նրանց առջև դրված այսօրվա խնդիրների նշանակությունը, չեն բացահայտում կատարվող աշխատանքի իմաստն ու բովանդակությունը:

«Եթե դու կոմունիստ ես,— ՍՄԿԿ XXIV համագումարում ասաց ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը,— ապա քո պարտքն է չընկրկել դժվարությունների առջև, հավանություն չտալ հետամնաց տրամադրություններին, այլ լինել կուսակցության գիտակից, ակտիվ մարտիկը»:

Մենք՝ կոմունիստներս, կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղարի այս խոսքերը ընկալում ենք որպես գործողությունների մարտական կոչ:

Հաշվետվությունների և ընտրությունների ընթացքում հարկավոր է է՛լ ավելի մեծ ուշադրություն և հարգանք ցուցաբերել կոմունիստների կարծիքի ու առաջարկությունների նկատմամբ, պայմաններ ստեղծել լայն քննադատության ու ինքնաքննադատության համար: Հաշվետու-ընտրական ժողովներում կոլեկտիվ փորձի ընդհանրացումը մեծապես կօգնի կուսակցական կոմիտեներին տեսնելու իրենց գործունեության մեջ, սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքում եղած լավն ու դրականը, ինչպես նաև թույլ կողմերը:

Սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները ամբողջովին և լիովին հավանություն են տալիս ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի քաղբյուրոյի վարած արտաքին-քաղաքական կուրսին, բարձր են գնահատում կուսակցության XXIV համագումարի ընդունած խաղաղության ծրագրի հաստատակամ կիրառման ուղղությամբ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի անձնական վիթխարի ջանքերը:

Կոմունիստները, հանրապետության բոլոր աշխատավորները մեծ բավականությամբ և ոգևորությամբ ընդունեցին խաղաղասեր ուժերի Մոսկվայի կոնգրեսում արտասանած ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառը: Այնտեղ ի մի են բերված կուսակցության XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագրի իրագործման ուղղությամբ ՍՄԿԿ-ի, սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների հետևողական գործունեության արդյունքները, տրված է արդի միջազգային դրության խոր ու բազմակողմանի վերլուծությունը:

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառի մեջ արտահայտված է արդի միջազգային զարգացման հիմնական պրոբլեմների նկատմամբ ՍՄԿԿ-ի և սովետական պետության սկզբունքային դիրքորոշումը, հավաստվում է միջազգային լարվածության հետագա թուլացման հասնելու վճռականությունը: Այնտեղ իր հետագա տեսական զարգացումն է գտել մեր կուսակցության կողմից կիրառվող քաղաքականության դասակարգային ինտերնացիոնալ բովանդակությունը:

Ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի ճառը քաղաքական, տեսական ու պրակտիկ մեծ նշանակություն ունի: Այնտեղ բոլոր կուսակցական կազմակերպությունների առջև նոր, պատասխանատու խնդիրներ են դրվում՝ կոմունիստական շինարարության ասպարեզում, աշխատավորներին քաղաքական բարձր գիտակցականության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության, հեղափոխական զգոնության ոգով դաստիարակելու գործում:

Կուսակցության քաղկոմների ու շրջկոմների, սկզբնական կուսակցական բոլոր կազմակերպությունների խնդիրն է ապահովել ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառի դրույթների լայն պրոպագանդան, հատուկ ուշադրություն նվիրել խաղաղության ամրապնդմանը և միջազգային լարվածության հետագա թուլացմանը, տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության զարգացմանն ուղղված կուսակցության պայքարի հետևողական բնույթի պարզաբանմանը:

Այդ աշխատանքում պետք է ակտիվորեն ներգրավվեն նաև կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական ղեկավար աշխատողները: Պետք է հասնել այն բանին, որպեսզի սովետական յու-

րաքանչյուր քաղաքացի պարզորոշ գիտակցի, որ իր աշխատանքը ռեալ ներդրում է սովետական պետության դիրքերի, խաղաղության ամրապնդման գործում:

Ընկերնե՛ր:

Կենտկոմի պլենումի քննարկմանը ներկայացված հարցը կարևոր նշանակություն ունի ներկուսակցական կյանքի ակտիվացման, սկզբնական կուսակցական կազմակերպությունների դերի և պատասխանատվության բարձրացման, ինչպես նաև կուսակցության քաղկոմ-շրջկոմների աշխատանքի բարելավման համար: Նրա ընդունած որոշումների իրականացումը կօգնի հաջողությամբ կատարելու մեր առջև դրված տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրները, կամրապնդի կուսակցական ու պետական կարգապահությունը հանրային արտադրության բոլոր տեղամասերում, մեր հասարակական-քաղաքական կյանքի բոլոր ոլորտներում:

Կուսակցական կազմակերպությունների կազմակերպական և քաղաքական աշխատանքի համընդհանուր բարձր մակարդակ. ահա, թե ինչը պետք է բնորոշի մեր առաջիկա պլանների ռեալությունը: Իսկ դրան հասնելու համար մենք ունենք բոլոր նախադրյալներն ու պայմանները:

Թույլ տվեք հաստատ համոզմունք հայտնել, որ Հայաստանի կոմունիստական կուսակցությունը՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցության մարտական և փորձված ջոկատներից մեկը, մշտապես կգտնվի իր կոչման բարձրության վրա, բոլոր միջոցները կձեռնարկի է՛լ ավելի բարձրացնելու կուսակցական կազմակերպությունների դերն ու մարտունակությունը աշխատավորական կոլեկտիվների ջանքերի մոբիլիզացման գործում, հնգամյակի համար, **ՍՄԿԿ XXIV** համագումարի պատմական որոշումների կենսագործման համար մղվող պայքարում: (Ծափահարություններ):

---


Պ. Պ. ԱՆԻՍԻՄՈՎ

*ՀԿԿ Կենտկոմի երկրորդ քարտուղար*


# ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՆԵՐԻ ՄԻՋԵՎ ԸՆԿԱԾ ԺԱՄԱՆԱԿԱՄԻՋՈՑՈՒՄ (1973 Թ. ԱՊՐԻԼ-ՆՈՅԵՄԲԵՐ) ԿԵՆՏԿՈՄԻ ԲՅՈՒՐՈՅԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ

## ԶԵԿՈՒՑՈՒՄ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ, 1973 Թ. ՆՈՅԵՄԲԵՐԻ 14-ԻՆ*

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1973 թվականի ապրիլյան պլենումից հետո Կենտկոմի բյուրոյի ամբողջ գործունեությունը, ասաց ընկ. Պ. Անիսիմովը, ենթարկված է եղել **ՍՄԿԿ XXIV** համագումարի պատմական որոշումների, **ՍՄԿԿ** Կենտկոմի 1972 թվականի դեկտեմբերյան և 1973 թվականի ապրիլյան պլենումների պատմական որոշումների իրականացմանը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ապրիլյան պլենումը հանրապետության կուսակցական կազմակերպությունների կարևորագույն խնդիրը համարեց արտադրության արդյունավետության բարձրացման կոնկրետ միջոցառումների իրականացումը **ՍՄԿԿ** Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում **ՍՄԿԿ** Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթի բովանդակած ցուցումների լույսի ներքո: Պլենումը պահանջեց ապահովել 1973 թվականի պետական պլանի և սոցիալիստական պարտավորությունների անվերապահ կատարումը, ամուր հիմք ստեղծել ամբողջությամբ վերցրած հնգամյակի առաջադրանքների հաջող կատարման համար:

Ելնելով պլենումի որոշումներից, Կենտրոնական կոմիտեն սկզբնական կուսակցական կազմակերպությունների, կուսակցության շրջկոմների և քաղկոմների, մինիստրությունների և գերատեսչությունների ջանքերն ուղղել է արտադրության արդյունավետության և աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման, գիտատեխնիկական առաջադիմության տեմպերի արագացման նպատակին:

Կենտկոմի բյուրոյի նիստերում սիստեմատիկաբար լսվել են հաշվետվություններ կուսակցության շրջկոմների և քաղկոմների, մինիստրությունների և գերատեսչությունների, ձեռնարկությունների և կազմակերպությունների գործունեության մասին, քննարկվել են հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման կարևոր հարցեր:

Մի շարք կոնկրետ հարցերի վերաբերյալ ընդունվել են Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և հանրապետության Մինիստրների սովետի համատեղ որոշումներ:

Կենտկոմի բյուրոն սիստեմատիկաբար զբաղվել է սոցիալիստական մրր-

---

* *Տպագրվում է կրճատումներով:*

ցության կազմակերպման հարցերով, վերահսկել ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը: Քննարկվել են «Սոցիալիստական մրցության ղեկավարման ուղղությամբ Շահումյանի շրջանի կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մասին», «Կիրովականի արդյունաբերական ձեռնարկությունների կողմից սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքի մասին» հարցերը: Կենտկոմի բյուրոն քաղկոմներից և շրջկոմներից պահանջել է միջոցառումներ մշակել՝ բարելավելու սոցիալիստական մրցության ղեկավարումը, ապահովելու ՍՄԿԿ Կենտկոմի կոչի կատարումը՝ տալ ավելի շատ, ավելի լավորակ արտադրանք, ավելի պակաս ծախսումներով:

Օգոստոսին կայացած հանրապետական կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովում քննարկվեցին հանրապետության աշխատավորների սոցիալիստական պարտավորությունների կատարման առաջին կիսամյակի արդյունքները և 1973 թվականի ժողովրդատնտեսական պլանի կատարումը ժամկետից շուտ ապահովելու խնդիրները:

Կուսակցական կազմակերպությունների նպատակալաց աշխատանքը, հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա խնդիրների կատարման համար աշխատավորների մոբիլիզացումը ապահովեցին արտադրական պլանների կատարումը:

Հանրապետության արդյունաբերությունը համախառն արտադրանքի տասը ամիսների պլանը կատարեց 101,7 տոկոսով, արտադրանքի իրացման պլանը՝ 102 տոկոսով: Սակայն Կենտկոմի բյուրոն, ասում է զեկուցողը, մտահոգված է նրանով, որ հանրապետության արդյունաբերությունը ետ է մնում հնգամյակի առաջադրանքներից, որ ցածր են արտադրության և աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը: Կենտկոմի բյուրոն կարևոր նշանակություն է տալիս լարված հանդիպական պլաններ մշակելու և կատարելու՝ առաջավոր կոլեկտիվների փորձի տարածմանը: Բյուրոն հավանություն է տվել Երևանի մետաքսակոմբինատի, Կիրովականի քիմիական կոմբինատի, «Ավտոմատիկա», գերճշգրիտ հաստոցների գործարանների և կահույքի ֆաբրիկայի, «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման կոլեկտիվների աշխատանքի փորձին, որոնք ստանձնել և հաջողությամբ կատարում են լարված հանդիպական պլանները՝ նպատակ ունենալով հասնել հնգամյակի առաջադրանքով նախատեսված բնագծերին:

Կենտկոմի բյուրոն արդյունաբերական ձեռնարկությունների կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին ու տնտեսական ղեկավարներին հանձնարարել է, գնահատելով եղած հնարավորությունները, մշակել և ստանձնել այդպիսի պլաններ երկրորդ կիսամյակի համար: Ներկայումս հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում մշակվում են հանդիպական պլաններ 1974 թվականի համար:

Հանդիպական լարված պլանների ընդունման ու կատարման շարժումը արտադրության հետագա աճի կարևորագույն լծակներից մեկն է: Կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեների, պետպլանի, մինիստրությունների և գերատեսչությունների խնդիրն է՝ ըստ ամենայնի պաշտպանել ու խրախուսել այդպիսի պլաններ ընդունած աշխատանքային կոլեկտիվներին:

Կենտկոմի բյուրոն սևեռուն ուշադրություն է նվիրել հանրապետության էկոնոմիկայի զարգացման հեռանկարային հարցերին: Քննարկվել են 1974 թվականի պետական պլանի նախագիծը և հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1990 թվականների հիմնական ուղղությունները:

Չնայած 1974 թվականի պլանի նախագծում նախատեսված համեմատաբար բարձր ցուցանիշներին, արտադրության աճի տեմպերը դեռևս չեն ապահովում հնգամյակի առաջադրանքների կատարումը: Ուստի, անհրաժեշտ է, որ այն ճյուղերը, արդյունաբերական այն ձեռնարկությունները, որոնք հումքային ռեսուրսներ ունեն, որոնց արտադրանքը պահանջարկ է վայելում, ավելացնեն թողարկվող արտադրանքի ծավալները՝ ներքին ռեզերվների



ավելի լավ օգտագործման հաշվին և օգնեն հանրապետության արդյունաբերությանը՝ ապահովելու ամբողջությամբ վերցրած հնգամյակի առաջադրանքի կատարումը: Անհրաժեշտ է առավելագույն չափով արագացնել նոր արտադրական կարողությունների գործարկումը և կրճատել դրանց յուրացման նորմատիվ ժամկետները: Եվ այս ամբողջ գործում հանդիպական պլանների մշակումն ու կատարումը առավել արդյունավետ մեթոդ են:

Կենտկոմի բյուրոն, իրագործելով ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշումը, աշխատանք է կատարում հանրապետության արդյունաբերության կառուցվածքը կատարելագործելու ուղղությամբ: Հավանություն է տրված մի շարք միավորումներ ստեղծելու վերաբերյալ հանձնաժողովի առաջարկությանը: Միավորումների ստեղծումը և ձեռնարկությունների խոշորացումը կնպաստեն միավորվող ձեռնարկությունների գիտատեխնիկական բազայի ամրապնդմանը, դրանց մասնագիտացմանն ու կոոպերացմանը:

Սիստեմատիկաբար վերլուծելով և գնահատելով հանրապետության արդյունաբերության գործերի վիճակը, Կենտկոմի բյուրոն իրեն հաշիվ է տալիս, որ մենք դեռևս դանդաղ ենք լուծում արտադրության արդյունավետության բարձրացման, աշխատանքի արտադրողականության աճի հարցերը, թույլ ենք զբաղվում գիտատեխնիկական առաջադիմության հրատապ պրոբլեմներով, պատշաճ հաստատակամություն չենք ցուցաբերում թողարկվող արտադրանքի որակի բարձրացման, նյութական և ֆինանսական ռեսուրսների խնայողական ծախսման պայքարում: Կենտկոմի բյուրոն տեսնում է այս թերությունները և իր պարտքն է համարում բարելավել ղեկավարումը, բարձրացնել պահանջկոտությունը տնտեսական մարմինների ղեկավարների և կուսակցական կոմիտեների նկատմամբ:

Կենտկոմի բյուրոն սիստեմատիկաբար զբաղվել է կապիտալ շինարարության հարցերով: Քննարկվեց «Այն արտադրական օբյեկտների շինարարության վիճակի մասին, որոնց գործարկումը նախատեսված է եղել 1972 թվականի պլանով» հարցը և ընդունվեցին կոնկրետ միջոցառումներ: Գործարկվեցին Չարենցավանի «Լիզին» գործարանը, Իջևանի «Բենտոնիտ» կոմբինատի առաջին հերթը, Նուռնուսի քարամշակման գործարանը և այլն:

Կենտկոմի բյուրոն քննարկել է ժողովրդական սպառման ապրանքների արտադրության օբյեկտների շինարարության վիճակը և ընդունել միջոցառումներ, որոնք ապահովում են թեթև, սննդի, մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության և այլ ճյուղերի կառույցների պլանների կատարման մակարդակի բարձրացումը:

Կատարված աշխատանքի շնորհիվ որոշ չափով բարելավվել է շինարարության գործերի վիճակը:

Սակայն կապիտալ շինարարության ասպարեզում էական թերություններ կան, շարունակում է զեկուցողը: Վիժեցվում են արտադրական շատ օբյեկտների գործարկման ժամկետները, աճել է անավարտ շինարարության ծավալը:

Կապիտալ շինարարության թերությունները վերացնելու նպատակին ուղղված միջոցառումների թվում Կենտկոմի բյուրոն անհրաժեշտ է համարում հանրապետության կառույցներում լայնորեն արմատավորել բրիգադային տնտհաշվարկի մեթոդը և շինարարության կազմակերպման ու աշխատանքի վարձատրության այլ առաջավոր ձևեր ու մեթոդներ:

Կենտկոմի բյուրոն հոկտեմբերին հատկապես քննարկեց շինարարության մեջ սոցիալիստական աշխատանքի հերոս Ն. Զլոբինի մեթոդի արմատավորման վիճակը: Տնտհաշվարկային բրիգադների աշխատանքի արդյունքները իրականում ապացուցում են այդ մեթոդի բարձր արդյունավետությունը: Կենտկոմի բյուրոն շինարարական մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարներին, կուսակցության շրջկոմներին ու քաղկոմներին պարտավորեցրեց ապահովել շինարարության կազմակերպման այդ նոր, առաջադիմական ձևի հետագա լայն արմատավորումը:

Մեր խնդիրն է շինարարական և մոնտաժային կազմակերպությունների

կոլեկտիվներին մոբիլիզացնել վերացնելու շինարարական արտադրության կազմակերպման շատ թերություններ, ապահովելու շինարարական մեխանիզմների, տրանսպորտի, նյութական ռեսուրսների և աշխատուժի ռացիոնալ օգտագործումը: Մոտ ժամանակներս Կենտկոմի բյուրոն կլսի և կքննարկի մինիստրությունների հաշվետվությունները արդյունաբերության և գյուղատնտեսության գործարկվելիք օբյեկտներում ստեղծված վիճակի մասին:

Կապիտալ շինարարության պետական պլանի կատարման ապահովումը հանրապետության կուսակցական կազմակերպության պատվի գործն է, ամբողջությամբ վերցրած հնգամյակի առաջադրանքների կատարման կարևորագույն պայմանը:

Կատարելով Կենտկոմի ապրիլյան պլենումի որոշումները, բյուրոն մեծ ուշադրություն է նվիրել գյուղատնտեսության զարգացման գործնական հարցերին: Կենտկոմի բյուրոյում քննարկվել են գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա ավելացման մի շարք հիմնական հարցեր: Քննարկվել են գյուղատնտեսական օբյեկտների շինարարության պլանների կատարումն ապահովելու, գյուղատնտեսական արտադրության մեջ մեքենայացումն արմատավորելու, հողերի մելիորացման, ջրամբարների և ոռոգման սիստեմների կառուցման հարցերը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը մայիսին անցկացրեց սովխոզների դիրեկտորների հանրապետական խորհրդակցություն, որտեղ քննարկվեց սովխոզային արտադրության արդյունավետության բարձրացման միջոցառումների կոմպլեքսը:

Գյուղատնտեսական արտադրության մեջ գիտության, տեխնիկայի և առաջավոր փորձի նվաճումների հետագա արմատավորման նպատակով, անցկացվեց գիտական հիմնարկների, կազմակերպությունների, կոլտնտեսությունների և սովխոզների աշխատողների հանրապետական խորհրդակցություն:

Կենտկոմի բյուրոյում «1973 թվականի բերքահավաքը և գյուղատնտեսական մթերքների մթերումներն ապահովելու միջոցառումների մասին», «Կերի կուտակումը ժամանակին անցկացնելու և կոլտնտեսություններն ու սովխոզները անասունների ձմեռմանը նախապատրաստելու միջոցառումների մասին» և մի շարք այլ հարցերի քննարկումը, այդ որոշումների իրականացման ուղղությամբ ձեռնարկված պրակտիկ միջոցառումները նպաստեցին բերքահավաքի և կերի կուտակման հաջող անցկացմանը: Հանրապետությունը ժամկետից շուտ կատարեց պետությանը հացահատիկ, բանջարեղեն, պտուղ, բոստանային կուլտուրաներ, կարտոֆիլ, խորդենի, միս, կաթ, բուրդ և ձու վաճառելու պլաններն ու գերպլանային առաջադրանքները:

Սակայն խորապես սխալ կլիներ, ընդգծում է զեկուցողը, հանգստանալ ձեռք բերած հաջողություններով և չտեսնել գյուղատնտեսության զարգացման լուրջ պրոբլեմները: Ցածր է գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության մակարդակը, դանդաղ են աշխատատար պրոցեսների մեքենայացման տեմպերը:

Գյուղատնտեսության բնագավառի լուրջ խնդիրները հաջողությամբ կատարել մենք կարող ենք, եթե այդ գործի մեջ, գյուղի աշխատավորների հետ մեկտեղ, ակտիվորեն ներգրավվեն նաև արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական և տրանսպորտային կազմակերպությունների աշխատողները: Այդ նպատակով Կենտկոմի բյուրոն որոշում է ընդունել «Հանրապետության քաղաքային ձեռնարկությունների, կազմակերպությունների և կոլտնտեսությունների, սովխոզների միջև շեֆական կապեր կազմակերպելու մասին»:

Սակայն կուսակցության շատ քաղկոմներ ու շրջկոմներ, սկզբնական կուսակցական կազմակերպություններ դանդաղկոտություն են ցուցաբերում այդ որոշման կատարման գործում:

Աշխատավորների կոմունիստական դաստիարակության հարցերը, ասում է ընկ. Կ. Սնիսիմովը, միշտ գտնվել են Կենտկոմի բյուրոյի ուշադրության կենտրոնում:



Կուսակցական կազմակերպությունների գաղափարա-քաղաքական կյանքի վրա մեծ ազդեցություն թողեցին հանրապետության, քաղաքների և շրջանների կուսակցական ակտիվների ժողովները, որոնք քննարկեցին գաղափարա-քաղաքական աշխատանքի հետագա ուժեղացման, աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության խնդիրները ընկեր Լ. Ի. Բրեժնևի՝ «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հիսնամյակի մասին» զեկուցման լույսի տակ: Կուսակցական կազմակերպությունները մշակել և իրագործում են միջոցառումներ գաղափարական աշխատանքի հետագա բարելավման, աշխատավորներին կոմունիստական բարձր համոզվածության, սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու ուղղությամբ:

Կուսակցական կազմակերպությունները որոշակի հաջողությունների են հասել կադրերի մարքս-լենինյան ուսուցման և նրանց տնտեսագիտական կրթության գործում: Սակայն կուսակցական լուսավորության ցանցի աշխատանքի ընդհանրացումն ու վերլուծությունը ցույց են տվել, որ այդ կարևոր գործում դեռևս լուրջ թերություններ կան:

Քաղաքային և շրջանային որոշ կուսակցական կոմիտեներ գործուն միջոցներ չեն ձեռնարկում, որպեսզի ղեկավար կադրերի գաղափարական և տնտեսագիտական կրթության աշխատանքը լիովին համապատասխանի ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջներին: Այդ հարցերը, ինչպես նաև կուսակցական լուսավորության ցանցի նոր ուսումնական տարվա նախապատրաստության հարցերը, քննարկվեցին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հրավիրած հանրապետական խորհրդակցությունում:

Գաղափարա-քաղաքական աշխատանքի կարևորագույն բաղկացուցիչ մասը աշխատանքի և հանրային սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակումն է, ստեղծագործական ակտիվության զարգացումը, գիտակցական կարգապահության ու կազմակերպվածության ամրապնդումը: Արդյունաբերական շատ ձեռնարկություններում, շինարարական և տրանսպորտային կազմակերպություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում, առևտրի և սպասարկման ոլորտի հիմնարկներում դեռևս չեն վերացվել աշխատանքի և արտադրական կարգապահության խախտումների փաստերը, գործալքությունները և ուշացումները:

Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները պետք է ըստ ամենայնի բարձրացնեն աշխատանքային կոլեկտիվների դերը աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում: Կոլեկտիվի հասարակական կարծիքի ամբողջ ուժը պետք է ավելի վճռականորեն նպատակամղել պայքարելու դեռևս գոյություն ունեցող՝ անցյալի մնացուկների դեմ, կոմունիստական բարոյականության հակոտնյաների դեմ:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն ուշադրություն է նվիրել դաստիարակության այնպիսի կարևոր միջոցին, ինչպիսին է մամուլը: Ապրիլին քննարկվեց «Պրավդա» թերթում հրապարակված «Հաշվետվությունների շղարշի հետևում» հոդվածը: Բյուրոն նշեց, որ «Սովետական Հայաստան», «Կոմունիստ» թերթերում հրապարակվող շատ նյութեր իրենց բովանդակությամբ ու մակարդակով չեն համապատասխանում արդի պահանջներին, չեն ընդգրկում գործերի վիճակի խոր վերլուծություն, չեն արտացոլում էկոնոմիկայի զարգացման հրատապ պրոբլեմները:

Կենտկոմի բյուրոն անբավարար գտավ այդ թերթերի աշխատանքը ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների և իններորդ հնգամյակի առաջադրանքների կատարման համար աշխատավորներին մոբիլիզացնելու ուղղությամբ հանրապետության աշխատանքային կոլեկտիվների և կուսակցական կազմակերպությունների գործունեության լուսաբանման ասպարեզում:

Պետք է նշել, որ, չնայած հրապարակվող նյութերի որակի որոշ բարելավմանը, հարցադրումների առավել կոնկրետությանը, սրությանն ու քննադատականությանը, թերթերը դեռևս անբավարար են կատարում իրենց կազ-

մակերպող, դաստիարակչական և մոբիլիզացնող դերը։ «Սովետական Հայաստան» և «Կոմունիստ» թերթերը դեռևս բավարար խորությամբ չեն վերլուծում երևույթներն ու փաստերը, անհետևողականություն են ցուցաբերում կուսակցական, սովետական, արհմիութենական, տնտեսական կազմակերպությունների գործունեությունը լուսաբանելիս, չեն հասել իրենց ելույթների ներգործունության։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն իր ուշադրությունն է կենտրոնացրել բուրժուական գաղափարախոսության ներթափանցման դեմ ակտիվ, հարձակողական պայքար կազմակերպելու, ինտերնացիոնալ դաստիարակությունն ուժեղացնելու վրա։ Շեշտը դրվել է հասարակական երևույթների գնահատման հարցում դասակարգայնության և կուսակցականության հարցերի վրա։ Այդ պրոբլեմները քննարկվեցին ընթացիկ տարվա գարնանը տեղի ունեցած գաղափարական աշխատողների ակտիվի ժողովում։

· Ապրիլյան պլենումից հետո Կենտրոնական կոմիտեի բյուրոն քննարկել և լուծել է կուլտուրական շինարարության մի շարք գործնական հարցեր, կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը կենտրոնացրել է առողջապահության, լուսավորության, բարձրագույն կրթության կազմակերպման աշխատանքի բարելավմանը։

Կենտկոմի ապրիլյան պլենումում, ասաց ընկ. Պ. Անիսիմովը, ամբողջ սրությամբ դրվեց մեր հասարակությանը խորթ երևույթների՝ սոցիալիստական սեփականության հափշտակման, սպեկուլյացիայի, կաշառակերության և այլ բացասական երևույթների դեմ պայքարն ուժեղացնելու հարցը։

Կենտկոմի բյուրոյի որոշմամբ հրավիրվեցին առևտրի և կենցաղային սպասարկման, առողջապահության և քաղաքային մարդատար տրանսպորտի, տեղական արդյունաբերության և այլ ճյուղերի կուսակցական-տնտեսական ակտիվի հանրապետական ժողովներ։

Ակտիվների մասնակիցները համարձակորեն բացահայտեցին ստվերոտ կողմերը, վրիպումներն ու սխալները, արժեքավոր առաջարկություններ ու դիտողություններ արեցին առևտրի ու կենցաղային սպասարկման կազմակերպումը է՛լ ավելի բարելավելու և կուլտուրան բարձրացնելու, հնգամյակի վճռական տարվա պլանային առաջադրանքների անվերապահ կատարումն ապահովելու, ինչպես նաև մեր հասարակությանը խորթ երևույթները արմատախիլ անելու վերաբերյալ։

Ակտիվի ժողովներում ընդունված դիմումները լայնորեն քննարկվեցին շրջանային, քաղաքային կուսակցական-տնտեսական ակտիվներում, այդ ճյուղերի բոլոր կազմակերպություններում ու ձեռնարկություններում։

Գոհունակությամբ պետք է նշել, որ կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները և հանրապետության բոլոր աշխատավորները մեծ հավանությամբ վերաբերվեցին ամեն տեսակ խախտումների և չարաշահումների դեմ մղվող պայքարում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի միջոցառումներին։

Ձեռնարկած միջոցառումների շնորհիվ վերջին ժամանակներս որոշ չափով բարելավվել է առևտրի կազմակերպումը, ուժեղացել է կուսակցական, սովետական և մյուս կազմակերպությունների վերահսկողությունը առևտրի ու կենցաղային սպասարկման ձեռնարկությունների գործունեության նկատմամբ։ Սակայն սպասարկման ոլորտում ամեն տեսակ խախտումների ու չարաշահումների դեմ պայքարն ուժեղացնելու ուղղությամբ մինիստրությունների ու գերատեսչությունների մշակած միջոցառումները չափազանց դանդաղ են իրագործվում։ Դեռևս շարունակվում են սովետական առևտրի կանոնների մասսայական խախտումները։ Վճռական միջոցներ չեն ձեռնարկվում սոցիալիստական սեփականության պահպանումն ապահովելու և ժողովրդական բարիքի վատնումները, հափշտակումներն ու շռայլումները խափանելու ուղղությամբ։

Սպասարկման ոլորտում նշված թերությունները առևտրի և կենցաղային



սպասարկման կոլեկտիվներում դաստիարակչական թույլ աշխատանքի հետևանքն են։

Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեները դեռևս բավարար պահանջկոտություն չեն ցուցաբերում առևտրական և կենցաղային կազմակերպությունների ու ձեռնարկությունների կուսակցական և տնտեսական ղեկավարների նկատմամբ՝ բոլոր օղակներում կուսակցական և պետական կարգապահությունը ամրապնդելու ուղղությամբ։

Այսօր էական թերություններից մեկն այն է, որ սպասարկման ոլորտում պատշաճ կարգուկանոն հաստատելու պայքարի մեջ դեռևս չեն ներգրավվել աշխատավորական մասսաները։ Առևտրի և կենցաղային սպասարկման օբյեկտների նկատմամբ պետք է հաստատվի հասարակական խիստ վերահսկողություն։ Որպես հասարակական վերահսկիչներ անհրաժեշտ է ներգրավել բարեխիղճ, սկզբունքային մարդկանց, որոնք վայելում են իրենց աշխատանքային կոլեկտիվների վստահությունը։

Այնուհետև զեկուցողը խոսում է վարչական մարմինների աշխատանքը վճռականորեն բարելավելու, հանցագործությունների և իրավախախտումների դեմ պայքարն ուժեղացնելու ուղղությամբ Կենտրոնական կոմիտեի ձեռնարկած միջոցառումների մասին։

Ներքին գործերի և դատախազության մարմինները անցկացրել են առևտրի, կենցաղային սպասարկման, հասարակական սննդի, տրանսպորտի և այլ բնագավառների օբյեկտների մասսայական ստուգայցեր։ Ստուգայցերի արդյունքները լայնորեն լուսաբանվել են մամուլում, հեռուստատեսային և ռադիոհաղորդումներում։

Ուժեղացել է պայքարը հանրապետությունում տարածված այնպիսի վտանգավոր հանցագործությունների դեմ, ինչպիսիք են սպեկուլյացիան, դրամաշորթությունը և կաշառակերությունը, պետական ու հասարակական ունեցվածքի հափշտակումները։

Վարչական մարմինները ժողովրդական վերահսկողության մարմինների հետ համատեղ անցկացրել են հողօգտագործման օրենքների կատարման ստուգում և բացահայտել հողամասերի շռայլման բազմաթիվ փաստեր, անհատական ամառանոցային շինարարության նպատակով հողամասերի ապօրինի հատկացում, պաշտոնատար անձանց կողմից իրենց պաշտոնական դիրքի չարաշահումներ։ Ստուգման նյութերը քննարկվել են Կենտկոմի բյուրոյում, այդ փաստերին տրվել է սկզբունքային կուսակցական գնահատական։ Օրինականության խախտման մեջ մեղավոր մի շարք ղեկավար աշխատողներ ազատվել են գրաված պաշտոններից և խիստ պատժվել։

Կենտրոնական կոմիտեն սեպտեմբերին հրավիրեց վարչական մարմինների աշխատողների կուսակցական ակտիվի ժողով կուսակցության շրջկոմների և քաղկոմների քարտուղարների, կոմերիտական և արհմիութենական ղեկավար աշխատողների մասնակցությամբ՝ նվիրված հանրապետությունում սոցիալիստական օրինականության և իրավակարգի ամրապնդման հարցերին։

Զեկուցումներում ու ելույթներում, ժողովի ընդունած բանաձևում ընդգծվում էր, որ օրինականության և իրավակարգի ամրապնդումը, հափշտակությունների, կաշառակերության, սպեկուլյացիայի, խուլիգանության, մասնավոր ձեռնարկատիրական գործունեության, այլ կարգի հանցագործությունների դեմ անխնա, անզիջում պայքար ծավալելը չի կարող սահմանափակվել սոսկ վարչական մարմինների գործունեության ոլորտով, որ պետք է լինի առանց բացառության բոլոր կուսակցական, կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունների, բոլոր աշխատավորների մշտական ուշադրության առարկան։

Վերջերս Կենտկոմի բյուրոն, հաշվի առնելով կուսակցական ակտիվի ժողովում արված քննադատական դիտողություններն ու առաջարկությունները, քննարկեց և հաստատեց հանցագործությունների դեմ պայքարի հետագա ուժեղացման, հանրապետությունում սոցիալիստական օրինականության ամրապնդման միջոցառումների պլանը և կուսակցության քաղաքային ու շրջա-

նային կոմիտեներին, տեղական սովետների գործկոմներին, ՀԱՄԽ-ին, Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմին, համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարներին առաջարկեց ապահովել դրանց լրիվ և անշեղ կատարումը:

Հանրապետությունում օրինականության և իրավակարգի ամրապնդման համար, ասաց ընկ. Պ. Անիսիմովը, վերջին ժամանակներս քիչ բան չի արված, բայց աններելի սխալ կլիներ կանգ առնել ձեռք բերածի վրա: Իրավախախտումների դեմ պայքարը չի կարող կարճատև կամպանիա լինել, այլ պետք է մղվի մշտապես, անզիջում և անխնա:

Զեկուցողը կանգ է առնում կուսակցական և պետական կարգապահության ամրապնդման, կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության գործի բարելավման հարցերի վրա: Կարգապահության ամրապնդման համար մղվող մշտական պայքարը, կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության լենինյան սկզբունքների խստիվ կիրառումը միայն կարող են ապահովել յուրաքանչյուր ձեռնարկության կամ կազմակերպության, կուսակցական կամ պետական մարմնի հաջող գործունեությունը, ասում է նա:

Ապրիլ-նոյեմբեր ամիսներին Կենտկոմի բյուրոյի և քարտուղարության որոշումներով պաշտոններից ազատվել են մի շարք ղեկավար աշխատողներ: Դրանց մեջ զգալի թիվ են կազմում այն անձինք, որոնք աշխատանքից հանվել են կուսակցական, պետական և ֆինանսական կարգապահության զանազան խախտումների, սոցիալիստական սեփականության պահպանումը չապահովելու, անվայել վարքագծի համար և կոմունիստ ղեկավարի կոչման հետ անհամատեղելի այլ զանցանքների համար: Անձնական նպատակներով իրենց պաշտոնական դիրքը չարաշահած, կուսակցական ու պետական կարգապահությունը կոպտորեն խախտած անձանց մեջ եղել են բարձր պաշտոններ գրավող մարդիկ:

Ընկ. Պ. Անիսիմովը բերում է առանձին ղեկավարների կողմից կուսակցական և պետական կարգապահության կոպիտ խախտման, նրանց թույլ տված սխալների և զանցանքների կոնկրետ փաստեր: Նա ընդգծում է, որ դրանք ղեկավար կադրերին կուսակցական սկզբունքայնության, հանձնարարված գործի համար բարձր պատասխանատվության ոգով, սեփականատիրական միտումների նկատմամբ անհաշտության ոգով դաստիարակելու գործում թերությունների հետևանքն են: Մենք պետք է խիստ ուշադրություն ունեցող ... հանձնարարված բնագավառի համար, արտադրությունում և կենցաղում ունեցած վարքագծի համար պատասխանատվությունը բարձրացնելու ուղղությամբ:

Կենտրոնական կոմիտեի բյուրոն անհրաժեշտ է համարում մեկ անգամ ևս ընդգծել, որ կադրային քաղաքականության մեջ կուսակցական սկզբունքայնությունը, անձնական պատասխանատվության հետ վստահության ու պահանջկոտության զուգորդումը, ղեկավարման կոլեգիալության զուգորդումը կադրերի աճի ու դաստիարակության, մեր ամբողջ աշխատանքի ճիշտ կազմակերպման անհրաժեշտ պայմանն են:

Մենք միշտ կպաշտպանենք ղեկավար աշխատողների ստեղծագործական որոնումն ու նախաձեռնությունը, այն մարդկանց, որոնք արդարացված փորձի են դիմում հանուն արտադրության արդյունավետության բարձրացման, կպաշտպանենք որոնող, պրպտուն մտքի տեր մարդկանց, ովքեր որոշակի ռիսկի են դիմել ի շահ ընդհանուր գործի, այլ ոչ թե անձնական օգուտի: Իսկ նրանց նկատմամբ, ովքեր չեն կատարում իրենց պարտականությունները, հետևություններ չեն անում քննադատությունից, խախտում են կուսակցական ու պետական կարգապահությունը, այսուհետև ևս կկիրառվեն ամենախիստ միջոցները:

Կադրերը կուսակցական և պետական ղեկավարման վճռական ուժն են: Վերջին ժամանակներս Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն սկսել է ավելի շատ ուշադրություն նվիրել կադրերի հետ տարվող աշխատանքի



հեռանկարային պլանավորման, որակյալ աշխատողների անհրաժեշտ ռեզերվի ստեղծման հարցերին:

Կադրերի ռեզերվի հետ տարվող աշխատանքը, նրանց կոմունիստական գաղափարայնության, ազնվության ու ճշտախոսության ոգով, հանձնարարված գործի համար բարձր պատասխանատվության ոգով դաստիարակելը պետք է դառնան կուսակցության շրջկոմների, քաղկոմների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքի կարևոր տեղամասերից մեկը:

Վերլուծելով կադրերի ընտրության ու տեղաբաշխման ուղղությամբ կատարված աշխատանքը, անհրաժեշտ է նշել, որ ձեռնարկված միջոցառումները սոսկ առաջին քայլերն են այն մեծ ու տևական աշխատանքի, որ պետք է հետևողականորեն շարունակել, կատարել սիստեմատիկորեն, դրա նկատմամբ ցուցաբերելով ստեղծագործական մոտեցում:

Խոսելով կուսակցական փաստաթղթերի փոխանակման մասին, ընկ. Պ. Անիսիմովը նշում է, որ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն մշտապես ուշադրության կենտրոնում է պահում այդ կարևոր կազմակերպական-քաղաքական միջոցառման անցկացումը: Հանրապետության կուսակցական կազմակերպություններում փաստաթղթերի փոխանակումը հիմնականում կազմակերպված է անցնում:

Կուսակցական փաստաթղթերի փոխանակումը նպաստեց ներկուսակցական կյանքի մակարդակի հետագա բարձրացմանը, կոմունիստների ակտիվության և նախաձեռնության զարգացմանը:

Դրա հետ մեկտեղ կուսակցական փաստաթղթերի փոխանակման աշխատանքում էական թերություններ կան: Վերջերս Կենտկոմի բյուրոն քննարկեց փոխանակման ընթացքը և նշեց, որ կուսակցության առանձին շրջկոմներ և քաղկոմներ պատշաճ չափով չեն ապահովում ՍՄԿԿ Կենտկոմի այն պահանջների կատարումը, որ կուսակցական փաստաթղթերի փոխանակումը ծառայեցվի կուսակցության հետագա ամրապնդման, սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման և հանձնարարված գործի համար կոմունիստների պատասխանատվության բարձրացման խնդիրներին: Նաև նշվեց կուսակցության քաղկոմների և շրջկոմների կողմից ուշադրության թուլացումը այնպիսի հարցերի նկատմամբ, ինչպիսին է անհատական զրույցների անցկացումը կոմունիստների հետ:

Շրջկոմների, քաղկոմների, Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի խնդիրն է կոնկրետ միջոցառումներ ձեռնարկել վերացնելու կուսփաստաթղթերի փոխանակման գործում տեղ գտած թերությունները, ապահովելու ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի պահանջների անշեղ կատարումը:

Հանրապետության կուսակցական կազմակերպություններում, շարունակում է զեկուցողը, հաշվետու-ընտրական կամպանիայի թունդ շրջանն է: Այդ կամպանիան միշտ էլ կարևոր իրադարձություն է կուսակցական կոլեկտիվների, յուրաքանչյուր կոմունիստի կյանքում:

Ներկայիս հաշվետու-ընտրական ժողովների բնորոշ գիծն այն է, որ դրանք հիմնականում անցնում են գործարար մթնոլորտում, կոմունիստների մեծ ակտիվության պայմաններում: Հաշվետու զեկուցումների առթիվ մտքերի փոխանակության ժամանակ ելույթ է ունեցել ժողովների յուրաքանչյուր երրորդ մասնակիցը: Կոմունիստները սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտում քննարկում են կատարված աշխատանքի արդյունքները, հանգամանորեն վերլուծում տեղ գտած թերությունները, գործնական առաջարկություններ անում դրանց վերացման համար:

Ժողովները ակտիվորեն են անցնում Երևանի, Լենինականի, Կիրովականի, Ղափանի, Հրազդանի, Աբովյանի, Վարդենիսի, Թալինի և այլ շրջանների սկզբնական կուսակցական շատ կազմակերպություններում:

Փոխադարձ բարձր պահանջկոտության մթնոլորտում անցան Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի կուսակցական

կազմակերպության կոնֆերանսը, Երևանի «Էլեկտրոն» գործարանի, Ծաղումյանի անվան կաշվեղենի միավորման, Կիրովականի քիմիական մանրաթելի և գերճշգրիտ հաստոցների գործարանների, Հրազդանի հանքաքիմիական կոմբինատի կուսակցական ժողովները:

Հաշվետու-ընտրական ժողովների անցկացման նկատմամբ գործարար մոտեցումը բնորոշ է ոչ միայն սկզբնական խոշոր կուսակցական կազմակերպությունների համար: Լավ նախապատրաստության շնորհիվ հաշվետվությունները և ընտրությունները պատշաճ մակարդակով անցան, օրինակ, Աբովյանի շրջանի Ակունք գյուղի, Նոյեմբերյանի շրջանի Ծավարշավանի սովխոզի և մի շարք այլ սկզբնական կուսակցական կազմակերպություններում:

Դրա հետ մեկտեղ մի շարք սկզբնական կուսկազմակերպություններում հաշվետու-ընտրական ժողովներն անցան ցածր մակարդակով: Այդպիսի փաստեր եղան Ապարանի, Ախուրյանի, Ամասիայի, Մեղրու, Մարտունու և այլ շրջաններում:

Մոտենում է հաշվետու-ընտրական կամպանիայի պատասխանատու փուլը. տեղի կունենան շրջանային ու քաղաքային կուսակցական կոնֆերանսները: Կուսակցության շրջկոմների, քաղկոմների խնդիրն է դրանք անցկացնել կազմակերպական և քաղաքական բարձր մակարդակով:

Այս տարվա կոնֆերանսների առանձնահատկությունն այն է, որ դրանք **ՍՄԿԿ XXIV** համագումարից հետո անցկացվում են առաջին անգամ: Կուսակցության քաղկոմները, շրջկոմները պետք է բոլոր միջոցները ձեռնարկեն, որպեսզի կոնֆերանսներում գործարար քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտում հանրագումարի բերվեն **ՍՄԿԿ XXIV** համագումարի և Հայաստանի կոմկուսի XXV համագումարի որոշումների կենսագործման ուղղությամբ տարված աշխատանքի արդյունքները, բացահայտվեն տեղ գտած թերությունները ու ռեզերվները, մատնանշվեն իններորդ հնգամյակի պլանների կատարումն ապահովող կոնկրետ ուղիները:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները պետք է անհրաժեշտ միջոցներ ձեռնարկեն, որպեսզի կուսակցական կոնֆերանսները կարևոր ուղենիշ դառնան յուրաքանչյուր շրջանի ու քաղաքի, ամբողջ հանրապետության առջև **ՍՄԿԿ XXIV** համագումարի որոշումների լույսով ծառացած խնդիրների իրականացման ճանապարհին:

Նշելով, որ վերջին ժամանակներս Կենտրոնական կոմիտեն քիչ բան չի արել աշխատավորների նամակներին ընթացք տալու և քաղաքացիների ընդունելությունը կազմակերպելու աշխատանքի հետագա կատարելագործման ուղղությամբ, զեկուցողն ասում է, որ նամակների և դիմումների հոսանքը ավելացել է մեկուկես անգամ: Այդ աճը որոշ չափով բացատրվում է նրանով, որ մեծացել են Կենտկոմում աշխատավորներից ստացվող արձագանքներն այն մասին, որ վերջին ժամանակներս հանրապետությունում իրականացվել են կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման նպատակին ուղղված միջոցառումներ, ուժեղացել է պայքարը պաշտոնական չարաշահումների և հակահասարակական երևույթների դեմ:

Նամակներում արտացոլված է բնակչության լայն խավերի ձգտումը՝ Կենտկոմին օգնել ավելի բազմակողմանիորեն տեսնելու իրադրությունը, վերացնելու տեղ գտած թերությունները: Եվ շատ կարևոր է, որ մենք այսուհետև ևս պահպանենք ու զարգացնենք այդ կապը մասսաների հետ:

Սակայն թերությունների ուժեղացած քննադատության պայմաններում որոշ տեղերում իրենց գործունեությունը ակտիվացրել են առանձին դեմագոգներ, որոնք բոլոր ինստանցիաներին ուղարկում են, որպես կանոն, անստո-



րագիր նամակներ՝ անհիմն մեղադրանքներով՝ ձգտելով անձնական նկատառումներով արատավորել ազնիվ աշխատողներին: Իրենց անհիմն բողոքները վերսկսել են նաև որոշ հայցամոլներ, որոնք տարիներ շարունակ համառորեն ձգտում են հասնել իրենց անօրինական պահանջների լուծմանը:

Այս ամենը Կենտկոմի ապարատի, կուսակցության շրջկոմների ու քաղկոմների աշխատողներից, անշուշտ, պահանջում է նոր ջանքեր, նամակների էության մեջ ճիշտ խորամուխ լինելու հմտություն, պահանջում է ավելի օպերատիվորեն ու որակյալ ձևով քննության առնել դրանցում բարձրացված հարցերը, ավելի սուր կերպով արձագանքել աշխատավորների ահազանգերին և դրա հետ մեկտեղ կուսակցական, սկզբունքային գնահատական տալ առանձին անձանց անվայել գործողություններին, վճռականորեն արմատախիլ անել ազնիվ մարդկանց վարկաբեկելու ամեն տեսակ փորձերը:

Հաշվի առնելով աճած պահանջները, Կենտկոմի քարտուղարությունը վերջին ժամանակներս մի շարք միջոցառումներ իրականացրեց Կենտկոմի ապարատում նամակներին ընթացք տալու աշխատանքի մակարդակի հետագա բարձրացման ուղղությամբ:

Բայց, այնուամենայնիվ, վերադաս մարմիններում նամակների, այդ թվում վերստին գրված նամակների մեծ հոսանքի հիմնական պատճառներից մեկն այն է, որ կուսակցական և սովետական մարմինների որոշ աշխատողներ անուշադիր, մակերեսային, իսկ երբեմն էլ ձևական վերաբերմունք են ցույց տալիս բնակչության կենսական կարիքներին և պահանջմունքներին: Խիստ անբավարար ուշադրություն է դարձվում աշխատավորների բազմաթիվ գանգատների ու դիմումների տեղիք տվող պատճառների վերլուծությանն ու վերացմանը:

Կենտկոմի բյուրոն, կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեները պետք է ուժեղացնեն վերահսկողությունը «Նամակների քննարկման և աշխատավորների ընդունելության կազմակերպման աշխատանքը բարելավելու մասին» **ՍՄԿԿ** Կենտկոմի որոշման կատարման նկատմամբ:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի **1973** թվականի ապրիլյան պլենումի հիմնական պահանջներից մեկը կազմակերպական-կուսակցական աշխատանքի մակարդակի համակողմանի բարձրացումն է, կուսակցական ղեկավարման ոճի, ձևերի և մեթոդների կատարելագործումը, կուսակցական ապարատի աշխատանքի ճկունության և արդյունավետության ապահովումը: Կենտկոմի բյուրոյի աշխատանքում անշեղորեն կիրառվում են կուսակցական կյանքի նորմերն ու կոլեգիալության սկզբունքները՝ հարցերը լուծելիս:

Ընդունված որոշումները հրապարակվում են մամուլում, որը նպաստում է կադրերի ճիշտ դաստիարակությանը, դրանց կատարման աշխատանքում կոմունիստների, բոլոր աշխատավորների հետագա ակտիվացմանը:

Վերջին ժամանակներս Կենտկոմի բյուրոն քննության առավ հանրապետական կուսակցական կազմակերպության պրակտիկ գործունեության մի շարք առավել հրատապ հարցեր, վերլուծեց գործերի վիճակը, քննադատեց թերությունները, նշեց դրանց վերացման ուղիները:

Միևնույն ժամանակ Կենտկոմի բյուրոն ուշադրություն է հրավիրում այն բանի վրա, որ հանրապետության կուսակցական կազմակերպության մեջ կատարողական կարգապահության մակարդակը դեռևս չի համապատասխանում արդի պահանջներին: Կուսակցության շրջկոմներն ու քաղկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները դանդաղկոտություն են հանդես բերում ընդունված որոշումների կատարման գործում: Մեր գլխավոր խնդիրն է առավել հետևողականություն և հաստատակամություն հանդես բերել նշված նպատակներին հասնելու գործում: Մի խոսքով, մեր գործնա-

կան աշխատանքի նշանաբանն են դառնում գործարարությունը, կազմակերպվածությունը, հետևողականությունը և կուսակցական բարձր պահանջկոտությունը, որովհետև, ինչպես սովորեցրել է Վ. Ի. Լենինը, «...ստուգել մարդկանց և ստուգել գործերի փաստական կատարումը՝ դրանում, մեկ անգամ ևս դրանում, միայն դրանում է այժմ ամբողջ աշխատանքի, ամբողջ քաղաքականության մեխը»:

Մենք կնգտենք այն բանին, վերջում ասում է ընկ. Պ. Անիսիմովը, որ բոլոր կոմունիստները կուսակցական մեծ պատասխանատվություն հանդես բերեն աշխատանքի՝ իրենց հանձնարարված տեղամասի համար, գործնականում կատարեն իրենց ավանգարդային դերը, ցույց տան աշխատանքի նկատմամբ բարեխիղճ վերաբերմունքի, բարձր կազմակերպվածության օրինակ:

Մենք մշակել ենք այնպիսի միջոցառումներ, որոնց կենսագործումը պետք է նպաստի կուսակցական ու պետական ապարատի բոլոր օղակներում կարգապահության բարձրացմանը և կարգ ու կանոնի հաստատմանը, փոխադարձ պահանջկոտության և փոխադարձ վստահության մթնոլորտի ստեղծմանը, որովհետև որքան մեծ է վստահությունը, որքան բարձր է պահանջկոտությունը, այնքան ամուր է կուսակցական կարգապահությունը: Այս ամենը ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրների հաջող կատարման գրավականը կլինի: (Ծափահարություններ):

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ

## ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԱՌԱՋԱԴՐԱԾ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԻ ԿԱՏԱՐՄԱՆ, ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԵՎ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԵՐՆ ՈՒ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

### ԸՆԴՈՒՆՎԱԾ 1973 ԹՎԱԿԱՆԻ ՆՈՅԵՄԲԵՐԻ 14-ԻՆ

*Լսելով և քննարկելով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Ա. Ե. Քոչինյանի զեկուցումը «ՍՄԿԿ XXIV համագումարի կողմից առաջադրված տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների կատարման, կուսակցական և պետական կարգապահության ամրապնդման գործում սկզբնական կուսակցական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը բարձրացնելու միջոցառումների մասին», Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը նշում է, որ Կենտկոմի բյուրոն, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները որոշակի աշխատանք են կատարել սկզբնական կուսակցական կազմակերպությունների կազմակերպչական և քաղաքական գործունեության ձևերն ու մեթոդները կատարելագործելու, նրանց մարտունակությունը է՛լ ավելի բարձրացնելու, ձեռնարկությունների և հիմնարկների աշխատանքի վրա կուսկազմակերպությունների ազդեցությունն ուժեղացնելու, արտադրության մեջ և հասարակական ու քաղաքական կյանքում կոմունիստների ավանգարդային դերն ապահովելու ուղղությամբ:*

*Քաղաքային և շրջանային կուսակցական կոմիտեները ուժեղացրել են սկզբնական կուսկազմակերպությունների ղեկավարումը, նրանցից շատերում ստեղծվել է քարտուղարների հետ աշխատանք կատարելու որոշակի սիստեմ, բարելավվել է ընտրովի ակտիվի ուսուցումը: Ավելի բովանդակալից են դարձել ներկուսակցական աշխատանքի ձևերն ու մեթոդները, բարձրացել են կուսակցական ժողովների դերն ու նշանակությունը, ավելի լրիվ է օգտագործվում ադմինիստրացիայի գործունեության վերահսկման իրավունքը, որը նպաստում է կուսակցական ու պետական կարգապահության հետագա ամրապնդմանը:*

*Իրենց պրակտիկ գործունեության մեջ սկզբնական կուսակցական կազմակերպությունները սկսել են ավելի մեծ չափով հենվել արտադրամասային*

կազմակերպությունների և կուսակցական խմբերի վրա։ Որոշ աշխատանք է կատարվել նյութական արտադրության և հասարակական կյանքի վճռական տեղամասերում կոմունիստների ուժերի տեղաբաշխումը բարելավելու, ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների, կուսակցության և կառավարության դիրեկտիվների կատարման համար նրանց ակտիվությունն ու պատասխանատվությունը բարձրացնելու ուղղությամբ։

Կենտկոմի պլենումը գոհունակությամբ նշում է, որ արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և սովխոզների կոլեկտիվները, կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, որոշակի հաջողությունների են հասել հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա պլանային առաջադրանքների կատարման գործում։ Արդյունաբերական արտադրանքի իրացման տասն ամսվա պլանը կատարվել է 102 տոկոսով, աճի տեմպերը կազմել են 5,2 տոկոս։ Կենտրոնացված կապիտալ ներդրումների հաշվին գործարկվել են 282 միլիոն ռուբլի գումարի հիմնական ֆոնդեր, որը անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ 40 տոկոսով ավելի է։ Կատարվել են պետությանը հացահատիկ, պտուղ, բոստանային կուլտուրաներ, կարտոֆիլ, խորդենի, միս, կաթ, բուրդ և ձու վաճառելու պլաններն ու գերպլանային առաջադրանքները։ 1972 թվականի չորրորդ եռամսյակում և 1973 թվականի առաջին կիսամյակում անասնապահական մթերքների արտադրությունն ու մթերումներն ավելացնելու գործում համամիութենական սոցիալիստական մրցության մեջ ձեռք բերած հաջողությունների համար հանրապետությունն արժանացել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի կարմիր դրոշին։

Միջոցառումներ են իրականացվում ժողովրդական կրթության հետագա վերելքի, գիտության ու կուլտուրայի զարգացման ուղղությամբ։

Դրա հետ մեկտեղ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը նշում է, որ կազմակերպչական և մասսայական-քաղաքական աշխատանքի մակարդակը մի շարք սկզբնական կուսակցական կազմակերպություններում դեռևս լիովին չի համապատասխանում ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջներին։ Այդ կազմակերպություններից մի քանիսը կոնկրետ և վճռական միջոցներ չեն ձեռնարկում բարձրացնելու արտադրության արդյունավետությունը, անբավարար են ազդում տնտեսական գործունեության վրա, անհրաժեշտ աշխատանք չեն կատարում աշխատավորներին աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, աշխատանքային և արտադրական կարգապահության խստիվ պահպանման ոգով դաստիարակելու ուղղությամբ։

Մի շարք սկզբնական կուսակցական կազմակերպություններում ներկուսակցական աշխատանքը կատարվում է ցածր մակարդակով, էական թերություններ կան կուսակցական ժողովների նախապատրաստման և անցկացման պրակտիկայում, թույլ է ծավալվում քննադատությունն ու ինքնաքննադատությունը։ Պատշաճ ուշադրություն չի նվիրվում ընդունված որոշումների, կոմունիստների քննադատական դիտողությունների և առաջարկությունների կատարման կազմակերպմանն ու վերահսկմանը։ Շատ կուսակցական կազմակերպություններ լրիվ չափով չեն իրականացնում ադմինիստրացիայի վերահսկման իրավունքը, պատշաճ ներգործություն չեն ունենում կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության վրա։ Որոշ սկզբնական կուսակցական



կազմակերպություններ չեն բարձրացնում կոմունիստների, ղեկավար աշխատողների պատասխանատվությունը հանձնարարված գործի համար, լիբերալ վերաբերմունք են ցուցաբերում ՍՄԿԿ կանոնադրությունը, կուսակցական և պետական կարգապահությունը խախտողների նկատմամբ։

Առանձին կուսակցական կազմակերպություններ լրիվ չափով չեն օգտագործում կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի բազմազան ձևերն ու մեթոդները՝ իններորդ հնգամյակի առաջադրանքների կատարման և հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա հաջող ավարտման համար աշխատավորների լայն մասսաներին մոբիլիզացնելու ուղղությամբ։

Հանրապետության զգալի թվով արդյունաբերական ձեռնարկություններ, շինարարական ու տրանսպորտային կազմակերպություններ, կոլտնտեսություններ ու սովխոզներ չեն կատարում արտադրական պլանները և սոցիալիստական պարտավորությունները։ 1973 թվականի տասն ամսում արդյունաբերական արտադրանքի իրացման պլանը չեն կատարել 98 ձեռնարկություններ, շինմոնտաժային աշխատանքների պլանները չեն կատարել շինարարական շատ տրեստներ ու վարչություններ։

Երևանի ավտոդողերի գործարանի, Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի, «Հայքիմմեքենա» արտադրական միավորման, Լենինականի հղկող հաստոցների գործարանի, Սևանի գործադիր մեխանիզմների գործարանի, № 1 կահույքի ֆաբրիկայի սկզբնական կուսակցական կազմակերպությունները և ուրիշ շատ կազմակերպություններ կոլեկտիվներին թույլ են մոբիլիզացնում իրենց առջև դրված խնդիրների լուծման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման, թողարկվող արտադրանքի որակի բարելավման համար, պատշաճ պայքար չեն մղում խնայողության և տնտեսման համար։ Ամասիայի, Ղուկասյանի, Մեղրու, Ապարանի, Գուգարքի և մի շարք այլ շրջանների կոլտնտեսությունների ու սովխոզների կուսակցական շատ կազմակերպություններ պատշաճ ուշադրություն չեն նվիրում հողի բարձր արդյունավետ օգտագործման, դաշտավարության և անասնապահության կուլտուրայի բարձրացման, կոմպլեքսային մեքենայացման արմատավորման, հանրային հոտի կերի բազայի ամրապնդման և մթերատվության բարձրացման հարցերին։

Դեռևս էական թերություններ կան հանրապետության մինիստրությունների և գերատեսչությունների սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքում։ Արդյունաբերական շինարարության, շինանյութերի արդյունաբերության, թեթև արդյունաբերության, մթերումների, կուլտուրայի, լուսավորության մինիստրությունների, «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորման, Հայկոոպի և մի քանի այլ մինիստրությունների ու գերատեսչությունների կուսակցական կազմակերպություններ պատշաճ ներգործություն չեն ունենում ապարատի բոլոր օղակների աշխատանքի բարելավման, պետական կարգապահության ամրապնդման վրա։ Նրանց գործունեության մեջ պակասում են նպատակասլացությունն ու մարտականությունը, ստեղծված չէ ճյուղի աշխատանքում փոխադարձ բարձր պահանջկոտության, բացերի ու թերությունների նկատմամբ անհանդուրժողության իրադրություն։

Հետագա բարելավում է պահանջում բարձրագույն ուսումնական հաստատությունների և դպրոցների սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքը սովորողների կողմից կայուն գիտելիքների տիրապետելու,

նրանց մեջ գաղափարական համոզվածություն ձևավորելու, նրանց ինքնուրույն աշխատանքային կյանքի նախապատրաստելու ուղղությամբ։

Առանձին գիտահետազոտական ինստիտուտներում և նախագծային-կոնստրուկտորական կազմակերպություններում ցածր է գիտական հետազոտությունների և մշակումների արդյունավետությունը, դանդաղ են արմատավորվում ավարտված աշխատանքները, իսկ կուսակցական կազմակերպությունները հաշտվում են այդ թերությունների հետ։

Լուրջ բացեր կան առևտրի, հասարակական սննդի, կոմունալ և կենցաղային սպասարկման, բժշկական հիմնարկների, վարչական մարմինների կուսակցական շատ կազմակերպությունների աշխատանքում։

Անբավարար ուշադրություն է նվիրվում կոմունիստների գաղափարական կոփմանը, նրանց մեջ մարքս-լենինյան աշխարհհայացքի ձևավորմանը։ Քաղաքական և տնտեսագիտական ուսուցումը շատ դեպքերում ձևական, նեղ լուսավորչական բնույթ է կրում, անբավարար է ազդում կադրերի գաղափարական աճի, բոլոր աշխատավորների մեջ քաղաքական, գործարար և բարոյական վեհ հատկությունների դաստիարակման վրա։

Պլենումը գտնում է, որ հանրապետության սկզբնական կուսակցական կազմակերպությունների գործունեության մեջ եղած լուրջ թերությունները զգալի չափով բացատրվում են նրանով, որ կուսակցության շրջկոմները, քաղկոմները, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բաժինները միշտ չէ, որ խորապես վերլուծում են նրանց աշխատանքը և նրանց ցույց չեն տալիս ամենօրյա արդյունավետ օգնություն։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը որոշում է՝

1. Հանրապետական կուսակցական կազմակերպության գլխավոր խնդիրը համարել ՍՄԿԿ XXIV համագումարի կողմից առաջադրված տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների անշեղ կատարումը, կուսակցական և պետական կարգապահության ամրապնդումը, այդ գործում սկզբնական կուսակցական կազմակերպությունների դերի ու պատասխանատվության հետագա բարձրացումը։

Զարգացնել մասսաների քաղաքական ակտիվությունը, ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը, աշխատանքային կոլեկտիվները ոտքի հանել իններորդ հնգամյակի մեծ ու պատասխանատու խնդիրների լուծման համար, ըստ ամենայնի խրախուսել աշխատավորների նախաձեռնությունն ու ստեղծագործական խանդավառությունը, դրանց կազմակերպված բնույթ տալ, պաշտպանել կոլեկտիվներում ծնունդ առնող հայրենասիրական նախաձեռնություններն ու շարժումները։

2. Առաջարկել կուսակցության քաղկոմներին ու շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին՝ խստիվ պահպանել կուսակցական կյանքի լենինյան նորմերը, ըստ ամենայնի զարգացնել ներկուսակցական դեմոկրատիան, ամրապնդել կարգապահությունը, ավելի լրիվ օգտագործել ադմինիստրացիայի գործունեության վերահսկման կանոնադրական իրավունքը։ Պրակտիկ գործունեության մեջ հետևողականորեն առաջնորդվել կոլեգիալության և աշխատանքի հանձնարարված բնագավառի համար կադրերի անձնական պատասխանատվության սկզբունքներով։ Ըստ ամենայնի բարձրացնել կուսակցական ժողովների դերը, ստեղծել փոխադարձ բարձր պահանջկոտության և հարցերի գործարար քննարկման, սկզբունքային քննադատության և



ինքնաքննադատության մթնոլորտ։ Կուսակցական փաստաթղթերի տեղի ունեցող փոխանակումը լայնորեն օգտագործել կոմունիստների ավանգարդային դերի, բոլոր սկզբնական կուսակցական կազմակերպությունների ակտիվության ու մարտունակության հետագա բարձրացման նպատակով։

Կենտկոմի պլենումը ընդգծում է, որ սկզբնական կուսակցական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է կոմունիստների, բոլոր աշխատավորների գաղափարական կոփումը։ Հարկավոր է մշտապես կատարելագործել գաղափարական աշխատանքը, այն կատարել՝ հաշվի առնելով մարդկանց կուլտուրայի և նրանց հետաքրքրությունների աճած մակարդակը, վճռական հակահարված տալ խորթ գաղափարախոսության ոտնձգություններին, մանրբուրժուական, մասնավոր-սեփականատիրական միտումների դրսևորումներին։ Աշխատավորներին դաստիարակել սովետական հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ու ժողովուրդների բարեկամության, քաղաքական բարձր զգոնության ոգով։

3. Պարտավորեցնել ձեռնարկությունների, հիմնարկների, մինիստրությունների և գերատեսչությունների կուսակցական կազմակերպություններին՝ կուսակցական-կազմակերպչական ամբողջ աշխատանքը նպատակամղել տնտեսության կուսակցական ղեկավարման մակարդակի ըստ ամենայնի բարձրացմանը, ներքին ռեզերվների հայտնաբերմանն ու ռացիոնալ օգտագործմանը, արտադրության որակական ցուցանիշների մշտական բարելավմանը և այդ հիման վրա ապահովել 1973 թվականի պետական պլանի ու սոցիալիստական պարտավորությունների և իններորդ հնգամյակի առաջադրանքների անվերապահ կատարումը։

4. Հանձնարարել՝

ա) արդյունաբերական ձեռնարկությունների, տրանսպորտի և կապի սկզբնական կուսակցական կազմակերպություններին. կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի մակարդակի հետագա բարձրացման հիման վրա ապահովել արտադրության ծավալների սիստեմատիկ ավելացումը՝ աշխատանքի արտադրողականության, արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման, հիմնական արտադրական ֆոնդերի արդյունավետ օգտագործման, աշխատանքի, արտադրության և կառավարման գիտական կազմակերպման հետագա կատարելագործման, խնայողության ռեժիմի խստիվ կիրառման միջոցով։ Ըստ ամենայնի խրախուսել և աջակցել հանդիպական պլաններով հանդես եկած աշխատանքային կոլեկտիվներին, արտադրական տեղամասերին ու բրիգադներին։ Հատուկ ուշադրություն դարձնել թողարկվող արտադրանքի որակի բարձրացմանը.

բ) կառույցների և շինանյութերի ձեռնարկությունների սկզբնական կուսակցական կազմակերպություններին. հասնել աշխատանքային և նյութական ռեսուրսների, շինարարական տեխնիկայի ու սարքավորումների առավել լրիվ և ռացիոնալ օգտագործմանը։ Վճռական միջոցներ ձեռնարկել ամրապնդելու շինարարական ինդուստրիայի բազան, կրճատելու շինարարության ժամկետները և գործարկելու նոր կարողությունները, կուլտուրական ու կենցաղային օբյեկտները, պայքարել շինմոնտաժային աշխատանքների որակի խիստ բարելավման համար, ավելի ակտիվորեն արմատավորել տնտեսական հաշվարկը, առաջավոր փորձը, նոր շինանյութերն ու կոնստրուկցիաները.

գ) կոլտնտեսությունների և սովխոզների սկզբնական կուսակցական կազ-

մակերպությունների. հողագործության կուլտուրայի բարձրացման, աշխատանքային պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման հիման վրա ամենուրեք ապահովել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության աճը, անասնապահության կերի բազայի ամրապնդումը, արտադրանքի արտադրության խիստ ավելացումն ու նրա ինքնարժեքի իջեցումը։ Հատուկ ուշադրություն նվիրել խաղողագործության, բանջարաբուծության զարգացմանը և հանրային հոտի մթերատվության հետագա բարձրացմանը.

դ) հանրապետության մինիստրությունների և գերատեսչությունների սկզբնական կուսակցական կազմակերպություններին. վերակառուցել աշխատանքը կուսակցության XXIV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1972 թվականի դեկտեմբերյան պլենումի պահանջների ոգով, ավելի ակտիվորեն ներազդել ապարատի բոլոր օղակների գործունեության վրա, աշխատակիցներին դաստիարակել հանձնարարված գործի համար բարձր պատասխանատվության ոգով, ըստ ամենայնի ամրապնդել պետական կարգապահությունը.

ե) առողջապահության, առևտրի, սպասարկման ոլորտի ձեռնարկությունների և հիմնարկների սկզբնական կուսակցական կազմակերպություններին. բարձրացնել կազմակերպչական ու դաստիարակչական աշխատանքի մակարդակը կոլեկտիվներում, այն նպատակամղել սովետական մարդկանց առողջության պահպանության հետագա բարելավմանը, աշխատավորների պահանջմունքների և կարիքների առավել լրիվ բավարարմանը, բնակչության սպասարկման կուլտուրայի բարձրացմանը։ Անհաշտ պայքար մղել չարաշահումների և հափշտակությունների դեմ.

զ) վարչական մարմինների սկզբնական կուսակցական կազմակերպություններին. բարձրացնել յուրաքանչյուր աշխատողի և, ամենից առաջ, կոմունիստների պատասխանատվությունը սոցիալիստական օրինականության և սովետական իրավակարգի խստագույն կիրառման համար։ Վճռական պայքար մղել աշխատանքում բարեհոգության դեմ, անձնակազմի ջանքերը մոբիլիզացնել հանցագործությունները, չարաշահումներն ու սոցիալիստական սեփականության հափշտակությունները կանխելու և վերացնելու նպատակով։ Ամրապնդել ամենօրյա կապը աշխատավորական կոլեկտիվների, լայն հասարակայնության հետ.

է) ուսումնական հաստատությունների սկզբնական կուսակցական կազմակերպություններին. ուժեղացնել ազդեցությունը ուսումնական պրոցեսի, աճող սերնդի կոմունիստական դաստիարակության ձևերի ու մեթոդների կատարելագործման վրա, սովորողների և ուսանողների խոր ու կայուն գիտելիքների ապահովման, ժողովրդական տնտեսության բարձրորակ մասնագետներ պատրաստելու վրա, բարձրացնել դասախոսական կազմի պատասխանատվությունը այդ գործում.

ը) գիտահետազոտական և նախագծային-կոնստրուկտորական կազմակերպությունների սկզբնական կուսակցական կազմակերպություններին. ջանքերը կենտրոնացնել գիտական հետազոտությունների մակարդակն ու արդյունավետությունը բարձրացնելու, գիտական մշակումների և ժողովրդական տնտեսության մեջ արտադրության նոր առաջավոր մեթոդների և սարքավորման արմատավորման ժամկետները կրճատելու վրա, մշտապես զարգացնել և ամրապնդել ստեղծագործական համագործակցությունը արտադրական կոլեկտիվների հետ.



թ) ստեղծագործական միությունների և կուլտուրայի հիմնարկների սկզբնական կուսակցական կազմակերպություններին. ակտիվացնել գրականության ու արվեստի աշխատողների կոմունիստական իդեալների նկատմամբ հավատարմության, կուսակցության ու ժողովրդի հանդեպ հասարակական պարտքի խոր ըմբռնման ոգով դաստիարակելու աշխատանքը։ Ամենօրյա ուշադրություն ցուցաբերել գրականության և արվեստի զարգացման ստեղծագործական պրոբլեմներին, միությունների անդամների և կուլտուրայի աշխատողների գաղափարատեսական մակարդակի և պրոֆեսիոնալ վարպետության բարձրացմանը, ելնելով գրականության և արվեստի կուսակցականության ու ժողովրդայնության լենինյան սկզբունքներից, ըստ ամենայնի նպաստել սովետական ապրելակերպը, մեր օրերի հերոսին, սովետական մարդու հոգևոր բարձր կուլտուրան արտացոլող բարձրարվեստ ստեղծագործությունների կերտմանը։ Մերկացնել բուրժուական հասարակարգի հակամարդասիրական բարքերը, նրա ապականիչ գաղափարախոսությունն ու քաղաքականությունը։

5. Հայաստանի կոմկուսի քաղկոմներից ու շրջկոմներից պահանջել մշտապես բարելավելու սկզբնական կուսակցական կազմակերպությունների ղեկավարումը, բարձրացնելու նրանց մարտունակությունը, խորապես ու համակողմանիորեն վերլուծելու նրանց գործունեությունը, կանոնավոր կերպով քննարկելու հաշվետվություններ, նրանց ցույց տալու գործարար կոնկրետ օգնություն։ Կատարելագործել կուսակցական ինֆորմացիայի սիստեմը, կուսակցական աշխատանքի դրական փորձի պրոպագանդումը։ Ամենօրյա հոգատարություն ցուցաբերել սկզբնական, արտադրամասային կազմակերպությունների քարտուղարների և կուսակցական խմբերի կազմակերպիչների գործնական ու քաղաքական աճի նկատմամբ։ Արմատապես բարելավել կադրերի ընտրության, տեղաբաշխման, դաստիարակության գործը՝ առանձնահատուկ ուշադրություն նվիրելով ղեկավար պաշտոններում առաջավոր բանվորների, կոլտնտեսականների, կանանց առաջքաշմանը։

6. Հանձնարարել հանրապետական, տեղական թերթերի խմբագրություններին, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի հեռուստատեսության և ռադիոհաղորդումների պետական կոմիտեին՝ լուսաբանել սկզբնական կուսակցական կազմակերպությունների բազմաբովանդակ գործունեությունը, ընդհանրացնել և տարածել նրանց աշխատանքի դրական փորձը, ավելի հաճախ կազմակերպել սկզբնական, արտադրամասային կուսակցական կազմակերպությունների քարտուղարների, կուսակցական խմբերի կազմակերպիչների ելույթները։

Ըստ ամենայնի օգնել կուսակցական ու սովետական մարմիններին՝ վերացնելու բացասական փաստերն ու սովերոտ երևույթները, համարձակորեն ու վճռականապես բացահայտելու թերությունները, միջոցներ ձեռնարկելու քննադատական ելույթների առթիվ, ապահովելու կուսակցական մարմինների աշխատանքի հրապարակայնությունը։

* * *

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմին հավաստիացնում է, որ հանրապետության կուսակցական կազմակերպությունները է՛լ ավելի կբարձրացնեն կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի մակարդակը, այն կնպատակամղեն իններորդ հնգամյակի առաջադրանքների, ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումների հաջող կատարմանը։

## ՀՈԴՎԱԾՆԵՐ

# ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ

Ս. Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
ՀՍՍՀ պետպլանի տնտեսագիտության և պլանավորման ինստիտուտի բաժնի վարիչ, դոցենտ

*Երկրի զարգացման ներկա էտապում, երբ անչափ աճել են արտադրության մասշտաբները, ստեղծվում են նորանոր ճյուղեր, բարդանում են տնտեսական կապերը, էկոնոմիկայի կառավարման գործում արդեն չի կարելի բավարարվել ստեղծված կազմակերպական ձևերով ու կառուցվածքներով, եթե դրանք նույնիսկ լավ են ծառայել անցյալում։*

*Կյանքը, արտադրաուժերի զարգացումն արդեն առաջադրել են ժողովրդական տնտեսության կառավարման կազմակերպական կառուցվածքի հետագա ռացիոնալացման և որոշ մարմինների ֆունկցիաների ճշգրտման հարցերը։ Առանձին ճյուղերի առանձնահատկությունների համեմատ, կառավարման նոր սիստեմներն ընտրվում են պրակտիկ փորձի և գիտության տվյալների մանրազնին ուսումնասիրության հիման վրա։*

*ՍՄԿԿ XXIV համագումարը պահանջեց, մասնավորապես, արդյունաբերության մեջ անցնել կառավարման երկօղակ և եռօղակ սիստեմի։ Այդ կարևոր հարցի լուծմանն է ուղղված ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թթ. հնգամյա պլանի վերաբերյալ համագումարի դիրեկտիվներին համապատասխան կուսակցության Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի՝ «Արդյունաբերության կառավարման հետագա կատարելագործման մի քանի միջոցառումների մասին» 1973 թ. մարտի 2-ի որոշումը, որը հենվում է մի շարք ճյուղերում կուտակված պրակտիկ մեծ փորձի վրա։*

*Կատարելագործել էկոնոմիկայի կառավարումը՝ նշանակում է տնտեսական մեխանիզմի մի շարք ձևերն ու կողմերը համապատասխանեցնել զարգացած սոցիալիզմի մակարդակին, գիտատեխնիկական հեղափոխության պահանջներին։ Այդ կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմի 1972 թ. դեկտեմբերյան պլենումում նշվեց, որ գիտատեխնիկական առաջընթացի արագացման գործում սոցիալիզմի առավելությունները մեզ մոտ դեռևս լրիվ չեն օգտագործվում, գիտական և տեխնիկական մտքի նորագույն նվաճումները դանդաղ են արմատավորվում արտադրության մի շարք ճյուղերում։ Ուստի, պլենումը խնդիր դրեց է՛լ ավելի կատարելագործել կենտրոնացված պլանավորումը, բարձրացնել պլանների տեխնիկական ու տնտեսագիտական հիմնավորվածությունը, պատասխանատվությունը պետական առաջադրանքների կատարման համար, ամրապնդել կարգապահությունը, ապահովել ամբողջ տնտեսական մեխանիզմի, նրա բոլոր օղակների հստակ, կարգավորված գործունեությունը, ամենից լրիվ օգտագործել սոցիալիստական պլանավորման առավելությունները, արտադրության համակենտրոնացման և կառավարման հնարավորությունները։*

*Բարձրացել է տնտեսության կենտրոնացված ղեկավարման մակարդակը, աճել է մինիստրությունների պատասխանատվությունը, առավել ինքնուրույն են դարձել դրանք, բարելավվել է որոշ ճյուղերի կառավարման կառուցվածքը, ընդլայնվել արտադրամիավորումների ցանցը։ Օրինակ, երեք տարի է, ինչ հաջողությամբ գիտափորձ է կատարվում ՍՍՀՄ սարքաշինության, ավտոմատացման միջոցների և կառավարման սիստեմների մինիստրությունում, որտեղ գլխավոր վարչությունների փոխարեն գործում են համամիութենական տրնտհաշվարկային միավորումները։ Մի քանի տարի առաջ որոշում ընդունվեց ՍՍՀՄ ավտոմոբիլային, քիմիական, նավթային և ածխային արդյունաբերության մինիստրությունների կառուցվածքը բարելավելու մասին։ Ընդ որում, ածխարդյունաբերության մեջ կառավարման վեց օղակից վերացվել են երեքը և խոշորացվել բուն ձեռնարկությունները, նավթային արդյունաբերությունը կառավարման հինգ-վեցօղակ սիստեմից անցել է եռօղակ կառուցվածքի, իսկ ավտոմոբիլային արդյունաբերության մեջ զարգանում է արտադրության կառավարման երկօղակ սիստեմը։*

*Մեր երկրում հաջողությամբ գործում են շուրջ 1.100 արտադրական միավորումներ՝ 4,5 հազար գործարաններով ու ֆաբրիկաներով։ Երկրի արտադրանքի իրացման ընդհանուր ծավալում արտադրամիավորումների բաժինը կազմում է շուրջ 12 տոկոս։ Սակայն պետք է հաշվի առնել, որ գործող արտադրամիավորումների մեջ մտնող 4,5 հազար ֆաբրիկաներից ու գործարաններից մոտ 2,7 հազարն ունի ինքնուրույն բալանս, իսկ փոքր հզորություն ունեցողների տեսակարար կշիռը դեռևս մեծ է։*

*Ուստի, արդյունաբերության կառավարման հետագա կատարելագործման նպատակով մշակվեց միջոցառումների մի ամբողջ համակարգ, որի պայմաններում էապես կբարձրանա արտադրության համակենտրոնացման աստիճանը, կվերացվի ճյուղերի ղեկավարման ասպարեզում եղած բազմաստիճանությունը և հիմնականում կստեղծվի կառավարման երկ-եռօղակ կառուցվածք։ Արդյունաբերության կառավարման այդպիսի կառուցվածքի դեպքում մինիստրությունների գլխավոր վարչությունների (գլավկների) փոխարեն կստեղծվեն արտադրական, համամիութենական և հանրապետական արդյունաբերական խոշոր ու հզոր միավորումներ՝ որպես հանրային արտադրության հիմնական տնտհաշվարկային ստորաբաժանումներ։*

*Արդյունաբերության հիմնական (սկզբնական) օղակում ստեղծվում են արտադրամիավորումներ ու կոմբինատներ, որոնց կազմում լինելու են ֆաբրիկաներ, գործարաններ, գիտահետազոտական, նախագծային-կոնստրուկտորական, տեխնոլոգիական կազմակերպություններ և այլն։ Վերջիններս արդեն չեն օգտվելու ձեռնարկության իրավունքով. դրանց վրա չի տարածվելու սոցիալիստական պետական արտադրական ձեռնարկության կանոնադրությունը։*

*Որոշ դեպքերում, կառավարման երկօղակ սիստեմի պայմաններում, մինիստրության որոշման համաձայն, արտադրամիավորումներին կարող են են-*

թարկվել առանձին ինքնուրույն ձեռնարկություններ ու կազմակերպություններ, որոնք օգտվում են սոցիալիստական պետական արտադրական ձեռնարկության կանոնադրությամբ տրվող իրավունքներից: Ներկայումս գործող խոշոր ձեռնարկությունները մի շարք դեպքերում չեն միավորվելու. դրանք կարող են օգտվել արտադրամիավորման իրավունքներով: Առավել խոշոր ձեռնարկություններին ու արտադրամիավորումներին (կոմբինատներին) ՍՍՀՄ մինիստրությունները կարող են, ՍՍՀՄ Մինիստրների սովետի թույլտվությամբ, լրիվ կամ մասնակի սահմանել համամիութենական արդյունաբերական միավորումների համար նախատեսվող իրավունքներ:

Եթե հնարավոր չէ այս կամ այն ենթաճյուղի ձեռնարկությունները հիմնական (սկզբնական) օղակում համախմբել արտադրամիավորման մեջ և ենթարկել անմիջապես մինիստրությանը, ինչպես և այն դեպքերում, երբ արդյունաբերության ենթաճյուղում առկա են մեծ քանակությամբ մասնագիտացված ձեռնարկություններ, ապա արտադրության միջին օղակում ստեղծվում են համամիութենական կամ հանրապետական արդյունաբերական միավորումներ: Դրանք միասնական արտադրա-տնտեսական կոմպլեքսներ են՝ արդյունաբերական ձեռնարկություններով, գիտահետազոտական, նախագծային-կոնստրուկտորական, տեխնոլոգիական և տվյալ ենթաճյուղին սպասարկող այլ կազմակերպություններով: Առանձին դեպքերում արդյունաբերական միավորումների կազմում կարող են մտնել արտադրամիավորումներ ու կոմբինատներ:

Արդյունաբերական արտադրության միջին օղակն ընդգրկում է համամիութենական ու հանրապետական արդյունաբերական միավորումները, որոնցից յուրաքանչյուրը միասնական արտադրա-տնտեսական կոմպլեքս է՝ արդյունաբերական ձեռնարկություններով, գիտահետազոտական, կոնստրուկտորական, նախագծային-կոնստրուկտորական, տեխնոլոգիական և այլ ձեռնարկություններով ու կազմակերպություններով: Սրանց շարքն են դասվում նաև որոշ արտադրամիավորումներ (կոմբինատներ), ՍՍՀՄ ածխային արդյունաբերության մինիստրության կոմբինատները և սահմանված կարգով տնտհաշվարկի փոխադրված գլխավոր ու սովորական արտադրական (ճյուղային) վարչությունները:

Արդյունաբերության ճյուղային կառավարման մարմինների բարձր օղակը՝ ՍՍՀՄ և որոշ դեպքերում հանրապետական մինիստրությունների (գերատեսչությունների) կենտրոնական ապարատի կառուցվածքը կկատարելագործվի, հաշվի առնելով կառավարման միջին օղակի՝ արդյունաբերական միավորումների համար օրենսդրությամբ սահմանված արտադրա-ֆինանսական գործունեությունն իրականացնելու իրավունքներն ու պարտականությունները: Մինիստրությունները և գերատեսչությունները պետք է իրենց ջանքերը կենտրոնացնեն ճյուղի հեռանկարային զարգացման և արտադրության արդյունավետության բարձրացման արմատական հարցերի լուծման, պլանավորման ու կառավարման մեթոդների կատարելագործման, միասնական տեխնիկական քաղաքականության անցկացման, կապիտալ ներդրումների արդյունավետության, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, թողարկվող արտադրանքի որակի բարելավման վրա, նպաստեն մասնագետների ճիշտ տեղաբաշխմանն ու օգտագործմանը, աշխատանքի արտադրողականության աճին և ճյուղի արտադրատեսակների նկատմամբ երկրի պահանջմունքների առավել լրիվ բավարարմանը:



Այսպիսով, երկօղակ սիստեմի դեպքում արտադրամիավորումները, կոմբինատները և ձեռնարկությունները ենթարկվում են անմիջապես մինիստրությանը, եռօղակ սիստեմում, որպես կառավարման միջին օղակ, ստեղծվում են համամիութենական կամ հանրապետական արդյունաբերական միավորումներ, որոնց մեջ մտնում են արտադրական օբյեկտները՝ ձեռնարկությունները, կոմբինատները, արտադրական միավորումները: Իսկ առանձին դեպքերում պահպանվող կառավարման քառօղակ սիստեմը կունենա հետևյալ կառուցվածքը. ՍՍՀՄ միութենական-հանրապետական մինիստրություն, միութենական հանրապետության մինիստրություն, հանրապետական արդյունաբերական միավորում, արտադրամիավորում, կոմբինատ, ձեռնարկություն:

Արդյունաբերության կառավարման նոր կառուցվածքը խիստ տրամաբանական է, այն վերացնում է ավելորդ կառավարչական վերնաշենքերը, հետևաբար և զուգահեռությունն ու կրկնօրինակումը: Կուսակցությունն ու կառավարությունը պահանջում են այս չափազանց բարդ աշխատանքում ելնել համապետական շահերից, թույլ չտալ նեղ գերատեսչական մոտեցում և տեղայնություն, նկատի ունենալով, որ էկոնոմիկայի կառավարման սխեմաները չեն կարող քարացած մնալ, դրանք փոփոխվում են, հաշվի առնելով երկրի զարգացման յուրաքանչյուր փուլի առանձնահատկությունները:

«Կոմունիզմը,— գրել է Վ. Ի. Լենինը,— պահանջում է և ենթադրում խոշոր արտադրության առավելագույն կենտրոնացում ամբողջ երկրում» (ПСС, т. 36, стр. 392): Ուստի, բոլոր հանրապետությունների տնտեսական հնարավորությունների ու ռեսուրսների միաձուլումն արագացնում է կոմունիստական շինարարության թափը, նրանցից յուրաքանչյուրի (ամենափոքրի և ամենախոշորի) զարգացումը: Համապետական տնտեսավարումը և պլանավորումը հնարավորություն են ընձեռում ռացիոնալ տեղաբաշխելու արտադրաուժերը, ապահովելու տնտեսական մանևրի ազատությունը, խորացնելու կոոպերացումն ու մասնագիտացումը, որոնց շնորհիվ Լ. Ի. Բրեժնևի պատկերավոր արտահայտությամբ, «...ընդհանուր օգուտը մեծապես գերազանցում է գումարելիների՝ յուրաքանչյուր հանրապետության, շրջանի ու մարզի ջանքերի սովորական թվաբանական գումարը» (ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի մասին, էջ 28): Եվ, իրոք, Սովետական Միության էկոնոմիկան առանձին հանրապետությունների ու մարզերի էկոնոմիկայի մեխանիկական գումարը չէ: Դա վաղուց ի վեր մի միասնական տնտեսական օրգանիզմ է, որը գոյացել է բոլոր ազգերի ու ազգությունների սոցիալ-տնտեսական նպատակների ու շահերի ընդհանրության հիման վրա: Ուստի, միավորումը ոչ թե առանձին ձեռնարկությունների ու այլ կազմակերպությունների մեխանիկական գումարն է, այլ միասնական արտադրա-տնտեսական կոմպլեքս, որի կազմը կարող է շատ բարդ ու բազմապիսի լինել: Այստեղ պահանջվում է մանրազնին ուսումնասիրել ու հիմնավորել հետևյալ հարցերը. ինչպիսի՞ն է կոնկրետ միավորման կազմը, ինչպիսի՞ արտադրամիավորներ ու կազմակերպություններ է նպատակահարմար ընդգրկել դրա մեջ, որպեսզի հնարավոր լինի ավելի ռացիոնալ կառավարել տնտեսությունը և ստանալ առավելագույն արդյունք: Այն կնպաստի, կհանգեցնի արտադրական ու արդյունաբերական միավորումների և, ամբողջությամբ վերցրած, ճյուղի արտադրության ծավալների ավելացմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, մեկ ռուբլու ապրանքային արտադրանքի վրա կատարվող ծախսերի իջեցմանը և շահույթի մեծացմանը, նախատեսվող

միջոցառումների հաշվին ստացվող կապիտալ ներդրումների հաշվարկային տնտեսմանը: Արդյունաբերության կառավարման երկ-եռօղակ սիստեմին անցնելը կատարվելու է համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների կառավարման ապարատի առկա թվի և դրա պահպանման վրա արվող ծախսումների սահմաններում:

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի «Արդյունաբերության կառավարման հետագա կատարելագործման մի քանի միջոցառումների մասին» որոշման համապատասխան, միութենական հանրապետություններում արդեն մշակվում են արդյունաբերության համապատասխան ճյուղերի կառավարման գլխավոր սխեմաներ՝ նախատեսված միջոցառումների տեխնիկատնտեսական հիմնավորմամբ: Կառավարման գլխավոր սխեմաները մշակելիս հատկապես անհրաժեշտ է հաշվի առնել կուսակցության XXIV համագումարի ցուցումն այն մասին, որ վարչական սահմանները և ձեռնարկությունների գերատեսչական ենթակայությունը չպետք է արգելեն միավորումների ու կոմբինատների ստեղծմանը: Կյանքը քիչ օրինակներ չի տալիս, երբ մի քաղաքում կամ շրջանում տեղաբաշխված են մի շարք մինիստրությունների ու գերատեսչությունների համասեռ ձեռնարկություններ, որոնք հաճախ թողարկում են միատիպ արտադրանք, օգտագործում միատեսակ հումք, նյութեր, սարքավորումներ, միևնույն սխեմայով ստեղծում իրենց կառավարչական կառուցվածքը: Այդպիսի ձեռնարկությունների բազայի վրա միասնական խոշոր արտադրամիավորման ստեղծումը կարող է շատ դեպքերում, առանց մեծ կապիտալ ծախսումների, զգալի չափով ավելացնել արտադրությունը, խորացնել մասնագիտացումը: Ահա թե ինչու մի շարք դեպքերում միավորումներում նպատակահարմար է ընդգրկել տարբեր գերատեսչություններին պատկանող համասեռ ձեռնարկություններ: Դա վերաբերում է հատկապես տեղական արդյունաբերությանը, որի ձեռնարկությունները ցրված են ո՛չ միայն արդյունաբերական, այլև ոչ-արդյունաբերական մինիստրությունների, գերատեսչությունների, ստեղծագործական միությունների և այլ հասարակական կազմակերպությունների միջև: Միավորումների ստեղծումով վերջ կտրվի կուլտուր-գեղարվեստական և կենցաղային-տնտեսական ապրանքների արտադրության գերատեսչական անհիմն ու չարդարացված անջատվածությանը, զուգահեռությանն ու կրկնօրինակմանը: Այդ կապակցությամբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1973 թ. ապրիլյան պլենումում ասվեց, որ ոչ-արդյունաբերական մինիստրությունների, գերատեսչությունների և ստեղծագործական միությունների, այսպես կոչված, սպեցիֆիկ պահանջմունքները բավարարելու համար իր ժամանակին ստեղծված ձեռնարկությունները թողարկում են այնպիսի արտադրանք, որը ոչ մի կապ չունի դրանց յուրահատկության հետ: Հատկապես անթույլատրելի է, երբ նման արտադրանքն իրացվում է պետական կարգի կոպիտ խախտումներով, նպաստավոր պայմաններ ստեղծելով ամեն տեսակի մասնավոր գործարքների, սպեկուլյացիայի և հափշտակումների համար:

Դրանց կողմից թողարկվող կուլտուր-գեղարվեստական և կենցաղայինտնտեսական ապրանքների ողջ ծավալն անհրաժեշտ է հանձնել տեղական արդյունաբերության մինիստրությանը, որը կհեշտացնի այդ ապրանքների արտադրության պլանավորումն ու հաշվառումը և արդյունավետ կլուծի համասեռ ձեռնարկությունների համակենտրոնացման, մասնագիտացման ու տեղաբաշխման հարցերը:



Արդյունաբերության ճյուղերի կառավարման գլխավոր սխեմաների մշակման կարգի վերաբերյալ ՍՍՀՄ պետպլանի ցուցումներում ասված է, որ տեղական արդյունաբերության սիստեմում կարող են ստեղծվել հետևյալ արտադրամիավորումները՝ քաղաքի, մարզի (երկրամասի, ինքնավար մարզի) սահմաններում արդյունաբերության մեկ կամ մի շարք ճյուղերի գործարանների (ֆաբրիկաների) և մի քանի մարզերի (երկրամասերի, ինքնավար հանրապետությունների) սահմաններում արդյունաբերության մեկ կամ մի շարք ճյուղերի գործարանների (ֆաբրիկաների) միավորումներ: Իսկ մարզային բաժանում չունեցող միութենական հանրապետության վերաբերյալ ոչինչ չի ասված: Հետևաբար, Հայկական ՍՍՀ-ում (որը չունի մարզային բաժանում) կարելի է ստեղծել քաղաքի և շրջանի, ինչպես նաև մի քանի քաղաքների ու շրջանների սահմաններում տեղական արդյունաբերության մեկ կամ մի շարք ճյուղերի ձեռնարկությունների միավորումներ:

Այդպիսի փորձ արդեն ունի մեր հանրապետության տեղական արդյունաբերությունը, հանձին «Հայէլեկտրակենցաղսարքեր» արտադրամիավորման, որի գլխադաս ձեռնարկությունն է Երևանի «Ֆերիտ» գործարանը, իսկ ֆիլիալները գտնվում են Թալինում, Եղվարդում, Ապարանում, Մարտունիում: Այդ միավորման մեջ հարկավոր է ընդգրկել նաև Շամշադինի խաղալիքների, Երևանի քաղսովետի գործկոմի տեղական արդյունաբերության վարչության կենցաղային էլեկտրասարքերի ու «Լույս» գործարանները: Նմանօրինակ կարգով կարելի է ստեղծել նաև «Տեքստիլ գալանտերեա», «Տնայնագործ», «Պլաստիկ», «Հայկական խոհանոցային պիտույք», «Հայկական ժողովրդական գեղարվեստագործություն» արտադրական և հախճապակու-ճենապակու արդյունաբերական միավորումներ: Իսկ Երևանի փականքային իրերի և «Մետշին» գործարանների միավորման հիման վրա նպատակահարմար է ստեղծել փոքր մետալուրգիայի խոշոր կոմբինատ, որն անմիջապես կենթարկվի տեղական արդյունաբերության մինիստրությանը:

Տեղական արդյունաբերության մինիստրության սիստեմում անհրաժեշտ նախադրյալներ կան նաև գիտատեխնիկական միավորման համար: Որպես գլխադաս կազմակերպություն հանդես կգա «Հայտեղարդպետնախագիծ» ինստիտուտը, իսկ արտադրատեխնիկական բազա՝ Լուսակերտում կառուցվող գործիքաշինական գործարանը: Այդ միավորման մեջ կընդգրկվի նաև մինիստրության նորմատիվային-հետազոտական կայանը:

Ուրիշ մինիստրություններից, գերատեսչություններից և կազմակերպություններից ՀՍՍՀ տեղական արդյունաբերության մինիստրությանը հանձնվելիք ձեռնարկությունների ու ֆիրմաների բազայի վրա կարելի է ստեղծել «Հայգորգ», «Հայբյուրեղապակի», «Հայկական ազգային երաժշտական գործիքներ», «Հայկական կահույք» և արտադրական ու արդյունաբերական հանրապետական այլ միավորումներ:

Տեղական արդյունաբերության մինիստրության Երևանի ու Աշտարակի տրիկոտաժի, ինչպես նաև Երևանի քաղսովետի տեղական արդյունաբերության վարչության տրիկոտաժի բանվածքների ֆաբրիկաները, մեր կարծիքով պետք է հանձնել թեթև արդյունաբերության մինիստրությանը՝ տրիկոտաժի արտադրական միավորման մեջ ընդգրկելու համար: Ինչ վերաբերում է տեղական արդյունաբերության մինիստրության Երևանի և Կամոյի կոշիկի ֆաբրիկաներին, ապա դրանք ևս կարելի է հանձնել թեթև արդյունաբերության մի-

նիստրությանը՝ «Մասիս» կոշիկի ֆիրմայի կազմում ընդգրկելու համար կամ, լավ կլինի, այդ ֆաբրիկաները մասնագիտացնել և տեղական արդյունաբերության սիստեմում կազմակերպել «Կաշվի գալանտերեա» արտադրամիավորում։

Այժմ, երբ արդյունաբերության ճյուղերի կառավարման գլխավոր սխեմաների մշակման աշխատանքների ավարտին քիչ ժամանակ է մնացել, անհրաժեշտ է այդ գործին լուրջ վերաբերվել, որպեսզի, այսպես ասած, ձևական միավորումներ չստեղծվեն։ Դրանք կարող են միայն պրոբլեմի լուծման պատրանք ստեղծել և դրական ազդեցություն չունենալ արտադրության արդյունավետության աճի վրա։ Պետք է նաև վճռականապես պայքարել տեղայնության և գերատեսչայնության դեմ, միավորումների կազմը որոշելիս կատարելագործել դրանց ստեղծման վերաբերյալ առաջարկությունները հիմնավորելու և քննարկելու կարգը։ Չի կարելի նորմալ համարել, որ ճյուղերի գլխավոր սխեմաների մշակմանը գրեթե չեն մասնակցում աշխատավորների դեպուտատների շրջանային և քաղաքային սովետների գործադիր կոմիտեները և դրանց պլանային հանձնաժողովները, բուն ձեռնարկությունները և արտագերատեսչական գիտահետազոտական հիմնարկությունները, մասնավորապես, պետպլանի տնտեսագիտության ու պլանավորման և ակադեմիայի էկոնոմիկայի ինստիտուտները։

Այդ սխեմաներին համապատասխան առաջիկայում կատարվելիք փոփոխությունների գլխավոր իմաստն այն է, որ տնտեսական ղեկավար մարմինները մոտեցվեն արտադրությանը, ավելի հստակորեն սահմանազատվեն իրավունքներն ու պարտականությունները տնտեսական տարբեր օղակների միջև, բարձրացվեն կառավարչական ապարատի աշխատանքի օպերատիվությունն ու ճկունությունը։ Ձեռնարկությունների խոշորացումը, արտադրական հզոր միավորումների ստեղծումը, ճյուղերի մեծ մասի՝ կառավարման երկօղակ կամ եռօղակ սիստեմին անցնելը կոչված են արագացնելու արդյունաբերական արտադրության համակենտրոնացումը և էկոնոմիկայի ղեկավարման տնտհաշվարկային հիմունքների զարգացումը, տնտեսական ռեֆորմի մեխանիզմի կատարելագործումը։

Այս ամենի շնորհիվ տնտեսական ղեկավարումը կմոտենա լաբորատորիաներին, հետազոտողի, նախագծողի և անմիջական արտադրողի միջև կապերը կդառնան ամուր ու պարզ, լավագույն ձևով կլուծվեն արտադրության համակենտրոնացման և մասնագիտացման խնդիրները։ Նոր ձևով են դրվելու և՛ պատասխանատվության հարցը, և՛ իրավունքների սահմանազատման բարդ պրոբլեմը։

Այսպիսով, սկզբունքորեն շատ նոր, հետաքրքրական բան է մուտք գործում մեր տնտեսական կյանքը։ Համամիութենական և հանրապետական արդյունաբերական միավորումների ստեղծումը շոշափում է պրոբլեմների ավելի լայն շրջանակ՝ տնտեսական, իրավական, հոգեբանական և այլն։ Զգալիորեն աճում են պահանջները ղեկավարների իրազեկության մակարդակի, կադրերի վերապատրաստման և ընտրության նկատմամբ։ Պրակտիկայում արտադրողի և կառավարողի կապն իրականացվելու է, ինչպես երազում էին տնտեսավարներն ու տնտեսագետները, «միասնական տնտեսական պարանի» օգնությամբ։ Դա արդյունաբերության կառավարումը կատարելագործելու ճանապարհին կարևոր, գիտականորեն հիմնավորված քայլ կլինի և, անշուշտ, կնպաստի ողջ ժողովրդական տնտեսության արդյունավետության հետագա աճին, ընթացիկ հնգամյակի խնդիրների հաջող կատարմանը։

# ՊԱՀԱՆՋՄՈՒՆՔՆԵՐԻ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՐԺՈՒՅԹԸ

**Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ**

Մեր կուսակցության XXIV համագումարը հատկապես շեշտեց, որ իններորդ հնգամյակի գլխավոր խնդիրն աշխատավորության բարեկեցության էական բարձրացումն է, մարդկանց նյութական ու կուլտուրական պահանջմունքների առավել լրիվ բավարարումը։ Այժմ, երբ երկրի տնտեսական պոտենցիալը բավական հզոր է, ժողովրդական տնտեսության զարգացումն առավել հնարավորություն է ընձեռում լուծելու ժողովրդի բարօրության հետագա աճման բազմազան խնդիրներ։

ՍՄԿԿ XXIV համագումարի փաստաթղթերում, ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան շրջանում հրապարակված որոշումներում խոր բնութագրումներ կան հասարակության կողմից սոցիալիստական անձնավորությանը հատուկ բնականոն պահանջմունքներ մշակելու գործում։

Այս առումով գիտական, հասարակական մեծ հետաքրքրություն է ներկայացնում սովետական քաղաքացիների պահանջմունքների բազմակողմանի ուսումնասիրությունը, որը կոմպլեքս պրոբլեմ է և մի շարք գիտությունների հետազոտման ասպեկտներ է բովանդակում։ Անձնավորության պահանջմունքները դրսևորվում են բազմապիսի կապերի ու առնչությունների միջոցով։ Հայտնի է, որ անձնական շահագրգռության սկզբունքի խախտումը, այսինքն նյութական պահանջմունքների անտեսումը ժամանակին բացասաբար ազդեց ո՛չ միայն ժողովրդական տնտեսության, այլև դաստիարակության գործի, նոր մարդու ձևավորման վրա։ Որոշ իմաստով անտեսվեց այն անհերքելի դրույթը, որ նոր հասարակարգ կարելի է կառուցել ոչ միայն անմիջական էնտուզիազմով, այլ այն էնտուզիազմով, որը ծնվում է պահանջմունքների առավել բավարարման շնորհիվ։

Մարդկանց գործունեության մեջ պահանջմունքների դերի ճիշտ գնահատումը հնարավորություն է ընձեռում բացահայտելու անձնավորության գիտակցության ու վարքագծի վրա տնտեսական ու սոցիալական ներազդման գործոնները, որոնք էապես սատարում են աշխատավորության կոմունիստական դաստիարակության գիտական կազմակերպմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Պահանջմունքների բովանդակությունը պայմանավորված է հասարակա-

կան պայմանների միագումարով՝ հասարակության զարգացման, արտադրաուժերի տվյալ մակարդակով, իշխող արտադրահարաբերություններով, գիտության, տեխնիկայի, կուլտուրայի վիճակով։ Լինելով մարդկանց հասարակական-արտադրական գործունեության արդյունք, պահանջմունքներն իրենց հերթին արտադրության զարգացման ազդակ են, մարդու էության որոշակի արտահայտություն։

Ակտիվ ներգործելով բնության վրա, մարդն իրեն շրջապատող բնական միջավայրը դիտում է որպես սեփական պահանջմունքները բավարարելու միջոց։ Բնությունը եղել և մնում է այն շտեմարանը, որտեղից մարդը հայթայթում է կենսամիջոցներ։ Փաստորեն աշխատանքի ծագումով, որի միտումը պահանջմունքների բավարարումն է, սկսվում է մարդկության պատմությունը։ «Մարդիկ...,— գրել է Մարքսը,— սկսել են նրանից, որ յուրացրել են արտաքին աշխարհի առարկաները, որպես իրենց սեփական պահանջմունքների բավարարման միջոց» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 19, стр. 378)։

Մարդկանց ողջ գործունեության հիմքն աշխատանքային արտադրագործունեությունն է։ Սակայն աշխատանքը, արտադրությունը, ինչպես նկատել է Մարքսը, ոչ թե ինքնանպատակ են, այլ կատարվում են հանուն պահանջմունքների բավարարման։ Արտադրության զարգացման պրոցեսում փոխվում են ինքը՝ մարդը, նրա պահանջմունքները, մշակվում են նոր առանձնահատկություններ, ինքնադրսևորման նոր եղանակներ։ Պահանջմունքների պատմական զարգացումը ազդում է ոչ միայն մարդու աշխատանքային ակտիվության ձևերի, այլև բնության նկատմամբ ունեցած նրա վերաբերմունքի, ինչպես նաև մարդկանց միջև ձևավորվող կապերի, հասարակական հարաբերությունների վրա։

Մարդկանց հասարակական հարաբերություններն իրենց հերթին ներգործում են պահանջմունքների ձևավորման վրա, հարուցում նոր պահանջմունքներ։ Այդ միջնորդավորված պրոցեսում, ինչ խոսք, պահանջմունքն առնչվում է նախապատճառի՝ նյութական արտադրության հետ։

Սակայն սոցիալական հարաբերությունների վերլուծությունը հնարավորություն է ընձեռում հասկանալու, թե ինչու մոտավորապես արտադրության զարգացման, նյութատեխնիկական բազայի նույն մակարդակի վրա կանգնած տարբեր սոցիալական գոյաձևի պատկանող մարդկանց մոտ ձևավորվում են տարբեր, անգամ հակադիր պահանջմունքներ։ Կյանքի, սոցիալական տարբեր հանրությունների գործունեության պայմանները (մասնավորապես դասակարգերի) հարուցում են պահանջմունքներ, որոնք համապատասխանում են տվյալ սոցիալական հանրության շահախնդրություններին ու իդեալներին։ Դրան են ծառայում հասարակության տնտեսական, քաղաքական, գաղափարական միջոցները, քաղաքական, կուլտուր-լուսավորչական և այլ հաստատությունների գործունեությունը։

Արտադրությունն ու սոցիալական միջավայրը կոնկրետ ժամանակի արգասիք են, կոնկրետ են նաև մարդկանց պահանջմունքները։ Ամեն մի հասարակություն, որոշակի սոցիալական միջավայր ծնում են յուրահատուկ պահանջմունքներ։ Վերջիններս իրենց հերթին առաջ են բերում տարատիպ վարվելաձևեր մարդկանց գործելակերպում ու վարքագծում։ Այսպես, արժեքի, հարստության բազմապատկման մոլուցք— պահանջմունքը, գերշահույթի ստացումը բնորոշ է բուրժուական դասակարգին։ Հանուն դրա կապիտալի աշխար-



հում ոտնահարվում են մարդկային վարքագծի բոլոր նորմերը։ Կապիտալիզմը, Մարքսի արտահայտությամբ, ծնում է բարբարոսական պահանջմունք ու բարբարոսական վարքագիծ, որոնք դրսևորվում են բուրժուական բարոյականության հիմնական սկզբունքում՝ «մարդը մարդուն գայլ է»։ Դրանց վերացման համար անհրաժեշտ է վերացնել շահագործումը, մասնավոր սեփականության իշխանությունը։ «Մասնավոր սեփականության վերացումը,— եզրակացրել է Մարքսը,— նշանակում է մարդկային բոլոր զգացումների ու հատկությունների լրիվ ազատագրում» (К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произв., стр. 592)։

Միայն սոցիալիստական, կոմունիստական հասարակարգում է մարդն ազատագրվում եսապաշտական պահանջմունքների շղթաներից, էգոիստական վարքագծից։ Անձնական բարեկեցության մասին նրա հոգածությունն այստեղ առավել սերտորեն է առնչվում հասարակականին, հետևապես անձնական պահանջմունքների բավարարումը՝ հասարակականին։ Անդասակարգ հասարակարգում անձնավորության հարստությունը չափվում է ոչ թե նրան պատկանող հարստության ծավալով, այլ անհատի ստեղծագործական ակտիվությամբ, հանրօգուտ աշխատանքներում նրա մասնակցությամբ։ Աշխատանքի վերածումը առաջնային կենսական պահանջմունքի, կոմունիզմի կառուցման անհրաժեշտ պայմանն է, որի հիմնական սկզբունքն է «յուրաքանչյուրն ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին— ըստ պահանջմունքի»։ Մարդկային ունակությունների զարգացումը, որպես անհատի ներքին պահանջմունք՝ կոմունիզմի հիմնական սկզբունքի պաթոսն է։ Արտադրելով իրենց նյութական պահանջմունքները բավարարող միջոցներ, մարդիկ միաժամանակ ստեղծում են հոգևոր արժեքներ։ «Առանց պահանջմունքի չկա արտադրություն» մարքսյան սահմանումը լիովին վերաբերում է մարդու էության կարևոր կողմին՝ հոգևոր արտադրությանը։ Արտացոլվելով մարդկային պահանջմունքներում, հոգևոր ատրիբուտները դրսևորվում են որպես անհրաժեշտություն, անձնավորության վարքագծի էական ազդակ։

Արտադրությունը, սոցիալական գոյավիճակը մարդու վարքագծի շարժառիթներն են, որոնք և բնորոշում են պահանջմունքների բովանդակությունը, վերջիններիս բավարարման կոնկրետ-պատմական ձևերն ու եղանակները։ Արտադրությունը, հարուցելով սպառողին պահանջմունքներ, դրանով իսկ դրդում է անձնավորությանն ստեղծելու նոր առարկաներ, պահանջմունքների բավարարման նոր միջոցներ։ Պահանջմունքներն իրենց բնույթով լինելով հասարակական, յուրովի են դրսևորվում անձնավորության վարքագծում։ Այստեղ կարևոր են մարդու անձնական կյանքի առանձնահատկությունները։ Վաղ տարիքում, ոչ ինքնուրույն զարգացման շրջանում, երեխան ուղղակիորեն է բավարարում իր պահանջմունքները, քանի որ սպառման միջոցները պատրաստի են տրվում ծնողների, շրջապատի կողմից։ Թևակոխելով ինքնուրույն կյանք, մարդը, ըստ էության, զրկվում է պահանջմունքներն անմիջականորեն բավարարելու հնարավորությունից, խզվում է ուղղակի կապը պահանջմունքների ու վարքագծի միջև։ Այստեղ ի հայտ են գալիս միջնորդավորված գործոններ՝ աշխատանքային գործունեություն, սոցիալական այլ կապեր, որոնց միջոցով միայն մարդը կարող է բավարարել իր պահանջմունքները։

Այսպես, բանվորի աշխատանքային պրոցեսը, օրինակ, հանքում կամ ձուլարանում, որպես կանոն անմիջականորեն չի բավարարում նրա պահանջ-

մունքները։ Այդ նպատակին անմիջապես չի ծառայում նաև արտադրանքի արդյունքը (ածուխ կամ պողպատ)։ Աշխատավարձը նույնպես անմիջապես չի բավարարում աշխատողի պահանջմունքները։ Սակայն դրամի միջոցով նա կարող է ձեռք բերել իր նյութական ու հոգևոր պահանջմունքները բավարարող առարկաներ։ Հետևաբար, աշխատողի գործողությունները միջնորդավորված են բազմաթիվ պրոցեսներով, սակայն ի վերջո դրանց հարուցիչը պահանջմունքներն են։

Սոցիալիստական հասարակարգում աշխատանքը բոլորի համար դեռևս չի դարձել սուբյեկտիվ անհրաժեշտություն, ներքին պահանջ։ Այսպես թե այնպես աշխատելու մղումը բխում է պահանջմունքներից, սակայն ոչ թե աշխատանքի հանդեպ պահանջմունքից։ Միայն կոմունիստական հասարակարգի բարձր փուլում աշխատանքը բոլորի համար կդառնա առաջին կենսական պահանջմունք։ Պահանջմունքներն իրենց սուբյեկտիվ արտահայտությունն են ստանում մարդու հոգեկանում՝ շահագրգռության, ցանկության, ձգտման, հակումների և այլ ձևերով։ Պահանջմունքների գիտակցման ձևերից յուրաքանչյուրը որոշակի պայմաններում վերածվում է մարդու վարքագծի շարժառիթի։ Վերջինս, իր հերթին, անձնավորության կողմից այս կամ այն գործողությունը կատարելու համար որոշում ընդունելու աղբյուր է։ Հետաքրքրական է այն փաստը, որ նույն հասարակական միջավայրում տարբեր մարդկանց պահանջմունքները միակերպ չեն։ Այստեղ տարբեր են կյանքի անմիջական պայմանները, կոնկրետ միկրոմիջավայրը, մասնագիտությունը, զբաղմունքի տեսակը, աշխատանքային կոլեկտիվը և այլն։ Բացի այդ, յուրաքանչյուր անձի պահանջմունքները որոշակի չափով պայմանավորվում են նաև նրա հակումներով, խառնվածքի ու մտավոր զարգացման առանձնահատկություններով, ժառանգական նախադրյալներով, ֆիզիկական ու հոգեկան հատկանիշներով։ Այդ բոլոր անհատական գծերը ժամանակի տվյալ հատվածում որոշ դեր են խաղում անձնավորության պահանջմունքների ձևավորման պրոցեսում։ Այսպիսով, ամեն մի առանձին մարդու պահանջմունքները բնորոշվում են հասարակական կեցությամբ՝ միկրոմիջավայրի, անձնավորության անհատական առանձնահատկությունների միջոցով։ Դրանում է դրսևորվում անձնավորության զարգացման ընդհանուր օրինաչափությունը։

Ուրեմն, մարդու վարքագծի գործոնների համակարգի բոլոր օղակները փոխադարձաբար կապված են միմյանց։ Միջավայրը ծնում է պահանջմունքներ, վերջիններս իրենց հերթին, անհատական գիտակցության ձևով՝ որոշակի շահագրգռություններ, ցանկություններ, ձգտումներ, հակումներ, նպատակներ և այլն։ Փոփոխված միջավայրը ծնում է նոր պահանջմունքներ, սրանք էլ՝ նոր գիտակցություն։ Համակարգի յուրաքանչյուր օղակ ազդում է ոչ միայն հաջորդ օղակի, այլև իրեն ծնող պատճառի վրա։

Այդ պատճառական շղթան դիալեկտիկական փոխակերպումների անընդհատ պրոցես է։

* * *

Պահանջմունքները զարգանում են արտադրության զարգացման, հասարակական հարաբերությունների կատարելագործման հետ։ Համապատասխանաբար առաջադիմում է նաև մարդը, հարստանում է նրա ներաշխարհը։ Որքան այլազան է մարդու պահանջմունքների բնույթը, որքան առավել չափով



են բավարարվում նրա նյութական ու հոգևոր պահանջմունքները, այնքան կատարյալ են յուրաքանչյուր մարդն ու տվյալ հասարակությունը։

Սոցիալիստական հասարակարգի նպատակն է մարդու անընդհատ աճող պահանջմունքների բավարարումը։ Այդ նպատակին հասնելու համար անհրաժեշտ է հար ընդլայնել ու կատարելագործել արտադրաբազան։ Միայն այդ եղանակով կարելի է կենսագործել կոմունիստական բաշխման վեհ սկզբունքները։ Հարկ է ընդգծել, որ բարձր բարոյական հատկանիշների դաստիարակումը, հավասարապես նաև անձնավորության համակողմանի զարգացումը ենթադրում են առողջ ու խելամիտ պահանջմունքների նպատակային ձևավորում։

Պահանջմունքների նպատակային զարգացումը բարդ ու երկարատև պրոցես է և ընդգրկում է մարդու ողջ կյանքը։ Մարդու անհատական զարգացման ընթացքում փոխվում են հասարակության մեջ նրա տեղը, նրա հակումները։

Խելամիտ ու առողջ պահանջմունքների ձևավորումն առնչվում է աշխատանքի նկատմամբ սեր ու հարգանք ներշնչելու հետ։ Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շնորհիվ մարդկային մյուս բոլոր պահանջմունքները ձեռք են բերում բարոյական խոր բովանդակություն, նպաստում անհատի ներդաշնակ զարգացմանը։ Աշխատանքի պրոցեսում մարդու մոտ ի հայտ են գալիս նոր ունակություններ ու պահանջմունքներ։ Որքան տվյալ աշխատանքը համապատասխանում է անձնավորության անհատական ունակություններին, հոգեկան կերտվածքին, այնքան արագ է աշխատանքը վերածվում պահանջմունքի։ Ուրեմն, մարդկային կարողությունների ուսումնասիրությունը, ըստ համապատասխան ունակությունների՝ անձնավորություններին աշխատանքային պրոցեսում ներգրավելը ունեն մեծ նշանակություն աշխատանքը կենսական պահանջմունքի վերածելու գործում։ «Կուսակցության կողմից տարվող գաղափարախոսական աշխատանքի մեջ,— ասում է Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— առաջին տեղերից մեկում է սովետական մարդկանց մեջ աշխատանքի նկատմամբ նոր, կոմունիստական վերաբերմունքի դաստիարակումը։ Սա մի վիթխարի խնդիր է։ Կյանքը ամենայն համոզչությամբ հաստատում է, թե որքան իրավացի էր Վլադիմիր Իլյիչ Լենինը, երբ ընդգծում էր, որ «Աշխատանքի նոր կարգապահություն հաստատել, մարդկանց միջև ստեղծել հասարակական կապի նոր ձևեր, մարդկանց աշխատանքի ներգրավելու նոր ձևեր ու պրիոմներ ստեղծել— դա շատ տարիների և տասնամյակների աշխատանք է։

Դա շատ շնորհակալ և շատ ազնիվ աշխատանք է» (Երկեր, հ. 30, էջ 662)։ Հիանալի խոսքեր են։ Եվ մենք պետք է դրանցից հետևություններ անենք» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 110)։

Սոցիալիզմի պայմաններում ևս աշխատանքը մնում է կյանքի գոյապայման, նյութական ու հոգևոր բարիքներ ձեռք բերելու միջոց։ Դրա համար ամեն մարդու հոգում աշխատելու պահանջմունքի պատվաստումը հնարավոր է իրականացնել միայն ճիշտ օգտագործելով անձնական նյութական շահագրգռության սկզբունքը, նյութական ու բարոյական խթանների խելացի զուգակցումը։ Քանի որ պահանջմունքները կարևոր գործոն են մարդկանց վարքագծում, կուսակցությունն ու կառավարությունը միջոցներ են ձեռնարկում կատարելագործելու նյութական խրախուսանքի ձևերը՝ մասնավորապես զարկ տալու անձնական նյութական շահագրգռությանը, որը մեծապես նպաստում է բարձրացնելու մարդկանց աշխատանքային ակտիվությունը, աշխատանքի արտադրողակա-

նությունը, ինչպես նաև զարգացնելու արտադրությունը։ Նյութական խթանման կատարելագործումը կնպաստի նաև մարդկանց տարբեր պահանջմունքների հետագա զարգացմանը։

Նյութական շահագրգռության սկզբունքը գործում է նաև կապիտալիստական հասարակության մեջ, սակայն դրա կիրառման սոցիալիստական պրակտիկան արմատապես տարբերվում է կապիտալիստական կիրառումից։ Կապիտալիստը բանվորին նյութապես խթանում է ստանալու հնարավոր առավել շահույթ, կատարելագործում է շահագործումը։

Սոցիալիստական երկրում նյութական խթանման սկզբունքը նպատակ ունի ակտիվացնելու աշխատավորության մասնակցությունը հասարակական արտադրության զարգացմանը, բարելավելու ժողովրդի կենսապայմանները, նրա մշտական աճող նյութական ու հոգևոր պահանջմունքները։

Սոցիալիզմի օրոք պահպանվում են ապրանքա-դրամային հարաբերությունները, այստեղ գործում են այնպիսի տնտեսական կատեգորիաներ, ինչպիսիք են գինը, շահույթը և այլն։ Սակայն փոխվել են այդ կատեգորիաների սոցիալական բնույթն ու նշանակությունը։ Կապիտալիզմի օրոք շահույթը մասնավոր սեփականատիրոջ պահանջմունքն է, սոցիալիզմի պայմաններում այն պատկանում է ժողովրդին, հասարակությանը։ Սոցիալիստական հասարակության մեջ շահույթի մի մասն օգտագործվում է, օրինակ, հասարակական ֆոնդերի ավելացման ուղղությամբ, որոնք նախատեսում են աշխատավորների պահանջմունքների ձրի բավարարում լուսավորության, առողջապահության, կուլտուրայի և ուրիշ բնագավառներում։ Կարևոր է և այն, որ արտադրաուժերի զարգացման հետ աստիճանաբար մեծանում է հասարակական սպառման ֆոնդերի ծավալը, փոփոխվում դրանց կառուցվածքը։

Պահանջմունքը մարդու աշխատանքային, ստեղծագործական դրսևորման հարուցիչն է, որի գործողությունը նպատակային է։ Սոցիալիստական հասարակության քաղաքացու դաստիարակությունը, այս առնչությամբ, կոչված է ներգործելու մարդկանց հոգևոր աշխարհի վրա, որպեսզի նրանց պահանջմունքները լինեն խելամիտ և ոչ ինքնանպատակ, մարդու տնօրինությանը տրամադրել համապատասխան նյութական բարիքներ, ինչպես և հոգևոր սննդի աղբյուրներ. դա է խելամիտ պահանջմունքների պատվաստման բնական պայմանը։ Այնուհանդերձ կարևոր է յուրաքանչյուր մարդու սովորեցնել ոչ միայն խելացի օգտագործել հասարակական արժեքները, այլև ստեղծել դրանք, այսինքն՝ ուժերի ներածին չափ մասնակցել հանրօգուտ աշխատանքներին։ «Պահանջմունքը,— գրել է Ա. Մակարենկոն,— մեզանում պարտքի, պարտականության, ընդունակությունների հարազատ քույրն է, այն ոչ թե հասարակական բարիքներ սպառողի շահախնդրությունների դրսևորում է, այլ՝ սոցիալիստական հասարակության գործչի, այդ բարիքներն ստեղծողի» (Соч., т. 4, стр. 39—40)։

Իհարկե, սոցիալիստական հասարակարգում ոչ բոլորն են սովորել իրենց պահանջմունքները չափել սեփական, հասարակության կողմից սահմանված պարտականությունների, հանրօգուտ գործունեության գործակցի հետ։ Անձնական պահանջմունքները սեփական աշխատանքի արդյունքի աստիճանով չափել չկարողանալը կամ չցանկանալը անբարոյականության, հաճախ հանցագործության պատճառներից են։

Մեր հասարակությանը խորթ են մարդկային այնպիսի արատներ, որոնք



էությամբ մանրբուրժուական և իրոք բուրժուական են։ Այստեղ նկատի ունենք ընչաքաղցությունը, ագահությունը, կաշառակերությունը, էգոիզմը, պորտաբուծության բոլոր դրսևորումները, անտարբերությունը հանրային հոգսի նկատմամբ։

Կուսակցության XXIV համագումարի, ինչպես նաև ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան շրջանում ընդունված որոշումներում ամենայն սրությամբ դրված է մեր ապրելակերպում հնացած հին աշխարհի նորմերի իսպառ վերացման խնդիրը։ Սովետական մարդու կոմունիստական բարոյականությունն ու աշխարհայացքը հաստատվում են անցյալի մնացուկների դեմ մղվող մշտական, անզիջում պայքարով։ Այս բնագավառում զգալի աշխատանքներ են տարվում հանրապետությունում՝ կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ ու նախաձեռնությամբ։

Առաջնահերթ խնդիր է անզիջում պայքար ծավալել ժողովրդական բարիքը հափշտակողների, նրանց դեմ, ովքեր իրենց պահանջմունքները չեն չափում հասարակական հարստության մեջ ներդրածի համեմատ, ձգտում են ապրել հանրային բարիքների հաշվին։ Բաշխման սոցիալիստական սկզբունքը բացառում է առանձին անձանց պահանջմունքների բավարարումը ուրիշների հաշվին, իսկ հասարակության յուրաքանչյուր անդամի հանրօգուտ գործունեությունը, նրա աշխատանքի քանակն ու որակը ենթադրում են նրա պահանջմունքների բավարարման չափը։ Ով ուժերի ներածին չափ աշխատանքային ներդրում չունի հասարակական հարստության ավելացման գործում, զուրկ է հասարակությանը պահանջներ հարուցելու իրավունքից։

Սոցիալիստական էկոնոմիկայի, հասարակական հարաբերությունների վերափոխման պրոցեսում, սոցիալական պայմանների որոշակի ներազդմամբ իրականացվում է ամորալիզմի ու հանցագործության հաղթահարումը։ Վերջինս ենթադրում է աշխատանքի ու սպառման չափերի վերահսկման համակարգի մշտական կատարելագործում։ Նման մթնոլորտում գործալիքները, անբանները, վայելքի սիրահարները պետք է գամվեն անարգանքի սյունին։

Միաժամանակ հակահասարակական երևույթների դեմ պայքարը ենթադրում է հետևողական դաստիարակչական աշխատանքի կազմակերպում, առողջ ու խելամիտ պահանջմունքների, կոմունիզմ կառուցողի բարոյական նորմերի պրոպագանդում։

Մարդկային վսեմ ձգտումների պրոպագանդումը կոմունիստական կուսակցության, սոցիալիստական պետության, ընտանիքի, դպրոցի, աշխատանքային կոլեկտիվի, սովետական ողջ հասարակության առաջնահերթ խնդիրն է։

Սակայն չպետք է մոռանալ, որ նոր մարդու զգացմունքներն ու ձգտումները մշակվում են ընտանիքում, վաղ մանկական տարիքում։ Մինչդեռ շատ ծնողներ այդ կարևոր հարցին պատշաճ նշանակություն չեն տալիս։ Ծնողներ էլ կան, ովքեր հաճախ իրենց զրկում են անհրաժեշտ կարիքների բավարարումից, միայն թե գոհացնեն երեխաների քմահաճույքը, նրանց չեն սովորեցնում, որ ընտանեկան բյուջեի հնարավորությունները անսահման չեն, անհրաժեշտ է հարգել ընտանիքի մյուս անդամների պահանջմունքները։ Երբ անտեսվում են նման պարագաները, մեծանալով՝ երեխան դառնում է անբան, պորտաբույծ, քաղքենի, ընչաքաղց։

Ընտանիքը, դպրոցի, արտադրական կոլեկտիվի, հասարակայնության հետ սերտ համագործակցելով, կոչված է ապագա քաղաքացիների մեջ պատվաստել

պահանջ՝ աշխատանքի, գիտելիքի նկատմամբ, դաստիարակել նրանց կոլեկտիվիզմի, բարոյական բարձր հատկանիշների ոգով։ Հանրահայտ է, որ գիտելիքները ազնվացնում են մարդուն, բարձրացնում նրա կուլտուրան, դաստիարակում են սեր բնության, մարդկանց, ժողովուրդների նկատմամբ։ Անձնավորության բարոյական հասունացման պրոցեսում մեծ է գեղագիտական պահանջմունքների դերը։ Գեղեցիկ զգացումը խոր է ու կայուն և դրսևորվում է մարդու վարքագծում, նրա զանազան փոխհարաբերություններում ու կապերում։

Խելամիտ ապրելակերպի ձևավորման համար բարոյական մեծ նշանակություն ունեն կոմունիստական շինարարության ընթացքում մշտապես զարգացող պահանջմունքների բավարարման հասարակական ձևերը։ Իրենց էությամբ լինելով կոլեկտիվիստական, պահանջմունքների բավարարման այդ ձևերը նպաստում են մարդու հոգևոր աշխարհի կատարելագործմանը, հասարակության կոմունիստական մեծ առաջընթացին։

Պահանջմունքների բավարարման հասարակական ձևերի համակարգում կարևոր դեր ունի սպասարկման ոլորտը։ Այն կուլտուրայի ու ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի ամբողջական միագումար է, որի անընդհատ զարգացումը պայմանավորվում է հասարակության մեջ հասարակական ֆոնդերի ծավալի աճով։ Այդ ճյուղերից մի խումբը (առևտուր, հասարակական սնունդ, բնակարանային-կոմունալ տնտեսություն, հասարակական սպասարկում) հիմնականում ապահովում է անհատի նյութական պահանջմունքները։ Երկրորդ խումբը (լուսավորություն, կուլտուրա, արվեստ և այլն) առավելապես մասնագիտացված է հոգևոր պահանջմունքների ուղղությամբ։ Վերջինիս դաստիարակչական նշանակությունը ակնհայտ է, ուստի տվյալ հոդվածում մեկնաբանման կարոտ չէ։ Ինչ վերաբերում է առաջին խմբին պատկանող հիմնարկներին, ապա դրանց գործունեության դերը մարդու ձևավորման պրոցեսում դեռևս պատշաճ ուսումնասիրության չի ենթարկվել, մինչդեռ կենցաղում սպասարկման բարձր կուլտուրան, էսթետիկական գրավչությունը, կազմակերպվածությունը, ուշադրությունը, սպասարկող անձնակազմի քաղաքավարի վերաբերմունքը, բնակչության պահանջների ժամանակին ու որակով բավարարումը և այլ ծառայություններ բարերար են ազդում մարդկանց դաստիարակության վրա։ Սպասարկման ոլորտի ճշտորոշ գործունեությունը դրական է ազդում բնակչության ճաշակի ու սովորույթների, կուլտուրայի վրա, նպաստում կենցաղի ռացիոնալ կազմակերպմանը, հնարավորություն ընձեռում մարդկանց պահպանելու առողջությունը, լավ տրամադրությունը, մարդը ժամանակ է շահում բավարարելու հոգևոր պահանջմունքները, զբաղվելու երեխաներով։

Առողջ կենցաղի կազմակերպումը ենթադրում է պայքար վնասակար պահանջմունքների ու սովորույթների դեմ։ Վերցնենք, օրինակ, հարբեցողությունը, որը սոցիալական մեծ չարիք է, պատճառ բազմաթիվ այլանդակ, հակահասարակական երևույթների։ Այն թունավորում է մարդկանց կյանքն ու կենցաղը, քայքայում է ընտանիքը, մղում ծանր հանցագործությունների։ Ահա թե ինչու պայքարը հարբեցողության դեմ համաժողովրդական գործ է և պահանջում է համառ ու երկարատև աշխատանք, մասնավորապես, երիտասարդների շրջանում։ Սխալ է կարծել, թե անառողջ երևույթներն ինքնաբերաբար կվերանան, կամ ելքը տեսնել միայն հարկադրական, պատժիչ միջոցների մեջ։

Խելացի ու առողջ պահանջմունքների դրսևորման գործում կարևոր նշանակություն ունի հասարակական աշխատանքում նյութական շահագրգռության լենինյան սկզբունքի անշեղ կիրառումը, նյութական ու բարոյական խթանների մտածված օգտագործումը։

Կոմունիստական ապրելակերպը հիմնվում է գիտական սկզբունքների վրա, և հին աշխարհի ապրելաձևից ժառանգելու առանձնապես շատ բան չկա։ Մի առիթով Վ. Ի. Լենինը նկատել է, որ կոմունիզմը իր հետ բերում է ոչ թե ասկետիզմ, այլ կենսախնդություն ու առույգություն։ Պրոլետարիատը վեր ելնող դասակարգ է։ Նա արբենալու կարիք չունի, որը նրան շշմեցնի կամ գրգռի։ Նրան պետք չէ ո՛չ արբեցումը սեռական սանձարձակումից, ո՛չ էլ ալկոհոլից հարբելը։ Նա չի փորձում ու չի ցանկանում մոռանալ կապիտալիզմի նողկանքը, կեղտն ու բարբարոսությունը։ Նրան պայքարի է մղում իր դասակարգի վիճակը, կոմունիստական իդեալը (տե՛ս «О Ленине». Воспоминания зарубежных современников, М., *1962*, стр. *61—62*)։

Կուսակցության XXIV համագումարի նյութերում, մասնավորապես պատգամավորների ելույթներում, նշվեց, որ մեր խնդիրն է՝ անառողջ պահանջմունքներին հակադրել մարդկային խելամիտ պահանջմունքներ։ Գաղտնիք չէ, որ մարդկանց, հատկապես երիտասարդության ազատ ժամանակի կազմակերպման գործում մեզանում դեռևս կան շատ թերություններ։ Դեռ ամեն ինչ չի արված ստեղծելու համապատասխան պայմաններ։ Հաճախ անբավարար են օգտագործվում արդեն առկա հնարավորությունները, մասնավորապես, կուլտուրայի հաստատությունները, սպորտային կառույցները։ Այդ հաստատությունների աշխատանքներում առանձին դեպքերում առևտրական շահը վեր է դաստիարակչական խնդիրներից։

Երիտասարդության հոգևոր բարձր պահանջմունքների պատվաստումը, ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործումը՝ մեր ողջ հասարակության անմիջական հոգսն են։

Կոմունիստական հասարակությունը, որը հաջողությամբ է կառուցվում մեր երկրում, կապահովի մարդու պահանջմունքների ու վարքագծի կատարյալ ներդաշնակություն։ Իսկական մարդկային պահանջմունքները կդառնան բոլորի և յուրաքանչյուրի սեփականությունը։ Կ. Մարքսը գրել է, որ կոմունիզմի օրոք «...կազմավորվում են հարուստ մարդը և մարդկային հարուստ պահանջմունքը։ Հարուստ մարդը— դա միաժամանակ մարդ է, որը կարիք ունի կյանքի մարդկային ամբողջական դրսևորումների, մարդ, որի մեջ սեփական իրականացումը հանդես է գալիս որպես ներքին անհրաժեշտություն, որպես կարիք (К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, стр. *596*)։

Կոմունիզմը անհամատեղելի է ասկետիզմի, մարդկանց կենսական շահախնդրությունների, պահանջմունքների համահարթման հետ։ Այն հաստատում է ոչ թե պահանջմունքների, այլ նրանց բավարարման հնարավորությունների ու պայմանների հավասարություն։

Մարդու իսկական վեհությունը և գեղեցկությունը արտահայտվում են նրա անասելի հարուստ ունակություններում ու պահանջմունքներում ու դրանցից բխող նրա վարքագծի կատարելության մեջ։

# ԱՐԴԻ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՀԱՎԱՍԱՐՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ

Հ. Մ. ՀԱԿՈԲՅԱՆ

*Ինչպես հայտնի է, բուրժուական հասարակարգը պատմության թատերաբեմ իջավ «Ազատություն, հավասարություն, եղբայրություն» հրապուրիչ կոչերով։ Իր վերելքի ճանապարհին փշրելով ֆեոդալից աշխատավորի գամվածության շղթաները, կապիտալիզմը անհատին դրեց «...շուկայի վերաբերմամբ ինքնուրույն հարաբերությունների մեջ, դարձնելով նրան ապրանքատեր (և որպես այսպիսին՝ նրան հավասար դարձնելով ամեն մի այլ ապրանքատիրոջ), և ստեղծեց անհատի զգացմունքի բարձրացում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 1, էջ 527)։ Հավասարության այդ զգացմունքն իր վառ արտահայտությունը գտավ բարձրացող բուրժուազիայի գաղափարախոսների գործերում։ Նրանք գտնում էին, որ բոլոր մարդիկ բնությունից հավասար են։ Բայց նրանց քարոզած հավասարությունը մտքի խաբկանք էր միայն, որովհետև այն ենթադրում էր իրավական հավասարություն՝ գոյության բոլոր միջոցներից զուրկ, իր աշխատուժը վաճառքի հանած բանվորի ու կապիտալիստի միջև։ Թեպետ այնքան ժամանակ, քանի դեռ բուրժուական հասարակության հորիզոնի վրա չէին հայտնվել ամենակուլ մոնոպոլիստական տրեստներն ու կոնցեռնները, շատ-շատերը կարող էին որոշ պատրանք տածել «ազատ շուկայի» վերաբերյալ, ուր թվում է, ամեն ոք հավասար է։ Սակայն կապիտալիզմի զարգացումը հօդս ցնդեցրեց այդ պատրանքը, ցույց տվեց, որ չկա և չի կարող լինել հավասարություն այնտեղ, որտեղ իշխում է արտադրամիջոցների ու գործիքների մասնավոր սեփականությունը։*

*Ո՞րն է հավասարության պրոլետարական պահանջի էությունը, «Հավասարության պահանջը,— գրում է Ֆ. Էնգելսը,— կրկնակի նշանակություն է ստանում պրոլետարիատի բերանում։ Կամ այդ պահանջը բնականորեն աճած մի ռեակցիա է աղաղակող սոցիալական անհավասարությունների դեմ, այն կոնտրաստի դեմ, որ գոյություն ունի ունևորների ու չքավորների միջև, գեխ կյանք վարողների ու սովյալների միջև... կամ թե հավասարության պրոլետարական պահանջը ծագել է հավասարության բուրժուական պահանջի դեմ ուղղված ռեակցիայից, որից էլ նա հետևեցնում է շատ թե քիչ ուղիղ պահանջներ, որոնք շատ ավելի հեռու են տարածվում... երկու դեպքում էլ հավասարության պրոլետարական պահանջի իրական բովանդակությունը դասակարգերը վերացնելու պահանջն է։ Հավասարության ամեն մի պահանջ, որը հիշյալ սահմաններից անցնում է, անհրաժեշտորեն անհեթեթությունների է հանգում» (Ֆ. Էնգելս, «Անտի-Դյուրինգ», Երևան, 1936, էջ 142)։*



*Հավասարության պրոլետարական ըմբռնման հիմքում հեղափոխական ճանապարհով կապիտալիզմը սոցիալիզմով փոխարինելու պահանջն է, որը մահու և կենաց գոտեմարտ է ենթադրում բուրժուական հասարակության հակամարտ դասակարգերի միջև։ Կապիտալիզմի առավել մոլի պաշտպանները առաջարկում են մերժել ձևական հավասարության այն սկզբունքները, որ հռչակել էր բուրժուազիան դեռևս իր գոյության արշալույսին, սրով ու արյունով կասեցնել սոցիալական անհավասարությանն ընդդիմադիր ամեն մի շարժում։ Սակայն այսօր սոցիալիստական աշխարհի նվաճումները, ազգային- ազատագրական շարժումների և հենց կապիտալիստական երկրների ներսում դասակարգային պայքարի մեծ թափը, կապիտալիզմի գաղափարական սպասարկուներին ստիպում են դիմելու սոցիալական խուսանավման։ Ինչի՞ց են խուսանավում և սոցիալական հավասարության ինչպիսի՞ մոդելներ են առաջարկում բուրժուական գաղափարախոսները։*

## ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՆՀԱՎԱՍԱՐՈՒԹՅԱՆ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՀԻՄՔԸ

*Արդի գիտատեխնիկական հեղափոխությունը խոր և համակողմանի է ազդում կապիտալիստական հասարակության կենսագործունեության բոլոր կողմերի վրա։ Էական տեղաշարժեր է հարուցում նրա տնտեսության, սոցիալ-դասակարգային կառուցվածքում, դասակարգային պայքարի ձևերում ու մեթոդներում։ Առերևույթ սքողելով գիտատեխնիկական հեղափոխության անցանկալի հետևանքները, կապիտալիզմի գովերգուները փորձում են ապացուցել, թե իբր կապիտալիզմը վերածնվել, նոր կյանքով է ապրում, որը և նրա գոյատևման առհավատչյան է։ Իսկ ամեն գույնի ու երանգի ռևիզիոնիստները, հասարակական զարգացման օբյեկտիվ տրամաբանությանը հակառակ, պնդում են, թե այդ նոր տեղաշարժերի շնորհիվ կապիտալիզմն ավտոմատիկորեն վերաճում է սոցիալիզմի։*

*Ի՞նչ հիմք ունի կապիտալիզմի գաղափարական սպասարկուների այս խաղը։ Եթե գիտատեխնիկական հեղափոխությունը դիտելու լինենք զուտ տեխնիկական կամ տեխնոլոգիական տեսանկյունից, ապա դժվար չէ նկատել, որ այն ունի մի շարք ընդհանուր գծեր։ Արտադրաուժերի զարգացման բուն տրամաբանությունը՝ անցումը ձեռքի աշխատանքից մեքենայականի, այնուհետև մեքենաների համակարգի, մասնակի ավտոմատացումից՝ կոմպլեքսայինի ու ավելի լիակատար ավտոմատացման, բնորոշ է ամեն մի զարգացած ինդուստրիալ երկրի համար։ Նման երկրներում հատկապես բուռն ու բազմակողմանի է գիտության փոխակերպումը արտադրաուժի։ Մարդուն օգնության են գալիս ավտոմատիկան, ռադիոիզոտոպային ու լազերային տեխնիկան։ Ստեղծվում են մարդու կարողությունները մի քանի հազար անգամ գերազանցող սարքեր, մշակվում են քիմիական, բիոլոգիական, էլեկտրոլիտիկ և տեխնոլոգիական այնպիսի պրոցեսներ, որոնք հնարավորություն են տալիս բազմապատկելու հասարակական հարստությունը և վերացնելու սոցիալ-տնտեսական անհավասարության այն վիհը, որի մի ափին կապիտալն է, իսկ մյուսում՝ աշխատանքը։*

Այսօր արդեն ակնհայտ է գիտատեխնիկական հեղափոխության դերը հասարակության սոցիալական առաջընթացի գործում։ Քիչ կարևոր չէ նաև այն հանգամանքը, թե ո՞ւմ սեփականությունն են արտադրամիջոցներն ու գործիքները, հասարակական ինչպիսի դասակարգերի շահերին են ծառայում գիտությունն ու տեխնիկան և, վերջապես, սոցիալական ինչպիսի արդյունքների է հանգեցնում գիտատեխնիկական հեղափոխությունը սոցիալիստական և կապիտալիստական հակադիր սիստեմների պայմաններում։ Բուրժուական գաղափարախոսները խուսափում են այս հարցերին գիտականորեն հիմնավորված, ճշմարիտ պատասխաններ տալուց։

Նրանց համար գաղտնիք չէ, որ կապիտալիստական հասարակության ամենասուր հակասությունները, այդ թվում նաև սոցիալական անհավասարության պրոբլեմը կարելի կլիներ մեկընդմիշտ լուծված համարել, եթե հաջողվեր որևէ կերպ ժխտել պրոլետարիատի գոյությունը, և կամ պրոլետարիատին պատկերել ոչ այն տեսքով ու ձգտումներով, ինչպես կա ու ներկայացնում է մարքսիզմը։ Եվ ահա, կառչելով գիտատեխնիկական հեղափոխության հետևանքով ինքնագործ բնակչության հաշվեկշռում արդյունաբերական պրոլետարիատի թվի հարաբերական կրճատման և ֆիզիկական աշխատանքի բնույթի մեջ նկատվող փոփոխության փաստերից, ինչպես կապիտալի գործարար շրջանների ներկայացուցիչները, այնպես էլ նրանց գաղափարական սպասարկուները շտապում են հանգել իրենց ձեռնտու հետևությունների։ Այսպես, Ֆեդերատիվ Գերմանիայի «Սիմենս» էլեկտրատեխնիկական կոնցեռնի տնօրեն, դոկտոր Էռնեստ ֆոն Սիմենսը նկատի առնելով, որ անցյալ դարի ութսունական թվականներին կոնցեռնում բանվորների ու ծառայողների հարաբերակցությունը արտահայտվում էր տասին մեկ թվով, իսկ 1971 թվականին այն կազմում է երկուսին մեկ, առաջարկում է «...գործածությունից դուրս նետել «բանվոր» և «ծառայող» հասկացությունների տարբերությունը։ Քանի որ դրանք, նրա կարծիքով, արտահայտում են աստիճանների ու գոյավիճակների հարաբերությունների մասին արդեն հաղթահարված, հնացած պատկերացումները»։ Արտաքնապես, կապիտալիստ Սիմենսի եզրահանգումը կարծես թե զուրկ չէ հիմքից։ Ֆեդերատիվ Գերմանիայի պաշտոնական վիճակագրությունը վկայում է, որ եթե 1950 թվականին բանվորները կազմում էին ինքնագործ բնակչության ավելի քան 70 տոկոսը, ապա 1971 թվականին այն իջավ 56 տոկոսի։ Այդ նույն ժամանակամիջոցում ծառայողների բաժինը 23,4-ից հասավ 35,1 տոկոսի։ Հենվելով նման, ընդհանուր առմամբ, անվիճելի փաստերի վրա, բուրժուական գաղափարախոսները տարածում են բանվոր դասակարգի «վերասերման» կամ ավելի ստույգ աստիճանական «վերացման» մասին առասպելը։ Իսկ, օրինակ, Հերբերտ Մարկուզեն առանց այլևայլի պնդում է՝ «արդյունաբերական զարգացած երկրներում մարքսյան պրոլետարիատը այլևս գոյություն չունի։ Եվ այն դերը, որ Մարքսը վերագրում էր բանվոր դասակարգին, չի կարող կատարել այդ երկրների բանվոր դասակարգը»։

Ինչպես տեսնում ենք, զառամած կապիտալիզմը գոյատևման նոր հայտագիր է ներկայացնում։ Չկա պրոլետարիատ, նշանակում է չկա և անհավասարություն։ Հետևաբար, հեղափոխական ուղիով հասարակության սոցիալական նորացման մարքսյան տեսությունը «սպառել է» իրեն։ Բայց մի բան է հայտագիրը, և մի այլ բան է իրականությունը։ Նույնիսկ մեր հարյուրամյակի վեր-



ջում ինքնագործ բնակչության հաշվեկշռում բանվոր դասակարգի բաժնի ենթադրվող զգալի նվազումը բոլորովին էլ չի նշանակում դասակարգի անհետացում, քանի որ տարբեր դասակարգերի ու խավերի դերը տնտեսական, հասարակական և քաղաքական կյանքում ուղիղ համեմատական չէ նրանց տեսակարար կշռին կամ քանակական կազմին։ Լենինը նկատում է, որ պատմական շարժման մեջ բանվոր դասակարգի ուժն անհամեմատ ավելի մեծ է, քան նրա բաժինը բնակչության ընդհանուր զանգվածում։ Այդ ուժը նա բացատրում է ոչ միայն քանակով, այլ երկրի տնտեսության մեջ նրա կատարած դերով, աշխատավորական մասսաների հետ նրա կապերով, կազմակերպվածությամբ, և այն բանով, որ բանվոր դասակարգը տնտեսապես ու քաղաքականապես արտահայտում է աշխատավորների հսկայական մեծամասնության իրական շահերը։

Գիտատեխնիկական հեղափոխությունն իր կնիքն է դնում նաև բանվոր դասակարգի որակական կազմի վրա։ Նվազում է ֆիզիկական աշխատանքի տեսակարար կշիռը և միաժամանակ ավելանում են արդյունաբերական բանվորների նյարդային և մտավոր էներգիայի ծախսումները, ավելի արագ են աճում բանվոր դասակարգի այն խմբերը, որոնց համար բնորոշ է դառնում ֆիզիկական և մտավոր աշխատանքի զուգակցումը։ Սակայն, հակառակ բուրժուական գաղափարախոսների ցանկության, աշխատանքի բնույթի փոփոխությունն ինքնաբերաբար չի կարող փոխել մարդու դասակարգային պատկանելությունը։ Դրա վճռական հատկանիշը ոչ թե արտադրության մեջ ֆիզիկական կամ մտավոր էներգիայի ծախսումն է, այլ հասարակական հարաբերությունների որոշակի սիստեմում մարդկանց այս կամ այն խմբի գրաված տեղը։

Աշխատանքի բնույթի փոփոխությունը օբյեկտիվ.նախադրյալներ է ստեղծում արդյունաբերական պրոլետարիատի հետ աշխատավորական տարբեր խավերի, այդ թվում գիտատեխնիկական ինտելիգենցիայի, մերձեցման համար։ Այս մերձեցումն է, որ բուրժուական գաղափարախոսները ներկայացնում են, այսպես կոչված, «միջին դասակարգի» մեջ բանվոր դասակարգի «տարրալուծման» վկայություն, թեպետ առկա է ոչ թե «տարրալուծման» այլ մտավոր աշխատանքի մարդկանց պրոլետարականացման պրոցեսը։ Այնքան ժամանակ, քանի դեռ մտավոր աշխատանքը որպես անարտադրողական ոլորտ կարող էր առաջանալ ֆիզիկական աշխատանքից անջատ ու նրա հաշվին, պատմականորեն արդարացվում էր մտավոր ու ֆիզիկական աշխատանքի բաժանումը, բնականաբար, ի հակադրություն ֆիզիկական աշխատանքի, մտավոր զբաղմունքը ունևոր, տիրապետող դասակարգերի մենաշնորհն էր։ Արդի կապիտալիզմի պայմաններում այդ հակադրությունը վերածվել է անախրոնիզմի այն պարզ պատճառով, որ գիտատեխնիկական հեղափոխությունն առանց որակյալ բանվորական ուժի և ինժեներատեխնիկական, գիտական աշխատողների հսկայական զանգվածի անհնար է դարձրել արտադրության զարգացումը, հետևաբար և կապիտալիստական շահույթների աճը։

Սա տիրապետող դասակարգերին ստիպում է ուսուցման սիստեմի ընդլայնման, մասամբ էլ կրթությունը մատչելի դարձնելու միջոցով մտավոր գործունեության ոլորտը ներգրավել աշխատավորական լայն խավերին, որի հետևանքով էլ նախկինում միատարր համարված մտավոր գործունեության ոլորտն են ներխուժում սեփականազուրկ խավերը, որոնց գոյության միակ միջոցը վարձու աշխատանքն է։ Շատ ինժեներատեխնիկական աշխատողներ, արտա-

դրության ավտոմատացման հետևանքով, կորցրել են նաև հրամանատարական
այն ֆունկցիաները, որոնք ոչ հեռավոր անցյալում նրանց մերձեցնում էր
գործատերերի հետ։ Իրականությունն այն է, որ ինտելիգենցիան ավելի ու
ավելի է վերաճում մտավոր աշխատանքի պրոլետարիատի։ Ամերիկյան սոցիո-
լոգների հաշվարկներով ԱՄՆ-ի ինտելիգենցիայի երկու երրորդը այսօր արդեն
ուղղակիորեն համալրում է բանվորների շարքերը։ Իսկ բուրժուազիայից սերած
կամ հանգամանքների բերումով կապիտալիստական վերնախավում հայտնված
մտավորականությունը, ինչպես նախկինում, այնպես էլ այսօր, եղել ու մնում
է շահագործողական կարգերի հենարանը։ Ընդ որում, կապիտալի կենտրո-
նացմանը և կառավարման պրոցեսների ավտոմատացմանը զուգընթաց, ավելի
ու ավելի փոքրաթիվ է դառնում կապիտալիստական տնտեսության կառավար-
ման ղեկի մոտ կանգնած գործատերերի և բարձրաստիճան ծառայողների թիվը։

Գիտատեխնիկական հեղափոխությունն աննախընթաց չափերով բարձրաց-
նում է սպասարկման դերն ու նշանակությունը կապիտալի վերարտադրության
պրոցեսում, որի հետևանքով էլ կապիտալիստական հարաբերությունները
տիրապետող են դառնում նաև այս ոլորտում։ Եթե մի քանի տասնամյակ
առաջ այստեղ գերակշռում էին բանվոր դասակարգի համեմատ արտոնյալ վի-
ճակում գտնվող անկախ սեփականատերերը, ապա այժմ զարգացած կապիտա-
լիստական երկրների մեծ մասում սպասարկմամբ զբաղվողների չորս հինգե-
րորդը վարձու աշխատողներ են։ Հետևաբար, անկախ այն բանից՝ ստեղծում
են նրանք հավելյալ արժեք թե ոչ, ենթարկվում են այն նույն օրինաչափու-
թյունների ներգործությանը, ինչ-որ բանվոր դասակարգը։

Միջին խավերի, այդ թվում նաև մտավորականության պրոլետարականա-
ցումը չի վրիպում նաև բուրժուական մի շարք մտածողների տեսադաշտից։
Արևմտագերմանական գրող Թեոդոր Վայնբորնը ավստրիական «Ֆոլկշտիմե»
թերթին տված հարցազրույցում հստակ նշում է, որ կապիտալիստական հա-
սարակության մեջ «...մտավոր աշխատանքի մարդիկ ենթակա են արտադրա-
կան նույնպիսի հարկադրանքի, ինչպես և մյուսները, որոնք ապրում են աշխա-
տավարձով...։ Ինչպես և մյուս բոլոր քաղաքացիները, որոնք չեն լուծում տըն-
տեսության պրոբլեմներ և չեն հանդիսանում արտադրամիջոցների փայատե-
րեր»։ Դիմելով բուրժուական այն գաղափարախոսներին, որոնք պատճառներ
են որոնում բանվորներին ու մտավորականությանը հակադրելու համար, Թեո-
դոր Վայնբորնը շարունակում է. «Եկեք չստեղծենք կարծեցյալ սահմաններ
բանվորական ուժի և մտավորականության միջև։ Հակառակ դեպքում մենք
ջուր կլցնենք նրանց ջրաղացին, ովքեր ձգտում են բոլոր միջոցներով արգե-
լակել համերաշխությունը բնակչության այդ երկու կատեգորիաների միջև»։

Սոցիալական անհավասարության ողբերգական պատկեր է ներկայացնում
ոչ միայն կապիտալիստական քաղաքը, այլև գյուղը։ Գյուղական հասարակու-
թյան վերին աստիճանին կանգնած են կորպորատիվ և խոշոր ֆերմաների
փոքրաթիվ տերերը։ Նրանց համար գիտատեխնիկական հեղափոխությունը
նշանակում է ուռճացում, մթերքների արտադրության ու եկամուտների հսկա-
յական աճ, իսկ ստորին աստիճանի վրա կանգնած միլիոնավոր ֆերմերների
համար՝ սեփականազրկում ու աղքատացում։ Պաշտոնական վիճակագրության
տվյալներով 1970 թ. 1961 թ. համեմատ գյուղական տնտեսությունների թիվը
Իտալիայում կրճատվել է մոտ 700 հազարով։ Ֆրանսիայում 1959 թ. հետո ան-
ցած 15 տարում գյուղատնտեսության մեջ զբաղված բնակչության թիվը նվա-



զել է 2 մլն-ով։ Ֆեդերատիվ Գերմանիայում վերջին քսանամյակում ամեն տարի
անհետանում է մոտ 33 հազար ֆերմա։ Ինչո՞ւ։ Ժամանակակից տեխնիկայով
տնտեսությունը զինելը մահու և կենաց խնդիր է միլիոնավոր մանր ու միջին
ֆերմերների համար։ Իսկ այդ պայքարում բուրժուական պետությունը զորա-
վիգ է կանգնում միայն ուժեղներին։

Կապիտալիստական զարգացած երկրներում գիտատեխնիկական հեղափո-
խությունն աստիճանաբար հանգեցնում է գյուղատնտեսական մի շարք ճյուղե-
րի, մասնավորապես թռչնաբուծության, կաթնապրանքային անասնապահու-
թյան ավտոմատացման։ Եվ քանի որ այն պահանջում է կապիտալ մեծ ներ-
դրումներ, գյուղատնտեսության մեջ մուտք են գործում արդյունաբերական
մոնոպոլիաները։ Նրանք խոշոր ֆերմերներին տրամադրում են արտադրության
հիմնական միջոցներ և վերահսկում են արտադրանքի վերամշակումն ու
իրացումը։ Արդյունաբերական մոնոպոլիաների ներթափանցումը գյուղատնտե-
սության մեջ է՛լ ավելի է արագացնում հարստության բևեռացումը և միլիոնա-
վոր գյուղացիների ունեզրկումը։ Ինչպես արդյունաբերության, այնպես էլ
գյուղատնտեսության մեջ աճում է ագրարային պրոլետարիատի թիվը։ Զրկ-
վելով տնից ու հողից, գյուղացիական հոծ զանգվածները բռնում են քաղաքի
ճանապարհը, գնում են համալրելու պրոլետարիատի շարքերը։

Այսպիսով, գիտատեխնիկական հեղափոխության ազդեցությամբ, ամբող-
ջովին փոխվում է կապիտալիստական երկրների սոցիալական կառուցվածքը,
բայց ոչ բուրժուական գաղափարախոսների ցանկացած ձևով և ուղղությամբ։
Խիստ աճում է վարձու աշխատողների բանակը։ Եթե 50-ական թվականների
շեմին նրանց թիվը կապիտալիստական աշխարհում չէր գերազանցում 160
մլն-ից, ապա 10 տարի հետո այն հասավ 200-ի, իսկ 1969 թ. կազմեց 235 մլն,
որի միջուկն է 100 միլիոնանոց արդյունաբերական պրոլետարիատը։ Այլ
կերպ ասած, ընդլայնվում է անհավասարության սոցիալ-դասակարգային բա-
զան, աճում և կապիտալիստական հասարակության համար սպառնալի չափեր
են ընդունում այն ուժերը, որոնք կենսականորեն շահագրգռված են սոցիալա-
կան հավասարության հաստատման հեռանկարով։

## ՀԱՄԸՆԴՀԱՆՈՒՐ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ՔՈՂԻ ՆԵՐՔՈ

Սոցիալական անհավասարությունն ամենից ավելի ցայտուն դրսևորվում
է ազգային եկամտի կապիտալիստական բաշխման ասպարեզում։ Իրականու-
թյունից խույս տալու նպատակով, վերջին տարիների բուրժուական սոցիոլո-
գիական գրականությունը տարածում է այն տեսակետը, թե իբր սոցիալական
հավասարությունը հնարավորությունների հավասարությունն է, անկախ մարդ-
կանց սոցիալական դիրքից։ 1968 թ. ԱՄՆ-ում հրապարակված «Մարդկային
հավասարության ասպեկտները» գրքում սոցիալական հավասարության էու-
թյունը հանգեցվում է ոչ թե դասակարգերի, այլ անձի և նրա ընտանիքի նյու-
թական պահանջմունքների բավարարման պրոբլեմին։ Եվ ահա կառչելով կա-
պիտալիստական զարգացած երկրներում եկամուտների և սպառման որոշ
աճից, սպառման կառուցվածքի փոփոխություններից և նման այլ կարգի
երևույթներից, բուրժուական գաղափարախոսները ջանք չեն խնայում թըմբ-
կահարելու «համընդհանուր բարեկեցության», «սեփականության ցրման», «բո-
լորի համար սեփականության» առասպելները։ Սակայն, ինչպես ասում են՝ կեղ-
ծիքի ոտքերը կարճ են։ Այդ առասպելները հերքվում են ոչ միայն փաստերի

համադրմամբ, այլ նաև բուրժուական ողջամիտ մտածողների տրամաբանու-
թյամբ: Այս առումով հատկանշական է ամերիկյան տնտեսագետներ Լեստեր
Տուրոուի և Ռոբերտ Լուկասի՝ «Եկամուտների ամերիկյան բաշխումը՝ կառուց-
վածքային պրոբլեմը» 1972 թ. հրապարակված աշխատությունը՝ Ամերիկայի
Միացյալ Նահանգների կոնգրեսի միացյալ տնտեսական հանձնաժողովի պատ-
վերով: Նրանք գրում են, որ, ամբողջությամբ վերցրած, ամերիկյան ընտա-
նիքների եկամուտները 22 տարում բարձրացել են: Ինչ վերաբերում է եկա-
մուտների բաշխման բնույթին («հավասարություն-անհավասարություն»),
գործնականում անփոփոխ է մնացել: Եթե 1947 թ. ընտանիքների ստորին 20
տոկոսն ստացել է եկամուտների ընդհանուր գումարի ընդամենը 5 տոկոսը,
իսկ վերին 20 տոկոսը ստացել է 43 տոկոսը, ապա 1969 թ., համապատաս-
խանաբար, այդ հարաբերությունը կազմել է 5,6 և 41 տոկոս: Թեպետ ԱՄՆ-ում
ունեցվածքի վերաբերյալ ճշգրիտ տվյալներ ստանալն այնքան էլ հեշտ չէ,
այնուամենայնիվ, Տուրոուն և Լուկասը հավաստում են, որ հարստության բաշ-
խումը զգալիորեն ավելի անհավասարաչափ է, քան եկամուտների բաշխու-
մը: Այսպես՝ բնակչության 20 տոկոսի ձեռքում է բոլոր մասնավոր հարստու-
թյունների 75 տոկոսը, այն ժամանակ, երբ չքավոր բնակչության 25 տոկոսը
ընդհանրապես սեփականություն չունի, քանի որ նրանց պարտքերի գումարը
հավասար է նրանց տրամադրության տակ եղած միջոցների արժեքին: Ընդհա-
նուր առմամբ, հեղինակները հանգում են կարևոր եզրակացության՝ «Հարա-
բերական մեծություններով տեղի է ունենում եկամուտների բաշխման հավա-
սարեցում, իսկ բացարձակ մեծություններով՝ անհավասարության հետագա խո-
րացում»: Միտումն այսպիսին է. որքան մեծ է սեփականության չափը, այնքան
մեծ է սեփականատիրոջ հարաբերական ու բացարձակ բաժինը եկամուտների
բաշխման մեջ: Ամերիկյան տնտեսագետներ Լեստեր Տուրոուի և Ռոբերտ Լու-
կասի հետևությունները հաստատվում են նաև կապիտալիստական մյուս եր-
կրների օրինակով:

Բանվոր դասակարգի անընդհատ աճող դիմադրությունը և սոցիալիզմի
նվաճումները ստիպում են բուրժուազիային աշխատավարձի խնդրում դիմելու
որոշ զիջումների, եթե իհարկե շահույթի աճման տեմպերը հետ չեն մնում աշ-
խատավարձի բարձրացման տեմպերից: Եվ պատահական չէ, որ եթե ԱՄՆ-ում
1960—1968 թթ. բանվորների աշխատավարձը բարձրացել է 13 տոկոսով, ապա
կորպորացիաների զուտ շահույթները աճել են 91 տոկոսով: Այդ նույն թվա-
կաններին, Ճապոնիայում բանվորների ու ծառայողների աշխատավարձն ավե-
լացել է 22,8 տոկոսով, մինչդեռ կապիտալիստների շահույթները համարյա
կրկնապատկվել են: Սրանք ամենևին էլ «հավասար հնարավորությունների»
վկայություն չեն: Որքան էլ որ բարելավվի բանվոր դասակարգի նյութական
վիճակը, Մարքսի խոսքերով ասած՝ «...չի ոչնչացնի բանվորի շահերի և բուր-
ժուայի ու կապիտալի շահերի միջև հակադրությունը: Շահույթը և աշխատա-
վարձը նախկինի նման գտնվում են միմյանց նկատմամբ հակադիր հարաբե-
րության մեջ: Եթե կապիտալն աճում է արագ, աշխատավարձը կարող է բարձ-
րանալ, բայց անհամեմատ արագ է բարձրանում կապիտալիստի շահույթը:
Բանվորի նյութական վիճակը բարելավվում է, բայց նրա հասարակական դիր-
քի հաշվին: Նրան կապիտալիստից անջատող հասարակական անդունդը ընդ-
լայնվում է» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т 6,стр. 451):

Նույնիսկ այն դեպքում, երբ բանվորները.պայքարով հասնում են աշխա-



տավարձի բարձրացման, արդյունքը տևական չի լինում: Աշխատավարձի
բարձրացմանը կրնկակոխ հետևում է մանրածախ գների աճը: Օրինակ՝ Անգ-
լիայում 1960—1968 թթ. մանրածախ գների բարձրացումը կլանել է նոմինալ
աշխատավարձի հավելման 67 տոկոսը, Ֆրանսիայում՝ 46, Ֆեդերատիվ Գեր-
մանիայում՝ 40, Իտալիայում՝ 88 տոկոսը և այլն: Աշխատավորների կենսամա-
կարդակի բարձրացման դեմ ուղղված իսկական ագրեսիա է կապիտալիս-
տական մի շարք պետությունների կողմից կիրառվող գների և աշխատավար-
ձի սառեցման քաղաքականությունը, որի նպատակն է աշխատավորների սպա-
ռողական պահանջմունքները սահմանափակելու հաշվին ավելի խթանել կա-
պիտալի կուտակումը:

Աշխատավորների համար իսկական չարիք է դարձել հարկերի անընդհատ
աճը: Պաշտոնական տվյալները վկայում են, որ կապիտալիստական երկրնե-
րում, որպես կանոն, հարկերը առաջ են անցնում աշխատավարձի աճից: Բուր-
ժուական մի շարք տնտեսագետներ կապիտալիստական պետությունների հար-
կային նման քաղաքականությունը փորձում են արդարացնել այն պատճառա-
բանությամբ, թե իբր հարկերից գանձված միջոցները վերադարձվում են աշ-
խատավորներին սոցիալական ծառայությունների միջոցով և որ պրոգրեսիվ
հարկավորման ռեժիմը ոչ այլ ինչ է, եթե ոչ ունևորների և չունևորների եկա-
մուտների հավասարեցման միջոց: Այստեղ ևս փորձ է արվում կեղծել իրակա-
նությունը: Պարզ է, որ աշխատավորներից գանձվող հարկերի աճը անմի-
ջական և զգալի հարված է աշխատավորական ընտանիքի բյուջեին, իսկ կա-
պիտալիստական շահույթներից գանձվող հարկերը փոխառության, վարկա-
վորման և մի շարք այլ ձևերով, նորից վերադարձվում են մոնոպոլիաների
անկիզելի գանձապահարանները:

Գների ու հարկերի աճը է՛լ ավելի է սրում սոցիալ-տնտեսական ամենա-
կենսական պրոբլեմներից մեկը՝ բնակարանային հարցը: Ընդհանուր առմամբ,
կապիտալիստական երկրներում բնակարանային վարձն սպառում է բանվո-
րական ընտանիքի բյուջեի 25—30 տոկոսը: Բնակարանային հարցը անլուծելի է
համարվում ոչ այնքան բնակարանների պակասության, որքան թանկության
պատճառով: Դրա ցայտուն օրինակն է Անգլիան. պաշտոնական տվյալնե-
րով, 1970 թ. հոկտեմբերից մինչև 1972 թ. հոկտեմբերը այստեղ բնակա-
րանային վարձը բարձրացել է 24,1 տոկոսով: Եվ այդ այն ժամանակ, երբ
միայն Լոնդոնում 6 հազար մարդ օթևան չունի, իսկ երկրում անբնակ է 30
հազար շենք:

Սքողելու համար սոցիալական աղաղակող անհավասարությունը՝ բուրժուա-
կան գաղափարախոսները մի ուրիշ հնարանքի էլ են դիմում: Նրանց աչքից
չի վրիպում այն, որ ներկայումս բանվորների կենցաղում գործածության սո-
վորական առարկաներ են դարձել սառնարանները, հեռուստացույցները, լվաց-
քի մեքենաները և այլն, որոնք առաջներում մատչելի չէին աշխատավորական
ընտանիքների համար: Այստեղից հետևություն է արվում, որ իբր կապիտա-
լիզմը «վերափոխվում է մի ինչ-որ ինդուստրիալ» հասարակության, որտեղ
դեռևս պահպանվում են որոշ քանակական տարբերություններ, բայց սկզբ-
բունքորեն բոլոր քաղաքացիները օգտվում են միանման կենսական բարիք-
ներից: Այն հավանականությունը, որ այսօր բանվորին ու կապիտալիստին
մատուցվել են նույն ճաշատեսակները, որ երկուսն էլ ունեն ավտոմեքենաներ,
նույնատիպ հեռուստացույց, չի կարող բանվորին ու կապիտալիստին մի հար-

թակի վրա դնել։ Բանն այն է, որ «...բանվորի անհատական սպառումը հենց իրեն՝ բանվորի համար անարտադրողական սպառում է, որովհետև այդ սպառումը միայն ապրուստի միջոցների կարիք ունեցող անհատ է արտադրում, այդ սպառումն արտադրողական է կապիտալիստի համար և պետության համար, որովհետև այդ սպառումը ուրիշի համար հարստություն ստեղծող ուժի արտադրություն է... Բանվորների անհատական սպառումը, մի կողմից, ապահովում է նրանց պահպանումն ու վերարտադրումը, մյուս կողմից, կենսամիջոցները ոչնչացնելով՝ անհրաժեշտ է դարձնում բանվորների մշտական հայտնվելը աշխատանքի շուկայում» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. I, էջ 600—601)։ Հետևաբար, անկախ նրանից՝ սպառողական ինչպիսի բարիքներից են օգտվում կապիտալիստն ու բանվորը, սպառման բնական պրոցեսը կապիտալիզմի պայմաններում ընդունում է սոցիալական անհավասարության վերարտադրության ձև։

Կապիտալի աշխարհում սոցիալական անհավասարության ամենասուր դրսևորումներից մեկը եղել ու մնում է գործազրկությունը։ Մոտավորապես 10 մլն գործազուրկ արդյունաբերական արևմուտքում 1971 թվականին։ Այսպիսին է հետպատերազմյան ժամանակաշրջանի տխուր ռեկորդը, արձանագրում է ֆրանսիական «Էքսպանսիոն» հանդեսը։ Թեպետ կապիտալիստական որոշ երկրներում բանվոր դասակարգը նվաճել է գործազրկության նպաստի իրավունք, բայց և այնպես աշխատանքի կորուստը մի իսկական ողբերգություն է աշխատավորական ընտանիքի համար։

Պաշտոնական վիճակագրության տվյալներով, ներկայումս ավելի քան 5 մլն ամերիկացիներ աշխատանք են փնտրում։ Այդպիսի մասսայական գործազրկությունը նորություն չէ։ 60-ական թվականների սկզբին աշխատանք չունեին ավելի քան 6 մլն մարդ։ Նորությունն այն է, որ աշխատանքի բորսաներում ֆիզիկական աշխատանքի մարդկանց հետ միասին գործ են փնտրում մտավոր աշխատանքի մարդիկ՝ նրանք, որոնք ստեղծել են բարձր արտադրողական մեքենաներ, իսկ այժմ ընկել դրանց թակարդը։ Սկզբնական շրջանում գիտատեխնիկական հեղափոխությունը ներկայացրեց բարձր որակավորում ունեցող մասնագետների մեծ պահանջարկ։ Վերջին 20 տարում ԱՄՆ-ում գիտնականների, ինժեներների, տեխնիկների թիվն աճեց երկուս ու կես անգամ։ Եվ, ինչպես անխուսափելի է տնտեսության տարերային զարգացման պայմաններում, շուտով պարզվեց, որ սկսվել է «դիպլոմավոր մարդկանց» գերարտադրություն։ Հետևանքը եղավ այն, որ այսօր ԱՄՆ-ում մտավոր աշխատանքի մարդկանց գործազրկությունը գերազանցում է մեկ մլն 400 հազարից, որոնցից 400 հազարը գիտական աշխատողներ ու ինժեներներ են։ «Տնտեսական առաջացման ոչ մի մասշտաբ,— գրում է ամերիկյան գործարար շրջանների օրգան «Բիզնես ուիկ» հանդեսը,— չի կարող աշխատանքի վերադարձնել այն մասնագետներին, որոնք առաջ զբաղված էին պետական ծրագրերի կատարմամբ»։

Գիտատեխնիկական հեղափոխությունը հատկապես թանկ է նստում երիտասարդության վրա։ Միավորված ազգերի կազմակերպության տվյալներով ներկայումս երկրագնդի բնակչության կեսը 25 տարին լրացրած երիտասարդներ են, իսկ Ամերիկայի Միացյալ Նահանգներում, Ֆրանսիայում և կապիտալիստական մի շարք այլ երկրներում գործազուրկների մոտավորապես կեսը հենց այդ տարիքի մարդիկ են։ Եվ ահա թե ինչու։



Գործազրկությունն այսօր իր ճիրանների մեջ է առել աշխատավոր բնակչության բոլոր խավերին, դարձել է համապարփակ։

Գիտատեխնիկական հեղափոխության հարուցած հակասություններից մեկն էլ ինֆլյացիայի և գործազրկության միաժամանակյա աճն է։ Առաջներում գործատերերը գործազրկությունն օգտագործում էին բանվորների աշխատավարձը իջեցնելու համար, իսկ այսօր գործազրկության աճի հետ միասին աճում է նաև ապրուստի արժեքը։ Ամերիկյան տնտեսագետները մատնացույց են անում երկու հիմնական պատճառ։ Առաջին՝ բյուջեի ռազմականացումը և երկրորդ՝ այսպես կոչված «աճի քաղաքականությունը»։ Բանն այն է, որ գիտատեխնիկական հեղափոխության արդի պայմաններում տնտեսական աճը խթանվում է տնտեսության դեֆիցիտային ֆինանսավորմամբ, երբ բյուջետային ծախսերը գերազանցում են եկամուտներին։ Դրա համար էլ «աճի քաղաքականության» ուղեկիցը դառնում է ինֆլյացիան։ Իսկ քանի որ կապիտալիստական տնտեսության տարերային զարգացման պայմաններում անհնար է կարգավորել այդ աճը, բուրժուական տնտեսագետները փորձում են մեղքը բարդել հենց իր՝ գիտատեխնիկական հեղափոխության վրա։ Նրանք նույնիսկ այնպիսի անհեթեթություն են տարածում, թե իբր տնտեսական աճը, որպես բարեկեցության հիմք, մարքսիստների հնարանքն է։ Սակայն տնտեսական աճը դադարեցնելու հնարավորության մասին երկերեսանի դատողությունները, որի շնորհիվ իբր կբարելավվի «կյանքի որակը», հերքվում է կապիտալիստական մրցակցային պայքարի տրամաբանությամբ։ Այժմ արտադրության աճը, որպես կանոն, զուգակցվում է ինֆլյացիայի և գործազրկության միաժամանակյա աճով։ Գործազրկության վրա բարդվում են նաև ինֆլյացիայի հարուցած տառապանքները։

Այսպիսով, հակառակ բուրժուազիայի գաղափարական սպասարկուների հնարանքներին, ինչպիսի տեսանկյունից էլ քննարկելու լինենք կապիտալիստական արդի հարաբերությունների զարգացումը, այն ներկայանում է որպես սոցիալական անհավասարության ընդլայնման ու խորացման անկասելի պրոցես։

Կապիտալիստական երկրներում սոցիալական բողոքի փոթորկալի ձևերը, համադեմոկրատական ելույթների աննախադեպ մասշտաբներն ու շիկացումը հաստատում են լենինյան այն ճշմարտությունը, որ հավասարությունը խաբեություն է, եթե այն հակասում է կապիտալի ճնշումից աշխատանքի ազատագրությանը։ Մարդկության նորագույն պատմությունը սոցիալիստական երկրների օրինակով ապացուցել է, որ անհավասարության փոխակերպումը հավասարության կարող է իրացվել միայն բանվոր դասակարգի իշխանության միջոցով։ «Սոցիալիզմը,— գրում է Լենինը,— միակ քայլն է դեպի հավասարություն և դեմոկրատիա՝ գործով, ոչ թե թղթի վրա, այլ կյանքում, ոչ թե քաղաքական ֆրազում, այլ տնտեսական իրականության մեջ» (Երկեր, հ. 30, էջ 45)։

Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

★

# ԱԿԱՆԱՎՈՐ ԲԱՆԱՍՏԵՂԾՆ ՈՒ ԳԻՏՆԱԿԱՆԸ

★



Սովետական ժողովուրդը, աշխարհի առաջադեմ հասարակայնությունը նշեց գեղարվեստական խոսքի ռուս խոշորագույն վարպետներից մեկի՝ հմուտ գիտնականի ու փայլուն թարգմանչի, հայ ժողովրդի, նրա հարուստ կուլտուրայի մեծ ու անկաշառ բարեկամի՝ Վալերի Յակովլևիչ Բրյուսովի ծննդյան 100-ամյակը:

Արտակարգ բազմակողմանի է եղել Բրյուսովի գրական գործունեությունը: Ապրելով ընդամենը 51 տարի՝ նա թողել է ստեղծագործական վիթխարի ժառանգություն: Ռուս գրողների արխիվներից իր մեծությամբ երկրորդն է Բրյուսովինը. կենսագրական ու աշխատանքային փաստաթղթերի հետ մեկտեղ այն ամփոփում է բանաստեղծությունների տասնյոթ ժողովածու, ավելի քան տասնյակ ավարտված, ինչպես և անավարտ դրամատիկական շատ ստեղծագործություններ, մի քանի գեղարվեստական արձակ գործեր. հիշենք դրանցից Կրակե հրեշտակը երկմաս վեպը, բոլոր ժանրերին վերաբերող գրական-քննադատական բազում հոդվածներ, ռուս, անտիկ, արևմտաեվրոպական և հայ պոեզիայի պատմության ուսումնասիրություններ, աշխատություններ պոետիկայի մասին, լատինական, իտալական, ֆրանսիական, անգլիական, գերմանական, հայ, լատիշ և այլ գրողների բազմաթիվ ընտեղծագործություններ, հրապարակախոսական, պատմագիտական գործեր, մաթեմատիկական վարժությունների ինքնագրեր և այլն, և այլն:

Դժվար է թվարկել այն բոլորը, ինչ արել է իր կարճատև կյանքի ընթացքում Բրյուսովը. մարդ, որի կենսագրությունը ձուլվում է իր գրքերի ու հրապարակված այլ աշխատությունների պատմությանը: Մեծ երախտավորն իր անկրկնելի ավանդն է ներդրել համաշխարհային կուլտուրայի գանձարանում:

Բարդ ու հակասական է եղել բանաստեղծի ստեղծագործական ուղին. մեծ նվաճումների՝



գաղափարապես լիարժեք, գեղարվեստորեն կատարյալ ստեղծագործությունների հետ մեկտեղ նրա գրչի արգասիքն են եղել նաև այնպիսի գործեր, ուր նա տուրք է տվել անկումային դեկադենտական տրամադրություններին: Սակայն, ամփոփելով իր գործունեությունը, Բրյուսովը լիիրավ կարող էր հայտարարել. «Ես գիտեմ, որ ի վերջո, գիտակցելով իմ բոլոր թերություններն ու սխալները, զուր չեմ հարթել այն ճանապարհը, որով անցել եմ»:

* * *

Վալերի Յակովլևիչ Բրյուսովը ծնվել է 1873 թ. դեկտեմբերի 13-ին, Մոսկվայում: Ճորտ գյուղացի էր նրա հայրական պապը: Ազատություն ստանալուց հետո նա զբաղվել է առևտրով: Բանաստեղծի հայրը՝ Յակով Կուզմիչը, նույնպես առևտրով է զբաղվել, սակայն բնավ չի սիրել այն և կյանքի վերջում հրաժարվել է դրանից: Կարդացած, կրթված մարդ էր նա, Չերնիշևսկու, Պիսարևի ջերմ երկրպագուն և ջանում էր դեմոկրատական հայացքներ սերմանել իր որդու հոգում: Հետագայում Բրյուսովը հիշել է. «Խանձարուրից իսկ ես դաստիարակվել եմ մատերիալիզմի ու աթեիզմի սկզբունքներով»: Վաղ հասակից Վալերին տարվել է հումանիտար ու բնական գիտություններով, տիրապետել մի շարք օտար լեզուների: Նրա հոգում շատ վաղ է արթնացել սերը գրականության նկատմամբ:

Երեք տարեկանից կարդալ սովորելով, հնգամյա երեխան արդեն անգիր գիտեր Նեկրասովի շատ բանաստեղծություններ. վեց տարեկանից նա օրագիր է պահել, իսկ 13-ից արդեն, ինչպես գրել է Բրյուսովը, զգաց, որ ամենից առաջ գրականագետ է ինքը և սկսեց գրել բանաստեղծություններ, պոեմներ, հորինել պատմվածքներ, ողբերգություններ, արկածային վիպակներ: Տանը, ապա գիմնազիայում կրթություն ստանալուց հետո, Բրյուսովն ընդունվեց Մոսկվայի համալսարանի պատմաբանասիրական ֆակուլտետը, որն ավարտեց 1899 թվականին:

Ուսանողական տարիներին Բրյուսովը, գիմնազիայի իր ընկերոջ՝ Լանգեի հետ, 1894 թ. հրատարակում է բանաստեղծությունների մի փոքրիկ գրքույկ՝ Ռուս սիմվոլիստները վերնագրով:

Այդ ժամանակ սկսվել էր ռուսական հեղափոխական շարժման երրորդ՝ պրոլետարական փուլը: Գեղարվեստագետ մտավորականության զգալի մասը, չկարողանալով ըմբռնել ռուսական հասարակության զարգացման հետագա ուղիները, բուրժուազիայի դեմ պրոլետարիատի մղած դասակարգային պայքարի ծավալումը համարում էր ամեն կարգ ու կանոնի վախճան, քաոսի սկիզբը: Չընդունելով պրոլետարիատի գաղափարները՝ այդ մտավորականությունն ընդհանրապես հրաժարվեց գաղափարներից, երես դարձրեց կյանքից՝ մխրճվելով երևակայության, անուրջների աշխարհը: Քաղաքական ռեակցիան և բուրժուա-ազգայնականական գաղափարախոսության անկումը դարձան Ռուսաստանի գրական դեկադենտական մի շարք խմբավորումների ստեղծման հիմքը: Դրանցից մեկի՝ սիմվոլիզմի գլուխ կանգնեց երիտասարդ Բրյուսովը: Ռուս սիմվոլիստների առաջին հրատարակությունից հետո նա լույս ընծայեց իր բանաստեղծությունների երկու ժողովածու ևս (1894 և 1895 թթ.)՝ Գլուխգործոցներ հանդուգն վերնագրով:

Բրյուսովի վաղ շրջանի քնարերգության հիմնական մոտիվներն են՝ ոժգոհությունը իրականությունից, իդեալականի, անրջայինի հակադրությունը ռեալ կյանքին: Այդպես էլ կոչվում են նրա բանաստեղծությունների շարքերը— Առաջին երազներ, Նվիրական անուրջ, Նոր անուրջներ, Երազներ աղոտացածի մասին և այլն: Սիմվոլիստ Բրյուսովի գրական պրակտիկան ստեղծագործության նկատմամբ գործադրվող սուբյեկտիվ կամայականության, ժամանակի կենսական խնդիրներից հեռանալու օրինակ է: Այնուամենայնիվ, պոեզիայի ձևական հնարանքների զարգացման առումով չի կարելի չնշել Բրյուսովի ավանդը. նրա գործածած մի շարք ձևեր ու նորույթներ կիրառվում են և ժամանակակից պոեզիայում: Ի տարբերություն սիմվոլիստների մեծ մասի, Բրյուսովը բանաստեղծությունը գրում է իբրև վարպետ՝ ցանկանալով ստեղծել ինքնատիպ պոետիկա, ընդլայնել պոեզիայի սահմանները. այս ասպարեզում նա հասավ որոշակի հաջողությունների:

Ռուսական առաջին հեղափոխության անհագնացող փոթորիկն իր ալիքների մեջ առավ նաև Բրյուսովին՝ փոխելով նրա ստեղծագործությունների թեմատիկան, ոճը: Դարասկզբին հրատարակված Երրորդ սահմանագիծը բանաստեղծությունների ժողովածուն նշանավորեց պոետի ստեղծագործության նոր փուլը: Այն սկսվում է մի բանաստեղծությամբ, ուր պոետը պատմում է, թե ինչպես մանուկ հասակում, դեգերելով անտառում, հանդիպել է մանրդուհուն: Այնպե՞ս քաղցր էր նրա համար մանուկ օրերին հետևել այդ թելերին, որոնց փայլփլող գույները խիստ նման էին իր երազներին: Սակայն անցավ մանկությունը, ավարտվեց գիշերը, և բացվում է արշալույսը. սկսվում է երրորդ սահմանագիծը. արևելքը բռնկվում է, և

*Արշալույսն իր փայլով արյունոտ*
*Մանրդի թելերն է տաքացնում:*

մանկության հիվանդությունների հետ մեկտեղ հեռնում է մնում կյանքից կտրվածության շրջանը— դեգերումներն անտառում. դրան փոխարինում է բանաստեղծի առաջ լայն ասպարեզներ բացող նոր օրը: Բրյուսովի ստեղծագործության այս շրջադարձը նշել է և Գորկին՝ Երրորդ սահմանագիծը ժողովածուի առթիվ գրած իր գրախոսականում, ցույց տալով, որ բանաստեղծը հրաժեշտ է տալիս անցյալին, չնայած լիովին չի ձերբազատվել արտառոց, տարօրինակ զգեստներից: Ժողովածուի մի բաժինը հատկացված է հեռավոր պատմական անցյալի իդեալական, հերոսական անձնավորություններին՝ «դարու սիրելիներին», որոնց բանաստեղծը հակադրում է բուրժուական առօրեականությանը:

Երրորդ սահմանագիծը ժողովածուն Բրյուսովի պոետական հասունության վկայությունն է: Նրա բանաստեղծությունը դառնում է առնական, լարված, արտահայտիչ, կերպարները՝ գեղեցիկ ու ճկուն: Բրյուսովն աշխատում է շատ և լարված: Բանաստեղծությունների ժողովածուի հրատարակմանը զուգընթաց նա գրում է պատմվածքներ, դրամաներ, թարգմանում և հրապարակում է ֆրանսիական քնարերգուների ստեղծագործությունները, սկսում է անմիջականորեն զբաղվել ռուս գրականության պատմության գիտական ուսումնասիրությամբ, կանգնում «Կշեռք» ամսագրի գլուխ, ակտիվ մասնակցում գրական-գեղարվեստական խմբակի աշխատանքներին:

1903 թ. լույս է տեսնում նրա բանաստեղծությունների չորրորդ ժողովածուն՝ Քաղաքին և աշխարհին վերնագրով, իսկ 1905-ին՝ դեկտեմբերյան ապստամբության բուռն շրջանում, հինգերորդը՝ Պսակը: Բրյուսովի այս ժողովածուները նրա հետագա էվոլյուցիայի վկայությունն են, նրա պոետական ձիրքի ծաղկման, արվեստը ժողովրդին ծառայեցնելու ձգտման արտահայտությունը: Պոետը ձգտում է իր պոեզիան հագեցնել ժամանակակից ոգով. հայրենիքը, հայրենասիրության զգացումը դառնում են Բրյուսովի պոեզիայի նոր թեման: Խորանում է նրա քաղաքացիական լիրիկան. ռուսական առաջին հեղափոխության շունչը համակել է պոետին, և նա գրում է այնպիսի ստեղծագործություններ, ինչպես՝ ժողովրդական երգ դարձած Որմնադիրը, Գիշեր, Սուր, Բավարարվածները, Լապտերիկներ և այլն, որոնցում արձագանքում է հասարակական քաղաքական հրատապ հարցերին, ողջունում հեղափոխությունը, փառաբանում աշխատանքն ու աշխատանքի մարդկանց, մերկացնում բուրժուական մտավորականության երկչոտությունն ու անվճռականությունը:

Սակայն, չնայած Բրյուսովը ողջունում է հեղափոխությունը, նույնիսկ երազում ապագա սոցիալիստական հասարակության մասին, հեղափոխությունը նա համարում է հինը քանդող, բայց ոչ միաժամանակ նորի ստեղծող, նորը ծնող: Բրյուսով-պոետի ուժը օրգանապես կապվում է նրա թուլության, անհետևողականության հետ: Հասարակության կյանքը նա ընդունում է որպես առաջադիմություն, գովերգում մարդու դյուցազնական, կյանքը առաջ մղող ջանքերը... Սակայն Բրյուսովի համար պրոգրեսը շարժում է փակ շրջանում, ուր հաջորդող յուրաքանչյուր հասարակություն ամեն ինչ պետք է նորից սկսի:

Բրյուսովի ստեղծագործական դիրքերի հակասականությունը դրսևորվել է նաև այդ շրջանի ուրբանիստական քնարերգության մեջ: Բանաստեղծի համար քաղաքի կյանքն աշխարհիկ կերպարանք առած ցնորք է, քաղաքի գեղեցիկ արտաքինով սքողված են շահագործումը, աղքատությունը, պոռնկությունը: Բայց քաղաքը միաժամանակ գեղագիտական նոր հնարանքների, մարդկային բանականության հզորության ու հաղթանակի, տեխնիկայի և արդյունաբերության նվաճումների մարմնացումն է:

Սքանչելի են բանաստեղծությունների Պսակ ժողովածուի Իրիկնային երգեր և Սեյմում ըստեղծագործությունները: Բրյուսովն այստեղ հասնում է մեղեդու բացառիկ մաքրության, պատկերի արտակարգ հստակության: Հմայիչ է Բրյուսովի բանաստեղծությունների երաժշտականությունը, բնության գույներն ու ձայները հաղորդելու նրա վարպետությունը: Որքա՜ն ճիշտ ու հստակ, լակոնիկ է բնութագրել Բրյուսովի այս շրջանի պոեզիան Ալեքսանդր Բլոկը. «Կարողանալով դարբնել բանաստեղծությունը, Բրյուսովը կարողանում է դարբնել և գաղափարները, թույլ չտալ, որ ցրվեն դրանք: Սա մեծ պոետի հատկությունն է: Բրյուսովը միշտ ավարտուն է, նրբակերտ»:

Բրյուսովն արդեն հանրաճանաչ բանաստեղծ է: 1909 թ. հրատարակվում են նրա Բոլոր մեղեդիները, 1912 թ.՝ Ստվերների հայելին, 1915-ին՝ Բանաստեղծություններ Նելլիին, 1916-ին՝ Ծիածանի յոթ գույները բանաստեղծությունների ժողովածուները: Նա տքնաջան աշխատում է՝ կազմելու համար Մարդկության անուրջները համաշխարհային պոեզիայի անթոլոգիան, որը բոլոր ժողովուրդների և բոլոր ժամանակների քնարական արտահայտությունն է՝ նախնադարյան համայնքների պարզունակ պոեզիայից սկսած մինչև դեկադենտների նրբակերտ բանաստեղծությունները: Բրյուսովը միաժամանակ արձակագիր է և



դրամատուրգ. 1907 թ. լույս են տեսնում նրա պատմվածքների ու դրամատիկական էտյուդների ժողովածուն Երկրի առանցքը վերնագրով, 1908-ին՝ Կրակե հրեշտակը վեպի առաջին և երկրորդ մասերը, 1909-ին՝ ապագա հասարակության կյանքին նվիրված Մահացու յոթ մեղքեր վեպը, 1911-ին՝ Ճամփորդը դրաման, Հռոմեական պատմության թեմաներից վերցված Հաղթաբեմ վիպակը, 1913-ին՝ Մեռնող Պրոթիփիլայը ողբերգությունը, 1914-ին՝ Հռոմի IV դարի ժամանակաշրջանից առնված Ռեա Սիլվիա պատմվածքը, ժամանակակից կյանքի թեմայով գրված Պիրոենտ դրաման, Դարերի ֆիլմերը: Հարյուրամյակների կինեմատոգրաֆիան կինոսցենարները, 1915-ին՝ Դաշայի նշանադրությունը վիպակը՝ վաճառականական կյանքից և այլն:

Բրյուսովն զբաղվում է նաև գրական-քննադատական ամենօրյա աշխատանքով. սկզբում «Կշեռք», ապա «Ռուսական միտք» ամսագրերում հրապարակում է ռուս և արևմտաեվրոպական ժամանակակից պոեզիային նվիրված հոդվածներ, առավել խոր, գիտականորեն ուսումնասիրում գրականության պատմությունն ու տեսությունը: 1909 թ. հրապարակում է իր Մոխրացածը ճառը՝ Գոգոլի մասին, 1910-ին՝ հռոմեացի բանաստեղծ ու հռետոր Դեցիմ Մագնա Ավսոնիայի (մ. թ. IV դար) կյանքին ու ստեղծագործությանը նվիրված ուսումնասիրությունը, 1912-ին՝ ռուս պոետների (Տյուտչևից մինչև իր ժամանակակիցները) մասին գրած հոդվածների ու ակնարկների ժողովածուն, 1913-ին՝ Պատուհանիս մոտ հուշերի ժողովածուն՝ Տոլստոյի, Վրուբելի, Վերհարնի և այլոց մասին, 1915-ին՝ Կարոլինա Պավլովնայի մասին հիշողությունները, 1916-ին՝ Պուշկինի Գավրիիլիադայի առաջին գիտական հրատարակությունը Ռուսաստանում: Այդ տարիների ընթացքում տպագրվում են և նրա հոդվածները՝ նվիրված ռուսական չափածոյին, թարգմանական վարպետությանը, գիտական պոեզիային:

Անհերևակայելի լայն են Բրյուսով-թարգմանչի գործունեության սահմանները. ռուս ընթերցողին նա ծանոթացնում է Վերգիլիոսի, Դանթեի, Պետրարքայի, Բերանժեի, Հյուգոյի, Մյուսսեի, Գյոթեի, Բայրոնի, Էդգար Պոյի, Վերհարնի, Մետերլինգի, Գաբրիել դ'Անունցիոյի, XIX դարի ֆրանսիական քնարերգուների՝ Ուալդի, Վեռլենի, Բոդլերի և այլոց ստեղծագործություններին: Գորկու հետ միասին կազմում է հայ, լատիշական և ֆինլանդական գրականությունների ժողովածուները, իսկ 1915—16 թթ. բանաստեղծը թարգմանում և խմբագրում է Հայ պոեզիայի անթոլոգիան՝ հնագույն ժամանակներից սկսած մինչև մեր օրերը: Անթոլոգիան կազմելու, պատրաստելու ընթացքում Բրյուսովը համառորեն սովորում է հայոց լեզուն, իրեն մատչելի բոլոր լեզուներով կարդում Հայաստանի պատմությանը և հայ գրականությանը նվիրված բազմաթիվ գրքեր: 1915 թ. դեկտեմբերին, 1916-ի հունվարին նա ուղևորվում է Անդրկովկաս՝ անձամբ տեսնելու հայ ժողովրդի կյանքը, ծանոթանալու նրա բանաստեղծներին ու գրողներին, արվեստի ու գիտության գործիչներին: Բրյուսովը լինում է Բաքվում, Թիֆլիսում, Երևանում և Էջմիածնում, ուր հանդես է գալիս զեկուցումներով, կարդում իր թարգմանությունները, հանդիպում Հովհաննես Հովհաննիսյանի, Հովհաննես Թումանյանի և այլոց հետ: Հայ ժողովրդի ճակատագրին, նրա անցյալին ու ներկային ծանոթանալը, իրազեկությունը բացեցին բանաստեղծի առաջ «Հայոց վշտի անհուն ծովը», ցնցեցին նրան, լցրին նրա սիրտը թուրքական բարբարոսների նկատմամբ զայրույթով ու ատելությամբ, վառեցին նրա հոգում հայ եղբայրների կողքին գտնվելու բուռն տենչը: Եկավ, սիրեց հայ ժողովրդին, հիացավ նրա կուլտուրայով, ու հայերն էլ նրան սիրեցին: Այդ ժամանակներին էր, որ Վահան Տերյանը, իր մի՞թե վերջին պոետն եմ ես խորավիշտ մտորումների մեջ, այս տողերը նվիրեց իր և իր ժողովրդի անկաշառ բարեկամին.

*Ես դեռ պատանի սիրեցի քո խիստ,*
*ցո՜ւրտ հյուսիսային մտազուսպ լեզուն,*
*Ե. տեսա՝ որքա՜ն ահեղ է կիզում*
*կրակը թաքուն տողերից հանգիստ:*

*Դու չարչարանաց ահավոր ժամին*
*եկար այցելու իմ երկիրն անհույս*
*և ավետեցիր փրկություն ու լույս,*
*երբ հալածում էր մեր նավը քամին:*

Մոսկվայում 1916 թ. աշնանը լույս տեսավ Հայաստանի պոեզիա անթոլոգիան, գեղարվեստական ձևավորումը Մ. Սարյանինն էր և Վ. Սուրենյանցինը: Իբրև նախաբան, անթոլոգիայում զետեղված էր Բրյուսովի՝ Հայաստանի պոեզիան և նրա դարավոր միասնությունը պատմագրական ակնարկը, ուր հանգամանորեն բնութագրված էին հայ գրականության կարևորագույն դեմքերն ու երևույթները՝ հնագույն ժամանակներից մինչև XX դարի 10-ական թվականները: Բրյուսովի ողջ ակնարկը և հայ առանձին պոետների ստեղծագործության գնահատականն արժեքավոր ներդրում են գրականագիտության մեջ և մինչև օրս էլ շատ կողմերով պահպանում են իրենց նշանակությունը:

* * *

Ժամանակակիցներին զարմացրել է Բրյուսովի ստեղծագործության բազմակողմանիությունը, որից և ծնվել է լեգենդն այն մասին, թե նա ուներ դիվային ուժ, դրա աղբյուրն էին նրա արտակարգ աշխատունակությունը, գիտելիքների անհագ ծարավը: Ռուսերենի հետ մեկտեղ Բրյուսովն ազատ տիրապետում էր լատիներենին, ֆրանսերենին, իտալերենին, անգլերենին, առանց բառարանի կարդում էր գերմաներեն, մի փոքր դժվարությամբ՝ իսպաներեն և շվեդերեն, ծանոթ էր սանսկրիտերենին, հին հնդկերենին, լեհերենին, չեխերենին, բուլղարերենին, սերբերենին, ուսումնասիրել էր եբրայերենի, հին եգիպտերենի, արաբերենի, պարսկերենի ու ճապոներենի քերականությունը: Իր նշումների սևագրություններից մեկում ո՞րն է իմ մասնագիտությունը ինքնահարցումին Բրյուսովը պատասխանել է. «Ժամանակակից ռուսական պոեզիան. Պուշկինը և նրա դարաշրջանը. Տյուտչև. մասամբ ռուս գրականության ողջ պատմությունը: Ֆրանսիական ժամանակակից պոեզիան. մասամբ ֆրանսիական ռոմանտիզմը. XVI դար. բանաստեղծության տեսություն. Դանթեն, նրա ժամանակը, հռոմեական գրականության ուշ շրջանը. արվեստի էսթետիկան և փիլիսոփայությունը:

Բայց, աստվա՜ծ իմ: Որքա՜ն խղճուկ է այս ամբարտավան ցուցակը չիմացածիս համեմատությամբ: Քաղաքական գիտությունների ողջ աշխարհը, բնական գիտությունների ողջ հմայքը, ֆիզիկան ու քիմիան իրենց նոր, զարմանահրաշ հորիզոններով, երկրի ողջ կյանքի ուսումնասիրությունը, կենդանաբանությունը, բուսաբանությունը, կիրառական մեխանիկայի հրապույրը, համեմատական լեզվաբանության գաղտնիքները, որոնց ես հազիվ եմ մոտեցել, արվեստի պատմության իսկական իմացությունը, աշխարհներ, որոնց մասին ես հազիվ լսել եմ— Հին Եգիպտոսը, Հնդկաստանը, մայաների պետությունը, առասպելական Անտարկտիդան, ժամանակակից արևելքը՝ իր զարմանալի կյանքով, բժշկությունը, ինքնաճանաչողությունը և նոր փիլիսոփաների մտահայեցողությունը, փիլիսոփաներ, որոնց մասին ես իմանում եմ երկրորդ, երրորդ ձեռքից... աստվա՜ծ իմ, աստվա՜ծ իմ: Եթե հարյուր կյանք իսկ ունենայի, դրանք չէին հագեցնի գիտելիքների այն ողջ ծարավը, որ այրում է ինձ»:

Սակայն, չնայած Բրյուսովի գործունեության այս ողջ անընդգրկելիությանը, հեղափոխությանը հաջորդած առաջին տարիներին, փաստորեն, նա ապրում էր ստեղծագործական անկում: Գորկու արտահայտությամբ «Ռուսաստանի ամենակուլտուրական գրողը»՝ Բրյուսովը, օժտված էր բանաստեղծական բոլոր շնորհներով և, չնայած դրան, նրա ստեղծած գեղարվեստական գործերը չդարձան հայտնագործություններ, մնացին լավ պատրաստված իրերի մակարդակին: Բրյուսովի պոեզիան զուրկ էր գաղափարա-թեմատիկական խոր բովանդակությունից: Ճիշտ է, 1905 թ. հեղափոխությունն ապարդյուն չէր անցել պոետի համար. հակառակ դեկադենտականությանը՝ մարդուն պարսավելուն, նվաստացնելուն, Բրյուսովն առաջվա պես փառաբանում էր մարդասիրությունը, գովաբանում նրա աշխատանքը, խելքը. Մարդու գովքը բանաստեղծության մեջ նա երգում է պատմությունը կերտող, աշխարհի գաղտնիքների խորքը թափանցող, «քարը, քամին, ջուրը, կրակը» սանձահարող մարդուն: Միայն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը Բրյուսովին ընձեռեց ժամանակի խոշոր թեմաներին անդրադառնալու հնարավորությունը: «1917 թ. շրջադարձը,— գրել է նա,— խորագույն հեղաշրջում էր և անձամբ ինձ համար, գոնե ինքս ինձ մինչ այս սահմանը և դրանից հետո բոլորովին այլ եմ տեսնում»: Բրյուսովը դարձավ երկրի գրականհասարակական կյանքի ակտիվ մասնակիցը: 1918 թվականին նա աշխատանքի անցավ Լուսժողկոմատում, 1919-ին ընտրվեց Մոսկվայի սովետի անդամ, նույն թվականին ընդունվեց կոմունիստական կուսակցության շարքերը: Իրար հետևից Բրյուսովը հրատարակում է բանաստեղծությունների հինգ ժողովածու— Վերջին երազներ (1917—1919), Այդպիսի օրերին (1919—1920), Անկթարթ (1920—1921), Հեռուները (1922), տպագրության է պատրաստում Մարդկության երազանքները, Փորձեր տաղաչափության ու ռիթմերի, սիմֆոնիայի ու ներդաշնակության, ստրոֆիկայի և ձևերի— գրականագիտության մեջ բացառիկ մի աշխատություն՝ Բանաստեղծի արհեստը ներածական հոդվածով. լույս են տեսնում նաև Բանաստեղծության մասին գիտության համառոտ դասընթացը (1919), Տաղաչափության հիմունքները (1924): Բրյուսովը շարունակում է զբաղվել և Հայաստանի հետ կապված հարցերի ուսումնասիրությամբ: 1918 թ. լույս է տեսնում նրա Հայ ժողովրդի պատմական ճակատագրի տարեգրություն ինքնատիպ աշխատությունը, նա մտածում է նաև հրատարակել հայ արձակի Հայաստան ժողովածուն, «Ռուս հասարակայնությանը հայ ժողովրդի ողջ կուլտուրական կյանքին ծանոթացնելու նպատակով»: Կոմունիստ բանաստեղծն իր հետհոկտեմբերյան ստեղծագործություններում դիմում է հասարակական կարևորագույն թեմաների— հեղափոխություն, հայրենիք, ժողովուրդ: Բրյուսովը հեղափոխությունն ընդունում է իբրև պատմական օրինաչափություն, իբրև «հարյուրամյակների օրացույցի եզրափակում», աշխատավոր մասսաների դարավոր ակնկալությունների, հույսերի ու ձգտումների իրականացում: Նրա նոր հերոսը մարմնացնում է ողջ ժողովրդի ուժը, բանականությունը, զգացմունքները: Նա կերտել է ժողովրդի առաջնորդ Լենինի՝ «համաշխարհային պատմության մեծ նավավարի» կերպարը:

*Ծովով է միայն հզոր կոհակը ծովից ելած,*<br>
*Ինչպես ալիքներն իրեն, այնպես ինքն է*<br>
*ձգում ալյաց,*<br>
*Քանի դեռ ժողովուրդն է տանում քեզ՝*<br>
*կատարների պես ալիքների,*<br>
*Ե՛վ ուժեղ, և՛ գեղեցիկ ես դու, առաջնորդ*<br>
*ժողովրդի:*

Բանաստեղծը փառաբանում է հայրենիքը՝ աշխատանքի հանրապետությունը, որը կանգնած է դեպի ոսկե արշալույսը՝ սոցիալիզմը տանող շարժման գլուխ: Ի՜նչ փույթ, որ Սովետական Ռուսաստանում սով է, ցուրտ, քայքայում, քամին է պտտվում դատարկ ամբարներում, անլապտեր քաղաքներում, անշուք տներում կարիքն է պարում. ողջ երկիրը կմիավորվի որպես միասնական մի մարմին:

Բանաստեղծը լավատես է, նա հավատում է երկրի պայծառ ապագային, ուրախությամբ վեր հանում նրա վերելքի բոլոր արտահայտությունները: Հեղափոխության պաթոսն ու ռոմանտիկան, մինչ այդ չտեսնված մարդկային հարաբերությունները, նոր մարդու զգացմունքների ու մտքերի աշխարհը, որոնք դարձել էին Բրյուսովի հետհոկտեմբերյան պոեզիայի բովանդակությունը, պահանջում էին գեղարվեստական համապատասխան արտահայտչաձևեր: Բրյուսովը փնտրում էր այդ ձևերը, բայց ծանր բեռի պես նրա վրա դեռևս ազդում էր սիմվոլիստական պոետիկան, որի հետևանքով բանաստեղծի ոտանավորները հաճախ կրում էին վերացական հայտարարության բնույթ, հեռու էին հեղափոխության հասարակական նշանակության կոնկրետ արտացոլումից: Բրյուսովը ձգտում էր պոեզիայի սեփականությունը դարձնել բնական գիտությունների մեծ հայտնագործությունները, ստեղծել գիտական պոեզիա. նա գրեց այնպիսի ոտանավորներ, ինչպես՝ Մեքենաները, Էլեկտրոնի աշխարհը, Չափումների աշխարհը և այլն, ուր այնպես առատ են գիտական տերմինները, փիլիսոփա մտածողների անունները, բարդ ասոցիացիաները, որ դրանք կորցրել են պոեզիայի յուրահատկությունը՝ մարդկային բուռն զգացմունքայնությունը: Բայց այդուհանդերձ, ինչպես տեսնում ենք, Բրյուսովը որոնում էր նոր ուղիներ, որոնցից շատերը հետագայում օգտագործվել են սովետական գրականության մեջ:

Սովետական հասարակայնությունը 1923 թ. դեկտեմբերին, մեծ հանդիսավորությամբ նշեց ռուս ականավոր բանաստեղծ, գիտնական ու թարգմանիչ Վ. Յա. Բրյուսովի ծննդյան հիսնամյակը: Պոետի մեծարման ժամանակ տպավորիչ ու հուզիչ էր հայ ժողովրդի ներկայացուցչի ելույթը: Ժողովրդական երգիչը, աշուղը կատարեց Սայաթ-Նովայի երգերից մեկը, որին այնպես բարձր է դասել և սքանչելի թարգմանել Բրյուսովը: Վերջացնելով երգը՝ աշուղը հոբելյարի ոտքերի առաջ դրեց հայկական ազգային երաժշտական գործիքը՝ քամանչան, ի նշան երախտագիտության այն մեծ ծառայության համար, որ իր թարգմանություններով և Հայաստանի պոեզիան գրքի խմբագրությամբ մատուցել է Բրյուսովը հայ ժողովրդին ու նրա քնարերգությանը:

Վալերի Բրյուսովի ծննդյան 50-ամյակի առընչությամբ, Հայաստանի ժողկոմխորհի որոշմամբ, նրան շնորհվեց Հայաստանի ժողովրդական պոետի կոչում:

1924 թ. Բրյուսովը կազմում էր իր ստեղծագործությունների ժողովածուն և, ինչպես միշտ, այրվում էր նոր ստեղծագործությունների և գիտական հետազոտությունների մտահղացումներով: Բայց հիվանդությունը (թոքերի բորբոքում) անկողին գցեց անխոնջ մշակին: 1924 թվականի հոկտեմբերի 9-ին վախճանվեց Բրյուսովը և թաղվեց Նովո-Դևիչիե գերեզմանոցում:

Միշտ վառ պահելով Վ. Բրյուսովի ազնիվ, իրոք սխրալի գործունեությունը՝ հայ ժողովուրդը ևս մեծ հանդիսավորությամբ նշեց նրա ծննդյան 100-ամյակը: Նման հանդիսավորությունները ո՛չ միայն ռուս ականավոր պոետի ծառայությունների ճանաչման ու հարգանքի տուրքն են, այլև մեր հայրենիքի ժողովուրդների անխախտ բարեկամության, լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի փայլուն վկայությունը:

**Դ. Վ. ԱՅՎԱԶՅԱՆ**<br>
**Դոցենտ**

# ՍԿԱՆԴԻՆԱՎՅԱՆ ՍՈՑԻԱԼ-ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ ԵՎ ԱՐԴԻ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԸ*

Օ. ՏԻՄԱՇԿՈՎԱ

Հյուսիսային Եվրոպայի երկրները՝ Դանիան, Նորվեգիան և հատկապես Շվեդիան, միջազգային ռեֆորմիստական շրջանների կողմից վաղուց և համառորեն ռեկլամվում են իբրև սոցիալ-դեմոկրատիզմի մի «ամրոց», որտեղ ռեֆորմների ու «Քաղաքացիական հաշտության» ճանապարհին իրականացվում է սոցիալ-քաղաքական մի կարևոր փորձ— կառուցվում է «նոր տիպի» հասարակարգ, ստեղծվում է «առանձնահատուկ» ձևի սոցիալիզմ: Արևմտյան հեղինակներից ով էլ որ խոսի սկանդինավյան որևէ թեմայի շուրջ, չի կարող խուսափել այնպիսի բնութագրումներից, ինչպիսիք են՝ «դեմոկրատական սոցիալիզմ», «զարգացման երրորդ ուղի», «սկանդինավյան բացառիկություն» և այլն:

Հաշվի առնելով նշված հանգամանքները, ինչպես տեսականորեն, նույնպես և միջազգային բանվորական շարժման հեռանկարների տեսակետից կարևոր է որոշել, թե ի՞նչ ուղղությամբ է զարգանում սկանդինավյան սոցիալ-դեմոկրատիան և ի՞նչ է իրենից ներկայացնում նրա կողմից ստեղծվող «նոր հասարակարգը»: Անհրաժեշտ է առաջին հերթին, թեկուզ ընդհանուր գծերով, վերլուծել շվեդական, նորվեգական և դանիական սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների վարած տնտեսական ու սոցիալական քաղաքականությունը, ռեֆորմիստների կարծիքով սոցիալական վերափոխումների հիմնական գործիքը:

Բուրժուական և ռեֆորմիստական գրականության մեջ այդ քաղաքականությունը բնութագրելիս հիմնական շեշտը դրվում է այն բանի վրա, որ դրանում առավել լրիվ հաշվի է առնվում Հյուսիսային Եվրոպայի երկրների զարգացման առանձնահատուկ ուղին, որոնց, մի շարք պատճառներով, իբր խորթ են ինչպես բուրժուական, այնպես էլ սոցիալիստական հեղափոխությունները: «Սկանդինավյան բացառիկությունից» էլ սովորաբար բխում է հասարակական զարգացման «սկանդինավյան մոդելի» յուրահատկությունը:

Մենք չենք անտեսում պատմական պրոցեսների ինքնատիպությունը երկրագնդի այդ մասում: Շվեդիայում, օրինակ, շվեդացի մարքսիստ պատմաբան Կ. Բեկստրյոմի բնութագրմամբ (տե՛ս Кнут Бекстрём. История рабочего движения в Швеции, М., 1961) բուրժուական հեղափոխությունն իրականացվում էր «վերևից», «ներքևից» գործող մշտական ճնշման պայմաններում և դրսևորվում էր սահմանադրական ու սոցիալ-տնտեսական առանձին, երկարաժամկետ ռեֆորմների ձևով: Բայց, չնայած «վերնախավային» բնույթին, դա հեղափոխական պրոցես էր՝ ստորին խավերի մասնակցությամբ, որը նշանավորեց մի արտադրաեղանակի փոխարինումը մեկ ուրիշով և նոր դասակարգերի՝ պրոլետարիատի և բուրժուազիայի պատմական ասպարեզ իջնելը:

* Տպագրվում է որոշ հապավումներով.— Խմբ.:



Այդ շրջանում որոշակի յուրահատկությամբ է աչքի ընկել նաև կապիտալիզմի զարգացումը, որի ամենաբուռն շրջանը եղել է XIX դարի կեսը: Այստեղ իրենց ազդեցությունն են ունեցել այնպիսի հանգամանքներ, ինչպես նորտատիրության բացակայությունը, որը, մի կողմից, հեշտացրել է արտադրության կապիտալիստական եղանակի ձևավորումը, իսկ մյուս կողմից՝ երկար ժամանակով կոնսերվացրել է համքարային ինքնապարփակությունը. որակյալ բանվորական ուժի և նրա անջատված միջնախավի՝ բանվորական արիստոկրատիայի առկայությունը, բանվորական շարժման բարձր ու վաղ կազմակերպվածությունը, սկանդինավյան երկրների էկոնոմիկայի շրջադարձը դեպի արտաքին շուկաները, ի վերջո, երկարատև չեզոքությունը, որը մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը ստեղծել էր տնտեսական զարգացման նպաստավոր պայմաններ:

Սկանդինավիայի սոցիալ-տնտեսական պրոցեսների ողջ յուրահատկությամբ հանդերձ, դրանք լոկ հաստատում էին արտադրության կապիտալիստական եղանակի ընդհանուր օրինաչափությունները: Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ և հատկապես դրանից հետո Շվեդիայում, Դանիայում և Նորվեգիայում, ինչպես և եվրոպական այլ երկրներում սկսեցին գերակշռել պետական-մոնոպոլիստական տենդենցները:

## «ԽԱՂԱՂ ՍՈՑԻԱԼԻԶԱՑԻԱ»

Մոնոպոլիաների և պետության ուժի միավորումը մեկ միասնական մեխանիզմում Սկանդինավիայում դրսևորվում է կառավարության ընդհանուր տնտեսական ֆունկցիաների ընդլայնման և էկոնոմիկայի կարգավորման կոմպլեքսային սիստեմի ստեղծման փորձերում:

Պետական սեփականության աննշան մասշտաբները Սկանդինավիայի պետական մոնոպոլիստական կապիտալիզմի կարևոր առանձնահատկություններից են:

Ճիշտ է, ճգնաժամերի ժամանակ, երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին, պետությունը դիմում էր նաև իր տիրույթների ուղղակի ընդլայնման, եւ նում, «առողջացնում» և մոդեռնացնում էր մասնավոր ձեռնարկությունները («վնասների սոցիալիզացիա»): Իսկ հետպատերազմյան տարիներին, որոնք բնութագրվում են տնտեսական բարձր կոնյունկտուրայով և մոնոպոլիաների համար նպաստավոր արտահանման պայմաններով, առաջնային են դարձել կարգավորման անուղղակի մեթոդները:

«Խառը էկոնոմիկայում», որը պաշտոնական դոկտրինայի համաձայն սոցիալ-դեմոկրատների կողմից ստեղծվող «նոր» հասարակարգի տնտեսական բազան է, պետական ձեռնարկատիրությունը խորթ զավակի վիճակում է: Տնտեսության առաջատար ճյուղերում լիովին տիրապետում է մասնավոր կապիտալը: Շվեդիայում, օրինակ, պետական ձեռնարկություններին ներկայումս բաժին է ընկնում արդյունաբերական արտադրության մոտ 6 տոկոսը: Նորվեգիայում և Դանիայում այդ ցուցանիշն ավելի ցածր է: Համեմատության համար նշենք, որ Ֆրանսիայում և Անգլիայում պետական ձեռնարկությունների թողարկած արտադրանքը կազմում է արդյունաբերական արտադրանքի մոտ $^1/_5$-ը, իսկ Ավստրիայում՝ մոտ $^1/_3$-ը:

Ուշագրավ է, որ Շվեդիայում այժմ պետական ձեռնարկատիրությանը բաժին ընկնող 6 տոկոսի $^4/_5$-ը պետության ձեռքին էր գտնվում արդեն այն ժամանակ, երբ սոցիալ-դեմոկրատները դեռևս չէին սկսել փոքր ի շատե կարևոր դեր խաղալ երկրի տնտեսական կյանքում: Այստեղ իրականացվող «խաղաղ սոցիալիզացիան» (այս բնորոշումը գրականության մեջ երևացել է 50-ական թվականներին) շատ հարմար է մոնոպոլիստական բուրժուազիային: Շվե-

դական գործարար շրջանների օրգան «Աֆերսվերլդեն-ֆինանստիդնինգեն» ժուռնալն այս առիթով գրել է. «Շվեդական սոցիալ-դեմոկրատիայի ծառայություններից մեկն... այն է, որ նրա տնտեսական քաղաքականությունը հազիվ թե կարելի լինի անվանել սոցիալիստական՝ բառիս բուն իմաստով: Նրա տարբերիչ գիծն ամենևին չի եղել կողմնորոշումը դեպի պետական ձեռնարկատիրության զարգացումը»: Այդպիսին է նաև Դանիայի ու Նորվեգիայի սոցիալ-դեմոկրատիայի պրակտիկան: Տնտեսական քաղաքականության միջոցների շարքում «սոցիալիզացիային» հատկացվում է «ապահովիչ կափույրի» ավելի քան համեստ դերը՝ վթարային իրավիճակների համար: Իսկ պետական սեփականության չափերի որոշ ընդլայնումը վերջին 10—15 տարում ևս բխում է օբյեկտիվ պայմաններից՝ կապիտալիստական էկոնոմիկայի անկայունության ուժեղացումից, ինչպես և հատկապես գիտատեխնիկական հեղափոխության բուռն ընթացքի հարուցած սոցիալ-տնտեսական նոր պրոբլեմները բյուջեի հաշվին լուծելու անհրաժեշտությունից:

Ելնելով այնպիսի խնդիրներից, ինչպիսիք են առևտրական ռիսկի հետ կապված արտադրության նոր տեսակների ստեղծումը և արտահանության ավանդական ճյուղերի մոդեռնացումը, գիտական ուսումնասիրությունների ու մշակումների արագացումը, պայքարը շրջապատի ապականման դեմ, շրջանների անհամամասնությունների վերացումը և տնտեսապես հետամնաց շրջանների (Շվեդիա և Նորվեգիա) ինդուստրացումը, վերջապես, ռազմական ծախսերի աճը, հարկ եղավ ոչ միայն զգալիորեն ավելացնել պետական սպառումը, այլև անմիջականորեն ընդլայնել պետական սեփականությունը:

Ժամանակակից փուլի կարևոր գիծն է ստեղծվող արդյունաբերական ձեռնարկությունների և վարկային հաստատությունների գերազանցապես խառը բնույթը, որն արտացոլում է պետական և մասնավոր մոնոպոլիստական սեկտորների հետագա միաձուլման պրոցեսը: Շվեդիայում վերջին տասնամյակում ստեղծված արդյունաբերական ու վարկային գրեթե բոլոր ընկերությունները— «Սվենսկա ինդուստրիետաբլերինգը», «ԱՍԵԱ—Ատոմ» կոնսորցիումը, «Ինդուստրիկրեդիտը», «Ֆյորետագսկրեդիտը» և այլն, խառը բնույթ ունեն:

Սկանդինավյան երեք երկրներում էլ լայնորեն կիրառվում է ֆինանսական օլիգարխիայի և պետության ներկայացուցիչների համագործակցությունը կառավարական ու կիսակառավարական տարբեր կազմակերպությունների՝ կոմիտեների, հանձնաժողովների խորհուրդների համատեղ մասնակցությամբ, որոնք մշակում են ընդհանուր տնտեսական ստրատեգիան և լուծում տնտեսական կոնկրետ խնդիրներ: Շվեդիայում ավանդույթ են դարձել կառավարության, գործարար շրջանների ներկայացուցիչների և արհմիությունների առաջնորդների մշտական ու կանոնավոր հանդիպումները: «Շվեդացի ձեռնարկատերերը չունեն քաղաքական կոմպլեքս (այսինքն՝ թշնամանք սոցիալ-դեմոկրատների հանդեպ.—Օ. Տ.), և նրանք շահագրգռված են համագործակցությամբ»,— գրում էր բուրժուական «Դագենս նյուխետեր» թերթը՝ մեկնաբանելով 1971 թվականին կայացած հերթական հանդիպումը „Dagens nyheter“ 21-X, 1971):

Այսպիսով, Սկանդինավյան երկրների էկոնոմիկան հեռուն չի գնացել անգամ կապիտալիստական ազգայնացման ուղղությամբ: Այստեղ ստեղծված «խառը տնտեսական սիստեմի» հիմքը մնում է արտադրամիջոցների մասնավոր մոնոպոլիստական սեփականությունը առաջատար ճյուղերում, մոնոպոլիստական բուրժուազիայի և կառավարող վերնախավի սերտ փոխգործողությունը՝ յուրատեսակ «աշխատանքի բաժանմամբ. կառավարությունն է պատասխանատու էկոնոմիկայի նորմալ զարգացման և քաղաքական կայունության համար այն ժամանակ, երբ վերջնական որոշումներ կայացնելու իրավունքը խոշոր կապիտալի ձեռքումն է»:

## ԼՈԶՈՒՆԳՆԵՐ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ

Շվեդիայում, Դանիայում և Նորվեգիայում լայնորեն թմբկահարվող տնտեսական քաղաքականությունն իր առջև դնում է մի քանի նպատակ («կա-



խարդական հնգանկյունի») լրիվ զբաղվածություն, տնտեսական աճի կայուն տեմպեր, գների կայունություն, եկամուտների հավասարաչափ բաշխում, վճարային բալանսների հավասարակշռվածություն: Ընդսմին, հրաժարվելով էկոնոմիկայի առաջատար ճյուղերի պետականացումից («ինչու սպանել ոսկի ձու ածող հավին»), սոցիալ-դեմոկրատները իբրև հասարակության սոցիալիստական վերափոխումներ են ներկայացնում պետական-մոնոպոլիստական միջոցառումների ողջ կոմպլեքսը:

Շվեդացի հայտնի տնտեսագետ Կ. Վելինդերը հետևյալ կերպ է ձևակերպել ժամանակակից ռեֆորմիզմի տնտեսական քրեդոն. «Մասնավոր անձինք պահպանում են իրենց ունեցվածքը, բայց աստիճանաբար սահմանափակվում է այդ ունեցվածքը լրիվ տնօրինելու նրանց իրավունքը, և եկամուտներն ավելի ու ավելի են սոցիալականացվում հարկերի օգնությամբ: Սոցիալիզմը, որն այդ կերպ փորձում է սինթեզի հասնել մասնավոր կապիտալիստական և զուտ կոլեկտիվ տնտեսության միջև, անվանում են ռեֆորմիզմ»:

«Դեմոկրատական սոցիալիզմի» չափանիշը՝ Շվեդիան, իր վրա է գրավում միջազգային ռեֆորմիստների սևեռուն ուշադրությունը, որոնք քանիցս խորհուրդ են տվել հայացքներն ուղղել դեպի հյուսիս և սովորել շվեդներից: Եվ, որպեսզի հաստատեն ռեֆորմիստական քաղաքականության հաջողությունը, սովորաբար վկայակոչում են բավականին բարձր կենսամակարդակը, սոցիալական ապահովության լայն սիստեմը, բնակչության մեկ շնչին ընկնող ազգային համախառն արդյունքի չափերը: Այդ ցուցանիշով Շվեդիան գրավում է առաջին տեղը Արևմտյան Եվրոպայում (1971 թ. ավելի քան 4 հազար դոլար). «հարուստ պետությունների» թվին են դասվում նաև Դանիան ու Նորվեգիան:

Հարց է ծագում՝ գոյություն ունի՞ արդյոք առանձնահատուկ սոցիալ-դեմոկրատական քաղաքականություն, այսինքն՝ այնպիսի քաղաքականություն, որն սկզբունքորեն տարբերվում է ժամանակակից բուրժուական պետության պետական-մոնոպոլիստական միջոցառումներից և ի՞նչ չափով են Շվեդիայի, Դանիայի և Նորվեգիայի կառավարությունները կարողանում ներգործել սոցիալ-տնտեսական պրոցեսների վրա:

Այս հարցին պատասխանելու համար հարկավոր է քննության առնել ինչպես սկանդինավյան երկրների հարաբերական տնտեսական բարեհաջողության օբյեկտիվ հիմքը, այնպես էլ այն սուբյեկտիվ գործոնները, որոնք կապված են կառավարության տնտեսական և սոցիալական գործունեության հետ:

Ինչպես հայտնի է, Վ. Ի. Լենինը դեռևս դարասկզբին աշխատանքի միջազգային բաժանման մեջ ունեցած իրենց առանձնահատուկ տեղով մի քանի փոքր երկրներ դասում էր «մանր արտոնյալ ազգերի» շարքը (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 22, էջ 457): Այդ դիրքը Դանիան և Շվեդիան մինչև օրս էլ պահպանում են: Որոշ վերապահումներով, դրանց կողքին կարելի է դասել նաև ժամանակակից Նորվեգիային: Առանձին ապրանքների արտադրության ոլորտում կատարված մասնագիտացումը Շվեդիային, Նորվեգիային և Դանիային հնարավորություն է տվել արտադրանքի որոշ տեսակներով մենաշնորհային նպաստավոր և առաջատար դիրքեր գրավել համաշխարհային շուկաներում: Այսպես, շվեդական «ՍԿՖ» ընկերության ձեռնարկություններում արտադրվում է աշխարհում յուրաքանչյուր հինգերորդ առանցքակալը, շվեդական պողպատով «սափրվում է ամբողջ աշխարհը»: Փոքրիկ Նորվեգիան գրավում է աշխարհում չորրորդ տեղը առևտրական նավատորմի տոննաժով և երրորդ տեղը՝ ալյումինի ձուլմամբ: Արդյունաբերական մասնագիտացման ուղին է թևակոխել նաև Դանիան, որը մինչև վերջերս էլ եղել է գլխավորապես բարձրորակ գյուղատնտեսական արտադրանք մատակարարողը: Բայց կա նաև մեդալի հակառակ կողմը՝ այդ երկրների գնալով աճող կախումը համաշխարհային շուկայից: Սկանդինավիայից արտահանվում է ազգային համախառն արդյունքի մոտ 25, և արդյունաբերական արտադրանքի մինչև 40 տոկոսը:

Հետպատերազմյան ժամանակաշրջանում և առանձնապես վերջին մեկ

և կես տասնամյակում, Շվեդիայի, Դանիայի և Նորվեգիայի էկոնոմիկայում տեղի ունեցան կառուցվածքային կարևոր փոփոխություններ: Վերջին հաշվով այդ տեղաշարժերը (ինչպես և զարգացած կապիտալիստական մյուս երկրներում) պայմանավորված են համաշխարհային երկու հակադիր սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի մրցությամբ, կապիտալիստական շուկայի նեղացման պայմաններում մրցապայքարի խիստ սրմամբ, գիտա-տեխնիկական հեղափոխությամբ:

Այդ բանը չէր կարող չանդրադառնալ կառուցվածքային մոդեռնացման բնույթի վրա: Գնալով ավելի շատ է առաջին պլանի վրա քաշվում նոր տիպի մասնագիտացումը: Շվեդական արդյունաբերությունը, օրինակ, վճռականորեն «դեմքով շուռ եկավ» դեպի նոր հեռանկարային ճյուղերը (էլեկտրոնիկա, ճշգրիտ մեքենաշինություն, միջուկային էներգետիկա): Արագ տեմպերով զարգանում են նոր ճյուղերը Դանիայում (դիզելաշինություն, ռադիոտեխնիկա) և Նորվեգիայում (նավերի շարժիչներ, էլեկտրատեխնիկա, կապի միջոցներ): Նորվեգիայում ավանդական ապրանքների բաժինն արտահանության մեջ (նավեր, ձկնեղեն, անտառանյութ և մետաղ) նկատելիորեն իջել է 60-ական թվականներին ($^{2}/_{3}$—$^{1}/_{2}$), իսկ պատրաստի առարկաներինը՝ տասը տարում 18-ից հասել է 36 տոկոսի: Նորվեգիայի էկոնոմիկայում կառուցվածքային տեղաշարժերը տեղի են ունենում ողջ տնտեսության բավական արագ զարգացման պայմաններում: 70-ական թվականներին նա մտավ բնակչության մեկ շնչին ամենից ավելի շատ արտադրանք տվող 10 երկրների շարքը:

Կառուցվածքային մոդեռնացման և մասնագիտացման հետագա ուժեղացման պրոցեսներում ավելի ու ավելի ակտիվ է մասնակցում պետությունը, որն առավելագույն չափով մոբիլիզացնում է իր տրամադրության տակ գտնվող միջոցները՝ ստեղծելու բարդացած մրցապայքարում այնպիսի պայմաններ, որոնք առաջատար մոնոպոլիաներին ապահովեն նպաստավոր դիրքեր: Մոնոպոլիաների համար առավելագույն նպաստավոր կլիմայի ստեղծմանն է ծառայում վարկա-դրամական քաղաքականությունը: Պետությունը լայնորեն ֆինանսավորում է խոշոր մոնոպոլիաների արտաքին տնտեսական էքսպանսիան, ամեն կերպ աջակցում արտասահմանում ստեղծելու դրանց հենակետեր ու մասնաճյուղեր:

Ինչ վերաբերում է հարկային քաղաքականությանը, որը ռեֆորմիստական գաղափարախոսները ներկայացնում են իբրև «եկամուտների սոցիալիզացիա», ապա իրենց համար շահավետ կառավարական կապիտալ ներդրումների քաղաքականության, ամորտիզացիոն արագ դուրսգրումների (տարեկան մինչև 30 տոկոս), տարբեր տեսակ ոչ հարկային ֆոնդերի օգտին կատարվող խոշոր գումարների փոխանցումների օգնությամբ մոնոպոլիաները հեշտությամբ փոխհատուցում են բաժնետիրական ընկերությունների շահույթների բավական բարձր հարկումները (ավելի քան 50 տոկոս Շվեդիայում և Նորվեգիայում և մոտ 40 տոկոս Դանիայում):

60-ական թվականներին ուշադրության կենտրոնում հայտնվեց «նոր կառուցվածքային քաղաքականությունը», որի խնդիրն էր տնտեսական կառուցվածքը մոդեռնացնել գիտատեխնիկական հեղափոխության պահանջներին համապատասխան և խթանել համակենտրոնացման պրոցեսները («կառուցվածքային ռացիոնալիզացիա»): Այդպիսի քաղաքականության անհրաժեշտությունը հիմնավորելու համար Շվեդիայում պետական օրգանների առաջադրանքով մի խումբ տնտեսագետներ կատարեցին հատուկ ուսումնասիրություն և մշեցին համապատասխան երկարաժամկետ պետական միջոցառումների մի սիստեմ:

Դրանց ֆինանսավորման նպատակով տարբեր տեսակ վարկային հաստատություններից բացի, ստեղծվել են դրամական հատուկ ֆոնդեր: Շվեդիայում 1967 թ. պետական նոր ինվեստիցիոն բանկի բազայի վրա գործում է զարգացման ֆոնդը: Նրա խնդիրն է խթանել կառուցվածքային տեղաշարժերը, նպաստել կապիտալ ներդրումներն առավել կարևոր ու հեռանկարային ոլորտները փոխադրելու գործին, ինչպես նաև պայմաններ ստեղծել մի քանի



ավանդական ճյուղերի վերակառուցման և մոդեռնացման համար: Շվեդիայում և Նորվեգիայում փորձեր են արվում լուծելու այդ երկրների համար հրատապ ռեգիոնալ պրոբլեմները՝ սկանդինավյան մամուլում իրավամբ «ներքին գաղութներ» անվանվող թույլ զարգացած բնեռամերձ գոտիների ինդուստրացման միջոցով:

«Կառուցվածքային ռացիոնալիզացիայի» խնդիրներին են ծառայում արդյունաբերության և ներքին շուկայի վերակառուցման համատեղ գործողություններին նպաստող ֆոնդը և աշխատանքի արտադրողականության ինստիտուտը Նորվեգիայում, մի շարք հատուկ ինստիտուտներ՝ Դանիայում: Սակայն այս երկու պետություններում «կառուցվածքային քաղաքականությունը» դեռ այնպես լայնորեն չի ծավալվել, ինչպես Շվեդիայում:

Պետության խրախուսիչ քաղաքականության շնորհիվ երեք երկրներում էլ առանձնապես ինտենսիվ բնույթ են ստացել համակենտրոնացման պրոցեսները: Շվեդական արդյունաբերության մեջ 60-ական թթ. տարեկան տեղի էր ունենում 300—400 միավորում և կլանում՝ նախորդ տասնամյակների 60-ի դիմաց: Դանիայում վերջին ժամանակներս միավորվել են «Տրիգե» և «Տիտան» խոշորագույն էլեկտրատեխնիկական ընկերությունները, սննդի «Պլումռոզե» և «Բովեն» ընկերությունները, ինչպես և գարեջրի հայտնի «Կարլսբերգ» և «Տյուբորգ» ֆիրմաները: «Կառուցվածքային ռացիոնալիզացիան» հանգեցրեց արտադրամիավորների լավագույն չափերի ավելացմանը Նորվեգիայում, որի էկոնոմիկային հատուկ է մանր և միջակ ձեռնարկությունների գերակշռությունը:

Երկու հակադիր սոցիալական սիստեմների ծավալուն մրցության պայմաններում կառավարությունների «կայունացման ծրագրերում» որպես տնտեսական քաղաքականության մշտական գործոն, առավել կարևոր տեղ են գրավում հակացիկլիկ միջոցառումները: Շվեդիայում, օրինակ, 1955 թ. գործում է, այսպես կոչված, կոնյունկտուրային-ինվեստիցիոն ֆոնդը: Դրա խնդիրն է հարթել տնտեսական տատանումները և ներգործել զբաղվածության մակարդակի վրա:

Սկանդինավիայում կառավարող շրջանների տնտեսական քաղաքականությունը բնութագրելիս հարկ է նկատի ունենալ, որ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները մեծ կամ փոքր արդյունավետությամբ օգտագործելու իր փորձերում այդ երկրների պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը անխուսափելիորեն դեմ է առնում կարծրացած սահմանների, որոնք բխում են կապիտալիզմի բնույթից:

Պետությունը չկարողացավ զսպել ինֆլյացիան, որը դարձել է տնտեսական կյանքի մշտական ուղեկիցը: 50-ական թթ. կեսերին գների նկատմամբ վերահսկողություն սահմանելուց հրաժարվելն ավելի արագացրեց ինֆլյացիոն պրոցեսները: Պաշտոնական հաշվումների համաձայն, 1946—1969 թթ. շվեդական կրոնի գնողունակությունն իջել է ավելի քան երկու անգամ: Ավելի արագ բարձրացել են գները Դանիայում և Նորվեգիայում: Դրական արդյունքներ չտվեցին նաև վճարային բալանսները հավասարակշռելու միջոցառումները: Դրանց խրոնիկական դեֆիցիտն սկանդինավյան երկրների արդի էտապի զարգացման բնորոշ գծերից է: Վերջին երկու տարում նկատելիորեն վատացել է նաև «զբաղվածության բալանսը»: Պրակտիկան ցույց է տվել, որ ամեն անգամ որևէ նպատակի իրագործումը մյուս օղակների կարգավորման մեխանիզմում առաջացրել է խափանումներ ու ձախողումներ:

Պետական կարգավորման պալիատիվ բնույթն առանձնապես ակնառու երևան է գալիս տնտեսական ճգնաժամերի շրջանում: 1971 թ. Շվեդիան ապրեց նշանակալի անկում, որն ամենաուժեղն էր ամբողջ հետպատերազմյան շրջանում: Գործարար ակտիվության խթանման, զբաղվածության բարձրացման ուղղությամբ ձեռնարկված պետական միջոցներն արդյունք չտվին: 1971 թ. ավարտին երկրում եղել են մոտ 120 հազար գործազուրկներ՝ ամենաբազմաքանակը վերջին 30 տարում (ակտիվ բնակչության մոտ 3 տոկոսը): Գործազրկությունը բարձր է մնացել նաև 1972 թ. (մոտ 100 հազար): Դանիայում

1973 թ. սկզբին անգործ էր արհմիությունների անդամների գրեթե 4 տոկոսը:

Վերջին ժամանակներս կատարված բազմակողմանի հետազոտությունները հավաստի ցույց տվին, որ ներկա փուլին բնորոշ իրական իշխանության կենտրոնացումը պետական-արդյունաբերական կոմպլեքսի ձեռքում (սկանդինավյան տնտեսագիտական գրականության մեջ ավելի հաճախ այս տերմինով են անվանում պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը) (տե՛ս, օրինակ. «Dagens nyheter» 29-I, 1971) տեղի է ունենում բնավ ոչ պետական սեկտորի հաշվին:

«Երրորդ ուղու կլասիկ երկրում» (ինչպես Արևմուտքում անվանվում է Շվեդիան) կա զարգացած բանկային սիստեմի վրա հենված ֆինանսա-արդյունաբերական 17 խումբ, որոնք արտահանման կարևորագույն ճյուղերում վերահսկում են արտադրության 70—85 տոկոսին: Այդ խմբերից հիմնականներն են Վալլենբերգների դինաստիան, Բրուստրյոմների «ծովային տերությունը», Յոնսոնների արդյունաբերողների ընտանիքը, գրահրատարակիչ Բոնիերները:

1972 թ. սկզբին «Ստոկհոլմս էնշիլդա բանկը», որին վերահսկում են Վալլենբերգները, ձուլվեց երկրի առևտրական մի այլ խոշոր բանկի «Սկանդինավիսկա բանկեն»-ի հետ: Դրա հիման վրա ստեղծված «Սկանդինավիսկա էնշիլդա բանկը» այժմ վարկային-ֆինանսական ամենախոշոր հաստատությունն է ոչ միայն Շվեդիայում, այլև ողջ Հյուսիսային Եվրոպայում: Ֆինանսական երկու հսկաների միավորումն ավելի ամրապնդեց Վալլենբերգների դիրքերը:

Շվեդիայում «պետություն պետության մեջ» են անվանում Յոնսոնների արդյունաբերական խումբը, որը գործնականորեն վերահսկում է արդյունաբերության բոլոր կարևորագույն ճյուղերը: «Սկանդինավյան ֆեոդալների» շարքին են դասում նաև Բոնիերների լրագրային կայսրությունը, որը, արտասահմանյան մասնագետների կարծիքով, ավելի ընդարձակ է ու ավելի հզոր, քան Ծպրինգերի արևմտագերմանական լրագրային տիրույթները:

Նորվեգիայի էկոնոմիկայում ևս տոն են տալիս մի քանի ազդեցիկ խմբավորումներ: Խոշոր երկրների սպասարկման գործում իբրև «ծովային փոխադրող» մասնագիտացած նորվեգական մոնոպոլիաները այժմ առավել վճռականորեն են թափանցում արտադրության նոր ոլորտները:

Դանիայում իշխում են այն խմբերը, որոնք համակենտրոնանում են «Լանդմանդսբանկեն» և առևտրա-արդյունաբերական «Եստ-ազիատիսկե կոմպանի» (միլիարդատերեր Մյոլլեր և Լաուրիտցեն) ընկերությունների շուրջը:

Երբ մոնոպոլիան արդեն առաջացել է և միլիարդների հետ է խաղում, այն բացարձակ անխուսափելիությամբ թափանցում է հասարակական կյանքի բոլոր կողմերը, անկախ քաղաքական կառուցվածքից և ամեն տեսակ այլ «մանրամասնություններից» (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 22, էջ 312): Վ. Ի. Լենինի դեռ դարասկզբին ասած այս խոսքերը, հաստատվում են սկանդինավյան երկրների 70-ական թթ. սոցիալ-տնտեսական իրականությամբ:

## ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՄԱՆԵՎՐՈՒՄԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ

Արևմտյան մամուլում Շվեդիան հաճախ անվանում են պրագմատիկ միջոցներով իրականացվող «սոցիալական ուտոպիա»: «Շպիգել» ժուռնալի կարծիքով, սոցիալական բնագավառում շվեդներն արդեն հասել են այն ամենին, ինչ արևմտագերմանական սոցիալ-դեմոկրատիան ծրագրել է միայն 80-ական թթ. կեսերի համար: Արևմուտքում հաճախ կարելի է լսել նաև այնպիսի կարծիք, թե Շվեդիայում գոյություն ունի «կապիտալիստական արտադրություն, բայց սոցիալիստական բաշխում»: Մենք արդեն քննության առանք արտադրության բնույթը և «խառը տնտեսական սիստեմի» էությունը: Սակայն ինչպիսին է բաշխումը:

Հետպատերազմյան տարիներին ո՛չ միայն Շվեդիայում, այլև Հյուսիսային Եվրոպայի մյուս երկրներում, բարձրացել է աշխատավարձը, իրականացվել են էական սոցիալական ռեֆորմներ: Համառ պայքարում աշխատավորներին հաջողվեց բարելավել իրենց նյութական ու սոցիալական դրությունը: Շվեդիայում, օրինակ, սահմանադրական կարգով հաստատվել են ծերության կենսաթոշակներ և դրանցից բացի ծառայողական թոշակներ աշխատանքի ստաժի համար, ապահովագրություն հիվանդության դեպքում և ընտանեկան նպաստներ, չորսշաբաթյա վճարովի արձակուրդ: 1973 թ. ուժի մեջ մտավ 40-ժամյա աշխատանքային շաբաթվա մասին օրենքը: 60-ական թթ. վերակառուցվեց կրթության սիստեմը. սահմանվել է իննամյա պարտադիր ուսուցում, դյուրին են դարձել բարձրագույն կրթություն ստանալու պայմանները, ընդլայնվել է չափահաս բնակչության պրոֆեսիոնալ պատրաստության բազան: Դրա շնորհիվ 70-ական թթ. սկզբներին երկրի բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են մոտ 115 հազար ուսանող (1960—1961 թթ. մոտ 36 հազար):

Հարկ է ընդգծել, որ եթե որոշ ռեֆորմներ իրականացվեցին համեմատաբար ոչ հիվանդագին (բուրժուազիան որոշ չափով նույնիսկ շահագրգռված էր, որ սոցիալական վճարումների ձևով «հարուստ պետության» ուսերին բարդվի բանվորական ուժի վերարտադրության աճած ծախսերի մի մասը), ապա այն օրինագծերը, որոնք անմիջականորեն վնասում են ձեռնարկատերերի շահերին, վերջիններս միշտ էլ դիմավորում էին սվիններով*: Հատկապես դրամատիկական բնույթ ստացավ 50-ական թթ. վերջին Շվեդիայում ծավալված պայքարը գործատերերի միջոցների հաշվին ծառայողական կենսաթոշակների մասին կառավարական օրինագծի շուրջը: Այդ օրինագիծն ընդունվեց միայն սոցիալ-դեմոկրատների և կոմունիստների գործողությունների կոորդինացման շնորհիվ, որոնք համատեղ հանդես եկան բուրժուական կուսակցությունների բլոկի դեմ: Բուրժուազիան համառորեն դիմադրում էր նաև աշխատանքային շաբաթվա տևողությունը կրճատելու վերաբերյալ աշխատավորների պահանջին:

Իսկ ինչ վերաբերում է սոցիալ-դեմոկրատիայի գլխավոր լոզունգներից մեկին՝ եկամուտների հավասարեցմանը՝ որպես հասարակության մեջ դասակարգային տարբերությունների վերացման միջոցի, ապա այս տեսակետից «երրորդ ուղու» պետություններում ոչ մի փոփոխություն տեղի չի ունեցել: Սոցիալ-դեմոկրատիան Դանիայում և Նորվեգիայում սովորաբար վկայակոչում է «օբյեկտիվ գործոններ»՝ պառլամենտական դիրքերի խոցելիությունը: Բայց Շվեդիայում ևս, որտեղ այդ փաստարկը «չի գործում», տիրապետող դասակարգի և վարձու աշխատանքի մարդկանց եկամուտների միջև եղած ճեղքվածքն առաջվա նման պակաս մեծ չէ, քան ցանկացած այլ կապիտալիստական երկրում: Ընդ որում շվեդական բուրժուազիան պնդում է, թե կառավարության տնտեսական քաղաքականությունը՝ ընկերությունների մեծ չափերի հարկումը, աշխատավարձի աճի հետ միասին, առանց այդ էլ տանում է դեպի բանվորների անչափ «հարստացում» և «ձեռնարկատերերի քայքայում» դեպի շվեդական արտահանության մրցունակության կրճատում: Սակայն «հարուստ բանվորների» և «աղքատ ձեռնարկատերերի» մասին առասպելը անհամեմատելի է փաստերի հետ: Եթե նույնիսկ հաշվի առնենք, որ ինդուստրիալ բանվորների աշխատավարձը Շվեդիայում աճել է ավելի արագ, քան կապիտալիստական մյուս երկրներում (դա բացատրվում է ինչպես աշխատանքի արտադրողականության աճով և աշխատանքային պրոցեսների ինտենսիֆիկացմամբ, այնպես էլ, և դա գլխավորն է, աշխատավորների համառ պայքարով), այնուամենայնիվ այն զգալիորեն ետ էր մնում մոնոպոլիաների շահույթների աճից: 1965—1970 թթ. աշխատավարձը արդյունաբերության մեջ միջին հաշվով ավելացել է տարեկան մոտ 8, իսկ խոշորագույն մոնոպոլիաների շահույթները՝ 15—20 տոկոսով: Զարմանալի չէ, որ հետպատերազմյան շրջանում միլիոնատերերի թիվը Շվեդիայում ավելացել է հինգ անգամ:

---

* *Ուշադրավ է, որ սոցիալական ռեֆորմները Դանիայում և Նորվեգիայում ընդհանուր առմամբ զգալիորեն ավելի համեստ են, քան Շվեդիայում: Երբեմն դրանց իրականացումն արգելակում են բուրժուական կառավարությունները:*

Նշենք, որ ամենևին էլ բնակչության ոչ բոլոր խավերի եկամուտներն են աճել: 70-ական թթ. շեմին Սկանդինավիայում սուր և անլուծելի էր բնակչության զգալի մասի ցածր աշխատավարձի պրոբլեմը: Դրան հարկ է ավելացնել սոցիալական ապահովության ոչ կատարյալ սիստեմը— կենսաթոշակ ստանալու տարիքային բարձր ցենզը (67 տարեկան), աշխատանքի ոչ բավարար արդյունավետ պաշտպանությունը, հիվանդանոցների ու բժիշկների պակասը, բուժսպասարկման թանկությունը և այլն: Շվեդացի երկու հայտնի սոցիոլոգներ գրում են, որ «Բարեկեցության օրինակելի» պետությունում», ինչպես անվանում են Շվեդիան, «տնտեսապես ավելի վատ ապահովված մարդիկ ունեն վատ բնակարան, նրանց աշխատանքային օրն ավելի երկար է, արձակուրդն ավելի կարճատև: Միաժամանակ նրանց աշխատանքն ավելի կեղտոտ է, ավելի միապաղաղ, ավելի վտանգավոր, ավելի վատ է վարձատրվում և պակաս հետաքրքիր, քան բնակչության մյուս խմբերի ներկայացուցիչներինը: Ցածր է նրանց սոցիալական վարկը, ավելի մեծ է գործազուրկ մնալու վտանգը, ավելի քիչ են սոցիալական բարիքները»: Կապիտալիզմի պայմաններում գիտատեխնիկական հեղափոխության ընդհանուր բացասական հետևանքներով հանդերձ «սոցիալական ինստիտուտների» անկատարելությամբ են հեղինակները բացատրում նաև սկանդինավյան երկրներին բնորոշ այն երևույթը, ինչպիսին է ապադասակարգայնացած խմբերի բուռն աճը հատկապես երիտասարդ սերնդի մեջ:

Հետևաբար, սոցիալական բարենորոգման բնագավառում ևս սոցիալ-դեմոկրատների պրագմատիկ միջոցառումները Շվեդիային, Նորվեգիային և Դանիային չմոտեցրին այն «սոցիալական իդեալներին», որոնք նշված են այդ երկրների սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների ծրագրերում:

## «ԻՆԴՈՒՍՏՐԻԱԼ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄՈԴԵԼԸ»

Բուրժուական հետազոտողները «սկանդինավյան բացառիկության» ընդհանուր ցուցանիշ են համարում նաև դասակարգային պայքարի որոշ առանձնահատկություններն այդ երկրներում: Ռեֆորմիստական գաղափարախոսները շատ են սիրում խոսել այսպես կոչված «ինքնասահմանափակման սկանդինավյան սիստեմի» մասին, աշխատանքային բախումների «խաղաղ» լուծման սկզբունքի մասին, աշխատանքի ու կապիտալի «փոխհարմարման» մասին, աշխատանքի շուկայի ավանդական կայունության մասին:

«Ինդուստրիալ հարաբերությունների սկանդինավյան մոդելի» ճիշտ գնահատականը տալու համար պետք է նկատի ունենալ առնվազն երկու հանգամանք: Նախ, բոլոր երկրներում էլ գործադուլային պայքարը սահմանափակված է դեռևս 20-ական թթ. ընդունված հատուկ օրենսդրությամբ, որը «վայրագ» է կոչում կոլեկտիվ պայմանագրի գործողության շրջանում կազմակերպված բոլոր գործադուլները: Երկրորդ, սոցիալ-դեմոկրատների անմիջական ազդեցության տակ գտնվող ռեֆորմիստական արհմիությունները երկար ժամանակ «դասակարգային հաշտությունը պահպանելու համար» բոլոր միջոցներով փորձում էին բանվորական շարժումը խցկել «չափավորության» և ողջախոհության պրոկրուստյան մահիճը: Այսպես, դեռ 30-ական թթ. երեք երկրներում արհմիութենական կենտրոնական կազմակերպությունների և ձեռնարկատիրական միությունների միջև կնքվել են համաձայնագրեր աշխատանքային բախումները կարգավորելու կանոնների մասին: Այդ համաձայնագրերի խնդիրն էր՝ նվազագույնի հասցնել գործադուլներն ու ամեն տեսակ աշխատանքային բախումները: Դանիայում այդպիսի համաձայնագիր էր ստորագրվել 1934, Նորվեգիայում՝ 1935, Շվեդիայում՝ 1938 թվականներին:

Բայց սկանդինավյան երկրների աշխատավորներին քաջ հայտնի են ձեռնարկատերերի «կամավոր» զիջումների գինը, և այն, թե հաճախ ինչպիսի դրամատիկական բախումներով է ուղեկցվում աշխատավարձի տարիֆային դրույքների ամեն մի նոր վերանայում: 1966թ., օրինակ, շվեդական ձեռնարկատերերի միավորումը պահանջեց, որ Շվեդիայի արհմիությունների կենտրոնական միավորումը (ՇԱԿՄ) ընդունի աշխատավորների համար ակնհայ-



տորեն ոչ ձեռնտու կոլեկտիվ պայմանագրի պայմաններ, իսկ հրաժարվելու դեպքում սպառնում էր լոկաուտ կազմակերպել: «Կապիտալիստների ուլտիմատումի» հետևանքով աշխատանքից զրկվելու վտանգն էր սպառնում ավելի քան 800 հազար աշխատավորների:

Գործադուլային պայքարը Հյուսիսային Եվրոպայի երկրներում փաստորեն երբեք չի դադարել, թեպետ որոշ շրջաններում թուլացել է: 70-ական թթ. սկզբին, որոշ դադարից հետո, ամբողջ Սկանդինավիայով անցավ գործադուլների ալիքը: 1969 թ. դեկտեմբերին Շվեդիայի հյուսիսում, պետական «ԼԿԱԲ» կոնցեռնի բազմաթիվ ածխահորերից մեկում ի նշան բողոքի ընդդեմ ադմինիստրացիայի կոպտության, բռնկեց «վայրի» նստած գործադուլը: Բայց այդ կայծն էլ բավական եղավ, որ ինչպես գրել էր սոցիալ-դեմոկրատական «Տիդեն» ժուռնալը, վառ բոցով հրավառվեին տարիներ շարունակ կուտակված «սոցիալական դժգոհության» պաշարները»: Հանքափորներից հետո երկրի հարավում՝ Գյոտեբորգում, աշխատանքը դադարեցրին դոկերները: Գործադուլին միացան «Վոլվո», «Էլեկտրոլյուքս», «Էրիքսոն» կոնցեռնների բանվորները: Գործադուլային շարժումն ընդգրկեց ոչ միայն բանվորներին, այլև ծառայողներին: Երկաթուղիների պետական ծառայողների և ուսուցիչների գործադուլը, որ տևեց 1971 թ. ողջ գարնանը, ստիպեց Շվեդիայի կառավարությանը՝ փոխել նման բախումներին միջամտելու իր ավանդույթը և պառլամենտի միջոցով արտակարգ օրենք ընդունեց աշխատանքի հարկադիր վերսկսման մասին:

Այս բոլոր գործադուլները չէին ստացել ռեֆորմիստական ղեկավարների հավանությունը, համարվում էին «վայրագ» և արհմիութենական վերնախավերում դատապարտվում որպես բախումների կարգավորման «սխալ մեթոդ»:

Աշխատանքի և կապիտալի շահերի անհաշտելիության մասին է վկայում նաև այս տարվա մարտին Դանիայում ծավալված դասակարգային մարտերի թափը: Երկրի բանվոր դասակարգը ընդհանուր գործադուլով պատասխանեց ձեռնարկատերերի հարձակմանը և Եվրոպայի հետ տրեստների միավորման «ծախքերն» աշխատավորների ուսերին բարդելու նրանց փորձերին: Մոտ 260 հազարանոց գործադուլն ընդգրկել էր էկոնոմիկայի բոլոր առաջատար ճյուղերը: Գործադուլն սկսվեց այն բանից հետո, երբ ձեռնարկատերերը նոր կոլեկտիվ պայմանագրեր կնքելու նպատակով Դանիայի արհմիությունների կենտրոնական միավորման հետ վարած բանակցությունների ժամանակ հրաժարվեցին բավարարել բանվորների ու ծառայողների պահանջները աշխատավարձը բարձրացնելու, աշխատանքային շաբաթը կրճատելու, տղամարդկանց և կանանց աշխատանքի հավասար վարձատրություն սահմանելու, թանկության համար հավելյալ վճար մտցնելու մասին: Գործադուլն ուղեկցվում էր Դանիայի մայրաքաղաքում կայացած բազմահազարանոց ցույցով:

Գործադուլային պայքարից հեռու չէ նաև Նորվեգիան: 1972 թ. մայիսին տեղի ունեցավ Նորվեգիայի պատմության մեջ առաջին պետական ծառայողների միության գործադուլը:

Վերջին ժամանակաշրջանի գործադուլային շարժման կարևոր գիծն է ելույթների դիապազոնի և բնույթի ընդլայնումը: Բանվորները վճռականորեն բողոքում են աշխատանքի հյուծիչ տեմպերի դեմ, պահանջում ընդլայնել արտադրական դեմոկրատիան, մասնակցել արտադրության կառավարմանը, փոփոխել ձեռնարկությունների «հոգեբանական կլիման» և այլն: Վերջերս տեղի ունեցած գործադուլները է՛լ առավել որոշակիությամբ ցուցադրեցին բանվորական շարժման մեջ ուժերի բևեռացման և արհմիութենական լիդերների ու շարքային անդամների միջև հակասությունների սրման տենդենցը:

Դասակարգային պայքարի սրումը Սկանդինավիայում համոզիչ վկայում է, որ, չնայած երկար ժամանակ կիրառված «խաղաղացման քաղաքականությանը», չհաջողվեց խախտել ոչ բանվորների մարտական ավանդույթները, ոչ էլ նրանց դասակարգային ինքնագիտակցությունը: Մասսաների վճռական դիմադրությանն են հանդիպում արհմիություններն ամբողջովին, պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի սիստեմի մեջ ինտեգրացնելու, դրանք կա-

պիտալիստական հասարակության հնազանդ կցորդը դարձնելու՝ աջ սոցիալ-դեմոկրատիայի փորձերը:

## ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ, ՍՈՑԻԱԼ-ԴԵՄՈԿՐԱՏՆԵՐԸ, ՄԱՍՍԱՆԵՐԸ

Սկանդինավյան երկրների կոմունիստական կուսակցությունները, ելնելով նոր իրադրությունից, պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի զարգացման մակարդակից— մոնոպոլիաների ու աշխատավոր ժողովրդի մեծամասնության հակասությունների խիստ սրմամբ, որ այնպես հատուկ է այս փուլին, ապագայի համար հեղափոխական ստրատեգիա մշակելու հետ մեկտեղ, ներկայումս հանդես են գալիս դեմոկրատական ռեֆորմների և հակամոնոպոլիստական լայն ճակատի ստեղծման ծրագրով: Ի տարբերություն ռեֆորմիստների, կոմունիստների համար հանուն ռեֆորմների մղվող պայքարը կապիտալիզմի դեմ ընդհանուր պայքարի օրգանական բաղկացուցիչ մասն է, սոցիալիզմի համար մղվող պայքարի ելակետը:

Կոմունիստներն արդի փուլում պահանջում են.

— մոնոպոլիաների իշխանության սահմանափակում և պետության իրական դերի ուժեղացում տնտեսական կյանքում՝ ժողովրդական տնտեսության կարևոր ճյուղերի դեմոկրատական ազգայնացման միջոցով.

— վերահսկողություն տնտեսական քաղաքականության նկատմամբ՝ դեմոկրատական պլանավորման և ծրագրավորման հիման վրա (կապիտալ ներդրումների և ֆինանսավորման քաղաքականություն, հարկային բեռի բաշխում): Հաշվի առնելով ռեգիոնալ զարգացման կարևորությունը հատկապես Շվեդիայի և Նորվեգիայի համար, կոմկուսակցություններն անհրաժեշտ են համարում ուժեղացնել պետության վերահսկողությունն այդ ոլորտում՝ արտադրաուժերի ավելի ռացիոնալ տեղաբաշխման նպատակով.

— արտադրական դեմոկրատիայի ընդլայնում, այսինքն՝ այժմ գործող արտադրական կոմիտեները խորհրդակցական օրգաններից վերածել այնպիսի օրգանների, որոնք իրավունք ունենան լուծելու ձեռնարկությունների կառավարման ասպարեզում բանվորների ու ծառայողների համար կարևորագույն հարցերը.

— կրթության, մասսայական ինֆորմացիայի միջոցների դեմոկրատացում:

Ի հակակշիռ աջ ռևիզիոնիստների, օրինակ, Դանիայի սոցիալիստական ժողովրդական կուսակցության, կոմունիստները գտնում են, որ ինչպես փորձը ցույց է տալիս պառլամենտում ուժերի քանակական փոփոխությունն ինքնին հօգուտ բանվորական կուսակցությունների, չի կարող ապահովել հակամոնոպոլիստական ճակատի հաղթանակը, եթե այդ պրոցեսը կապված չէ մասսաների ակտիվացման հետ, չի ուղեկցվում մոնոպոլիաների իշխանության թուլացմամբ, պետության դասակարգային բնույթի փոփոխմամբ, պետական ապարատի դեմոկրատացմամբ:

Այդ, անշուշտ, չի նշանակում, թե բանվորական կուսակցությունների ներկայացուցիչները չպետք է ձգտեն առավելագույն ներկայացուցչության՝ օրենսդրական օրգաններում և չօգտագործեն աշխատավորների դրության բարելավման նվազագույն հնարավորությունը: Ձախ կուսակցությունը՝ Շվեդիայի կոմունիստները, օրինակ, որոնք ռիկստագում ունեն 17 մանդատ, ակտիվ օգտագործում են պառլամենտական տրիբունան՝ մասսաների առօրյա պահանջների կատարման համար:

Առաջադրված խնդիրների լուծման համար անհրաժեշտ է միավորել բոլոր առաջադիմական ուժերը: Սկանդինավիայում այդ խնդիրն առանձնապես բարդ է: Սոցիալ-դեմոկրատները, ձգտելով մենաշնորհի բանվորական շարժման ղեկավարության մեջ, ամեն կերպ դիմադրում են կոմունիստների հետ համագործակցելուն: Դրա հետ մեկտեղ վերջին ժամանակներս բուրժուազիայի քաղաքական կազմակերպությունների ուժերի համախմբման ակնբախ ձգտումը, հարձակումը սոցիալ-դեմոկրատիայի դեմ, վերջիններիս ստիպում են ավելի ու ավելի հաճախ պաշտպանություն փնտրել ձախից:

Սոցիալ-դեմոկրատների նկատմամբ վարած իրենց տակտիկայում կոմունիստները ղեկավարվում են երկու հիմնական սկզբունքներով. մի կողմից՝ նրանք իրենց հաշիվ են տալիս, որ սկանդինավյան բոլոր երեք երկրների սոցիալ-դեմոկրատական կուսակցություններն էլ օպորտունիստական են, իսկ մյուս կողմից՝ կոմունիստները չեն կարող հաշվի չառնել նրանց բանվորական ծագումը, նրանց կապը մասսաների հետ և կախումը մասսաներից: Այս դեպքում կոմունիստները նկատի ունեն նաև այն կարևոր մոմենտը, ինչպիսին է սոցիալ-դեմոկրատական շարժման անմիասեռությունը, տարբեր խմբավորումների և ուղղությունների՝ աջերի, ձախերի, չափավորների, առկայությունն այնտեղ, հետագա դիֆերենցման ու շերտավորման առկա պրոցեսը: Նոր իրադրությունն օբյեկտիվորեն մեծ հնարավորություններ է բացում մոնոպոլիաների դեմ մղվող պայքարում:

Միաժամանակ սկանդինավյան երկրների կոմունիստները չեն սքողում Եվրոպայի հյուսիսի բանվորական շարժման երկու հիմնական քաղաքական ջոկատների էական գաղափարախոսական տարաձայնությունները:

Սկանդինավյան սոցիալ-դեմոկրատական կուսակցություններն իրենց ստեղծման պահից սկսած հետևողական հեղափոխական կուսակցություններ չեն եղել: Բայց, լինելով ռեֆորմիստական և ռեֆորմները համարելով հասարակության վերափոխման միակ ուղին, նրանք երկար ժամանակ իրենց ծրագրերում պահպանում էին այնպիսի պահանջներ, ինչպես՝ արտադրության հիմնական միջոցների վերածումը հանրային սեփականության և այլն:

60-ական թվականներին ընդունված նոր ծրագրերում հյուսիսային սոցիալ-դեմոկրատիայի բոլոր երեք ջոկատները հրաժարվեցին սոցիալիստական շարժման ավանդական շատ դրույթներից և տեսության մեջ ու պրակտիկայում տրամաբանական ավարտին հասցրին զարգացման այն գիծը, որը և կազմում է ռեֆորմիզմի հիմքը: Դրա հետևանքով հասարակության վերափոխման հեղափոխական մեթոդներից հրաժարումը հանգեցրեց վուլգար էվոլյուցիոնիզմի և մերկ պրագմատիզմի, դասակարգային պայքարի սկզբունքները վերածվեցին բուրժուազիայի հետ համագործակցության, գիտական սոցիալիզմը դարձավ «դեմոկրատական սոցիալիզմի» ռեֆորմիստական տարբերակ, որը լիովին համընկնում է կապիտալիստական հասարակարգին:

Եվրոպայի այս մասի սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների քաղաքականության մեջ տեղի ունեցած փոփոխությունների էությունը, ռեֆորմիստական բանվորական շարժման աստիճանական ինտեգրացումն է պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի սիստեմի մեջ: Հազիվ թե պարզաբանման կարիք ունենա այն փաստը, որ այդ երևույթը ընդհանուր ոչինչ չունի, «բանվոր դասակարգի բուրժուականացման», կապիտալիզմի մեջ նրա լուծման մասին Արևմուտքում լայնորեն տարածված տեսության հետ: Խոսքը ռեֆորմիստական կուսակցությունների և արհմիությունների ղեկավարության մասին է և ոչ թե բուն բանվոր դասակարգի և վարձու աշխատանքի մարդկանց մասին:

Սակայն, լուծելով կառավարող դասակարգի գլխավոր խնդիրը՝ ամբողջ կապիտալիստական սիստեմի պահպանումն ու ամրապնդումը, սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների քաղաքականությունն իր մի շարք կոնկրետ դրսևորումներով կրում է ավելի առաջադիմական բնույթ, քան զուտ բուրժուական և հատկապես պահպանողական կաբինետները: Դրա հետ մեկտեղ նման մանևրման հնարավորությունները սահմանափակված են օբյեկտիվ հանգամանքներով, և, առաջին հերթին՝ էկոնոմիկայում խոշոր կապիտալի տիրապետությամբ: Սկանդինավյան իրականության բազում օրինակները ցույց են տալիս, որ գոյություն ունեցող կարգի շրջանակներում ռեֆորմիստական ավանդական պրակտիկան չի լուծում հրատապ պրոբլեմները և չի կարող բավարարել աշխատավորների արմատական պահանջները:

Սկանդինավյան երկրների կոմունիստական կուսակցություններն արդի փուլում իրենց առջև խնդիր են դնում՝ հասնել տնտեսական ու սոցիալական խոր վերափոխումների, որոնք հանգեցնեն մոնոպոլիաների իշխանության խարխլման և դասակարգային ու քաղաքական ուժերի հարաբերակցության ռեալ փոփոխության՝ հօգուտ աշխատավոր ժողովրդի:

«Мировая экономика и международные отношения, № 7, 1973.



# ՄԱՄՈՒԼԻ ԷՋԵՐԻՑ

ԿԱՆԴԻԱՆՈ ՖԱԼԱՍԿԻ

## ՄՈՒՍՈԼԻՆԻԻ ՎԱԽՃԱՆԸ

*Վերջերս բուրժուական մի շարք և, մասնավորապես, իտալական պատմաբաններ փորձում են նսեմացնել կոմունիստների դերը Դիմադրության շարժման մեջ, պնդելով, որ «անհրաժեշտ չէր» Մուսոլինիի և նրա կամակատարների մահապատիժը։ Իտալիայի կոմկուսակցության Կենտկոմի «Ունիտա» թերթն այդ կապակցությամբ հրապարակել է դուչեի մահապատժի հետ կապված փաստական իրադարձությունների շարադրանքը՝ օգտագործելով մինչև այժմ անհայտ մի քանի փաստաթղթեր ու վկայություններ։*

*Մուսոլինիի մահապատիժը, որն իրականացվեց Դիմադրության շարժմանը մասնակցող բոլոր կուսակցությունների ներկայացուցիչների որոշմամբ, անհրաժեշտ գործողություն էր, որը կանխեց նրան արդարացի դատաստանից փրկելու փորձերը։ Ներկայումս, երբ Իտալիայում Մուսոլինիի հետևորդները, քողարկվելով տխրահռչակ «սոցիալական շարժման» դիմակի տակ, ակտիվ հարձակում են գործում իտալական ժողովրդի դեմոկրատական նվաճումների վրա, ակնառու ապացուցում են Դիմադրության շարժման ղեկավարների ընդունած որոշման ճշտությունը։*

### ՖԱՇԻՍՏԱԿԱՆ ՊԱՐԱԳԼԽԻ ԿԱԼԱՆՔԻ ՈՒ ՄԱՀԱՊԱՏԺԻ ԻՐԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

Լրացավ Իտալիայում հակաֆաշիստական պատերազմի հաղթական ավարտի 28 տարին։ Պատմական այս հեռավորությունից առավել ցայտուն է դառնում Մուսոլինիի և ֆաշիստական ռեժիմի մյուս ղեկավարների գնդակահարության, որով ավարտվեց ազատագրական պատերազմը, անցյալի «վճռական գլխատման», համազգային ապստամբության գագաթնակետում կատարված վիրահատական գործողության իրական նշանակությունը, քան այն ժամանակ։

Ընդհանուր պատմական առումով այս առթիվ տարակույս լինել չի կարող։ Բայց այս եզրափակիչ գործողության շուրջ հետագա տարիներին հյուսվեց (մեծ մասամբ երևակայությամբ, և ոչ թե ճշգրիտ փաստերի հիման վրա) հակասական վերսիաների և բանավեճերի մի ամբողջ կծիկ։ Դժվար է նույնիսկ հաշվել, թե քանի անգամ է մամուլում բորբոքվել պրոպագանդիստական կամպանիան և միջոցներ ձեռնարկվել վարկաբեկելու և գրպարտելու պարտիզանական շարժումը, երկրում ստեղծելու համար այնպիսի մթնոլորտ, որն արդարացներ 1947—1948 թթ. Դե Գասպերիի՝ հակաֆաշիստական միասնությունը պառակտող գործունեությունը և դրան հաջորդող բանվորական ու դեմոկրատական շարժումների ճնշումը։



### ՓՐԿՈՒԹՅԱՆ ՈՐՈՆՈՒՄՆԵՐ

Հյուսիսային Իտալիայի ազգային ազատագրական կոմիտեն (ՀԻԱԱԿ) 1945 թ. ապրիլի 25-ի առավոտյան, ստանձնելով կառավարության պարտականությունները, միաժամանակ հրապարակեց արդարադատության հայտնի դեկրետը։ Հինգերորդ հոդվածով սահմանվում էր. «Ֆաշիստական կառավարության անդամները և ֆաշիզմի ղեկավար գործիչները մեղավոր են, որ աջակցել են սահմանադրական երաշխիքների չքացմանը, ժողովրդական ազատությունների վերացմանը, ֆաշիստական ռեժիմի ստեղծմանը, Իտալիայի դավաճանությանը ու հանգեցրել այժմյան աղետին՝ դատապարտվում են մահվան, իսկ նվազ ծանր մեղքի դեպքում՝ ցմահ բանտարկության»։ Եվրոպական զինվորական № 2 հանցագործի համար պարզապես հնարավոր չէր մեղմացուցիչ հանգամանք գտնել։

Այդ օրերին «Մուսոլինիի առեղծվածն» ավելի էր կոնկրետանում։ Դիմադրության շարժման ղեկավար օրգաններում դրա քննարկումը շատ մեծ տարաձայնություններ չէր հարուցում։ Մուսոլինիին գնդակահարելու կոմունիստների առաջարկը համընդհանուր հավանության արժանացավ ՀԻԱԱԿ-ի նիստում։ Միայն քրիստոնյա դեմոկրատների ներկայացուցիչ Մարացան այն միտքը հայտնեց, թե լավ չէ՞ր լինի նրան հանձնել դաշնակիցներին։

Չնայած Մուսոլինիի նկատմամբ Դիմադրության ունեցած աներկմիտ վերաբերմունքին, նա ամենևին չհրաժարվեց կաշին մի կերպ փրկելու փորձերից։ Իր կյանքի վերջին ամիսները նա ամբողջովին նվիրեց դրան։ Այն ժամանակ, երբ պաշտոնապես հռչակվում էին քարձրագոչ մտադրությունները— «մարտնչել մինչև վերջ», «Միլանը վերածել Ստալինգրադի», կամ «մինչև արյան վերջին կաթիլը» պաշտպանել «ալպիական ամրոցը» Վալտելինի հովտում, Մուսոլինին ամենուր հուսահատ ջանքերով փրկության խարիսխ էր նետում։

Գլխավոր կենտրոնը, որտեղից բխում էին ֆաշիստական ռեժիմի ղեկավարներին փրկելու վերջին ճիգերը, Միլանի արքեպիսկոպոսի աթոռանիստն էր։ Գրավելով այդ պոստը, կարդինալ Շուստերը՝ Մուսոլինիի առավել մոտիկ պրելատներից մեկը, վաղուց արդեն սերտ հարաբերություններ էր հաստատել իտալական ֆաշիստների, հիտլերյան բանակների և անգլո-ամերիկյան դաշնակիցների հետ։ Ապրիլի 25-ի երկրորդ կեսին դեպի Կոմո լճի ափերը ջղաձգորեն վազելուց առաջ, արքեպիսկոպոսի պալատն ուղևորվեց Մուսոլինին։

Արտակարգ սրտառուչ էր հանդիպումը կարդինալի հետ։ Դուչեն Շուստերի հետ քննարկում էր «Եվրոպայի սիրտը թափանցած կոմունիստական վտանգի» հարցը։ Այնուհետև ժամանեցին ՀԻԱԱԿ-ի ներկայացուցիչները, մի անգամ ևս պնդելով իրենց պահանջները՝ անվերապահ կապիտուլյացիայի մասին։ Սանդրո Պերտինին գնացել էր Միլանի գործարաններից մեկը, որտեղ սպանել էին երկու պարտիզանի. այդ պատճառով նա փոքր ինչ ուշացավ հանդիպումից. արքեպիսկոպոսի պալատը մտնելիս, նա անսպասելիորեն դեմառդեմ հանդիպեց Մուսոլինիին. խեղճացած, կծկված դուչեն հեռացավ իր մերձավորների ուղեկցությամբ։

Մեկնելով արքեպիսկոպոսի պալատից, Մուսոլինին պարտավորվեց մի ժամում պատասխանել կապիտուլյացիայի պահանջին։ Սակայն վերադառնալով քաղաքային իշխանության շենքը, նա կարգադրեց շտապ մեկնել Կոմո։ Հայտնեպ հավաքը և հրաժեշտը տևեց միայն մի քանի րոպե։ Ի դեպ, այս իրադրության մեջ ևս նա հավատարիմ մնաց փչոցի իր սովորույթին. հրամայված էր ռադիոյով հաղորդել սև վերնաշապիկավորներին ուղղված՝ Միլանում համախմբվելու կոչը։ Դուչեն իր հետ վերցրել էր ներկա գտնվող բոլոր մինիստրներին ու Գրացիանիին։

Մինչ այդ Լոմբարդիայի, Պյեմոնտի, Լիգուրիայի ամբողջ տերիտորիայում արագ տարածվեց ապստամբության բոցը։ «Սալո հանրապետության» (1943 թ. սեպտեմբերին Մուսոլինիի կողմից, գերմանական օկուպանտների սվիններով հիմնադրված մարիոնետային պետությունը, այսպես կոչված՝ «Իտալական սոցիալական հանրապետությունը», որի մայրաքաղաքն էր հյուսիս-իտալական Սալո կուրորտային քաղաքը— Խմբ.) պաշտպանների շարքերը նոսրանում էին. «սև բրիգադների» զինվորները դասալքում կամ հրաժարվում էին դուրս գալ զորանոցներից։ Ապրիլի 26-ի վաղ առավոտյան ֆինանսական պահակությունը (Իտալիայում ֆինանսական պահակության հիմնական պարտականությունը ժամապահությունը, պետական սահմանների պահպանումն էր։ Ֆինանսական պահակախմբի՝ Դիմադրության կողմն անցնելը կարևոր դեր խաղաց իրադրության զարգացման և ապստամբության եզրափակիչ փուլում— Խմբ.) առանց կրակոցի գրավեց Միլանի քաղաքային իշխանությունը։ Պարզ էր, որ ֆաշիստներն արդեն չէին կարող բանակցել որևէ մեկի հետ։

Այսպիսով, կարճ ժամանակում ֆաշիստական փախստական ղեկավարների համար սկըսվում է խառնիճաղանջ թափառումների կարճատև շրջանը Կոմո լճի ափերին։ Պատերազ-

նից հետո հրապարակած գրառումներում և հուշերում «Սալո հանրապետության» որոշ գործիչներ, խուսափելով պատժից, դեռևս ջանում էին հավատ ներշնչել «մինչև հաղթական վախճանը դիմադրել» առասպելի նկատմամբ: Իսկ իրականում Մուսոլինիի հրամանով ուսումնասիրվում էին Շվեյցարիա անցնելու հնարավորությունները:

Մեզ հաջողվեց փաստաթղթերում գտնել այդ մտահղացման ճիշտ հետքերը: 1945 թ. ապրիլի 21-ի «դուչեի համար կազմված ընդարձակ հուշագրության» մեջ վերապատմվում է շվեյցարական դեսպանորդ Տրյոնդլեմի հետ ունեցած զրույցի բովանդակությունը: Զրույցի ժամանակ «Սալո հանրապետության» արտաքին գործերի մինիստրը, բնականաբար, «խիստ անձնական պլանում» պարզաբանեց ֆաշիստ ղեկավարների մի խմբի սահմանն անցնելու հնարավորությունը: Շվեյցարական ներկայացուցիչը չմերժեց. դեռ ավելին, նա հիշեցրեց, որ երբ Մուսոլինիի աղջիկը՝ Էդա Չիանոն, ներկայացավ Շվեյցարիայի սահմանապահներին, նա սահմանն անցավ առանց որևէ դժվարության: Այդպիսի նորմեր, վստահեցրեց նա, կկիրառվեն սահմանի բոլոր մասերում: Սակայն, «արտակարգ աղմուկից և մամուլի անմիջական ռեակցիայից խուսափելու համար» ցանկալի է, երաշխավորեց շվեյցարական դիվանագետը, «չօգտվել Կյասոյի անցագրային կետից և Տեսինի (Տիչինո) կանտոնի միջով անցնող ճանապարհից, այսինքն՝ այն շրջանից, ուր կենտրոնացած է հակաֆաշիստական հասարակայնության ուշադրությունը»: «Հակառակը, գերադասելի կլիներ,— այնուհետև խորհուրդ տվեց նա,— օգտվել հյուսիսային Կոլե դը Մայրիկայից (որը Կոմո քաղաքի մոտ գտնվող այն վայրից 200 կմ դեպի արևմուտք էր, ուր սկզբում պլանավորված էր անցնել— Խմբ.), կամ, ավելի լավ էր, գերմանական տերիտորիայից Ռեզիայի լեռնանցքով անցնող ճանապարհով» (խոսքը հիտլերականների կողմից օկուպացված Ավստրիայի մասին է— Խմբ.): Իհարկե, ինչպես պատմում են նրա մերձավորները, պատահական չէ, որ Մուսոլինին իր փախուստի վերջին ժամերին, բազմիցս նույն հարցն էր տալիս. «Իսկ այդ Տրյոնդլեմին կարելի՞ է վստահել»:

## ՊԱՐՏԻԶԱՆԱԿԱՆ ԾՈՒՂԱԿՈՒՄ

Այսպես սկսվեց վախճանը: Այդ նկարագրված է տասնյակ գրքերում և հարյուրավոր հոդվածներում: Այնուամենայնիվ, մենք կարող ենք ֆաշիստական ղեկավարների բանտարկությանը և գնդակահարությանը մասնակցած պարտիզանների չհրապարակված վկայություններից այդ պատմությանը մի քանի նոր մանրամասներ ու հանգամանքներ ավելացնել: Օրինակ, բոլորը չգիտեն, որ պարտիզանների խորամանկ հնարքներով, փոքրաթիվ ու վատ զինված գարիբալդիական բրիգադի ջանքերով միայն իրագործվեց դուչեի կալանքը: Հակառակորդն ուժերի բացահայտ առավելություն ուներ. գերմանական շարասյունում կային 165 զինվոր՝ «լյուֆտվաֆ» զենիթային զորամասերից և քառասուն մարդ՝ Հիտլերի անձնական թիկնապահներից, որոնց հրամայված էր և ոչ մի վայրկյան չհեռանալ Մուսոլինիից: Իսկ ինչպե՞ս հաջողվեց առանց արյունահեղ կռվի բանտարկել «Սալո հանրապետության» ղեկավարներին:

Ուրիշ շատ ընկերների հետ միասին այս հարցը տվեցինք Միքել Մորետիին (պարտիզանական մականունը՝ «Պետրո Գատի»), որը եղել էր 52-րդ գարիբալդիական բրիգադի քաղաքական կոմիսարը և ի պաշտոնե անմիջականորեն մասնակցել այդ օրերի իրադարձություններին, ինչպես և կղզու ափի վերջնադեպքին: Այսպիսով, արդյոք խոսքը միայն պատահական հանգամանքների՞ն է վերաբերում: Մեր զրուցակիցը կտրականապես պատասխանում է «ոչ»: Ֆաշիստների շարասյունը կանգնեցրել էին Կոմո լճի հյուսիսային ծայրի մոտ գտնվող Դոնգո փոքրիկ քաղաքում հենց այն պատճառով, որ շրջանի ողջ տերիտորիայում արագ իրագործվեցին համազգային ապստամբության պլանով նախատեսված միջոցառումները: Կարճ ժամանակում զոնան մաքրվեց գերմանացիներից ու ֆաշիստներից, մերձակա գյուղերի կայազորներն անձնատուր եղան, իսկ սևվերնաշապիկավորների վերջին խումբը փախավ լճի արևելյան ափը:

Շվեյցարական սահմանը տանող ճանապարհը փակելու որոշումը կայացվեց Դոնգոյի քաղաքային իշխանությունում կայացած նիստում, ապրիլի 26-ի լույս 27-ի գիշերը: Առավոտյան ժամը 6 անց 30 րոպեին առաջավոր պահակային դիտակետը տագնապով ոտքի հանեց քաղկոմիսար Մորետիին և 52-րդ բրիգադի հրամանատար «Պեդրոյին» (այդ մականվամբ էր թաքնվել կոմս Պերլուիջի Բելինի դելե Ստելեն): Զրահապատ ավտոմեքենաներով քաղաքին էր մոտենում գերմանական մեքենայացված խոշոր շարասյունը: Զրահապատ ավտոմեքենաները կրում էին «Սալո հանրապետության» տարբերիչ նշանները: Իսկույն կասկածեցին, թե Մուսոլինին կարող է այդ շարասյան մեջ լինել: Բայց ինչպե՞ս ստուգել ենթադրությունը: Որքան էլ սաստիկ էին տագնապները, թե ուշացման ամեն մի պահ կարող է ճակատագրական լինել, որոշված էր ամեն կերպ «երկարաձգել ժամանակը»: 52-րդ բրիգադի շտաբը բանակցություններ վարեց գերմանական հրետանավորների հրամանատար, լեյտենանտ Ֆալմայերի հետ: Նրան հայտնված էր, որ հետագա առաջխաղացման թույլտվություն ստանալու համար անհրաժեշտ է կապվել լճի հակառակ կողմում գտնվող Վալտելինի հովտի գարիբալդիական զորամասերի հրամանատարության հետ:

«Խույս տալու մի քանի փորձերից հետո,— պատմում է Մորետին,— գերմանացի սպան ավտոմեքենա տրամադրեց մեզ, ուր նրա հետ միասին նստեցին «Պեդրոն», թարգմանիչ Գոֆմանը՝ շվեյցարական քաղաքացին և ես: Դիվիզիայի շտաբը հասնելու համար պետք էր հյուսիսից շրջանցել լիճը. երկար ճանապարհը բազմամարդ էր, հաճախ հանդիպում էինք պարանոցներին կարմիր գլխաշորեր կապած պարտիզանների: Այս բոլորը համոզեցին գերմանացուն, որ նրա շարասյունն այնքան էլ հեշտ չէր կարող մոտենալ սահմանին...

Կոմո և Սոնդրիո գավառները բաժանող գետակի մոտ հրամայեցի կանգնեցնել մեքենան և ասացի, որ գնում եմ ստուգելու, թե ինչպես է ականապատված կամուրջը: Այդ ավելի շատ ազդեց լեյտենանտ Ֆալմայերի վրա. այժմ նա հավանաբար հավատում էր, որ մեր առաջին իսկ ազդանշանի դեպքում կորոտան պայթյունները...»:

Նուովո Օլոնիո վայրում, ուր քիչ առաջ գարիբալդիականներն ընդունել էին հիտլերյան կայազորի կապիտուլյացիան, 52-րդ բրիգադի հրամանատարն ու կոմիսարը, թողնելով գերմանացիներին, միայնակ գնացին պարտիզանական միավորման շտաբը: Շտաբում մխիթարական ոչ մի բան չհայտնեցին նրանց. առկա բոլոր ուժերն զբաղված էին բնակավայրերի մաքրմամբ և ոչնչով օգնել չէին կարող: Վերադառնալիս հասունացավ գերմանացիներին առաջարկվող պահանջների վերջնական տարբերակը. զորասյանը կթույլատրվի անցնել միայն անզեն և առանց իրենց շարքերում գտնվող իտալական ֆաշիստների: Համաձայնությունն ուժի մեջ է միայն Կոմո գավառի սահմաններում: Գերմանացի հրամանատարը հրաժարվեց հանձնել զենքը. ինչ վերաբերում է երկրորդ պայմանին, ապա խորհրդակցելով Մուսոլինիի թիկնապահների պետ, լեյտենանտ Բիրցերի հետ, նա համաձայնեց, որ պարտիզանները ստուգեն բեռնատար ավտոմեքենաները:

## ՊԱՐԱԳԼՈՒԽՆԵՐԸ ՓՈՐՁՈՒՄ ԵՆ ՓԱԽՉԵԼ ԱՐՏԱՍԱՀՄԱՆ

Պարտիզանների կանգնեցրած զորամասը լուսաբացին դուրս եկավ Մենաջոյից, որը գտնվում էր Կոմո լճի արևմտյան ափի համարյա մեջտեղում: Պարտիզանների մի քանի անվրեպ կրակոցներից հետո, առջևից գնացող զրահապատ ավտոմեքենայից մնաց այն ամենը, ինչ մնացել էր գովական «Պավոլինիի զորասյունից» (այդպես էր կոչվում՝ ֆաշիստական կուսակցության վերջին քարտուղարի անունով), որը, ինչպես հայտարարեցին «Սալո հանրապետության» ղեկավարները, պետք է ռազմական պարտությունից փրկեր ռեժիմը: Ֆաշիստական կառավարության նախագծերի լիակատար ձախողումը Կոմոյում հայտնի դարձավ երկու օր առաջ: Համընդհանուր գործադուլը, որն ազատագրական ապստամբության ընդհանուր պլանի մի մասն էր, այստեղ հայտարարվեց ապրիլի 25-ի լույս 26-ի գիշերը և արագ տարածվեց ինչպես ձեռնարկություններում, այնպես էլ ուսումնական հաստատություններում: 25-ի երեկոյան Միլանից եկած Մուսոլինին դեռևս քաղաքային իշխանության շենքում էր. մի քանի քայլ դրանից այն կողմ, մասնավոր տան մեջ տեղի է ունենում գավառի ազգային ազատագրական կոմիտեի (ԱԱԿ) նիստը: Բայց առավոտյան ժամը 9-ին քաղաք մտան տասնյակ բեռնատար ավտոմեքենաներ՝ «սև բրիգադների» սպանված զինվորներով ու սպաներով. նրանց մի մասը դեռևս համազգեստով էր ու զինված:

Այդ ժամանակ դուչեն միայն մի ծրագիր ուներ՝ սակավաթիվ մտերիմների հետ թաքնվել Շվեյցարիայում (նրա սիրուհին՝ Կլարետա Պետաչին նրան միացել էր ճանապարհին): Բազմաթիվ ամենատարբեր վկայություններն այս հարցում լիովին համընկնում են: Մարշալ Գրացիանիի հուշատետրում խիստ պերճախոս տողեր կան. հնարավոր չէ վերծանել այդ գրառումների բոլոր բառերը, բայց նրա միտքը բավականին պարզ է. «Ապրիլի 26: Անքուն գիշեր... սահմանի ուղղությամբ... դուչեի հետ միասին ողջ կառավարության անցման համար: Ժամանում Մենաջո...»:

Առաջին պահ հենց այստեղ, սահմանից ընդամենը 10 կմ հեռու գտնվող այդ գյուղն ուղևորվեց Մուսոլինին՝ իր սակավաթիվ ուղեկիցներով: Լեյտենանտ Բիրցերին և պահակախմբին դժվարությամբ հաջողվեց միանալ նրան (և այդ սոսկ այն բանից հետո, երբ նա սպառնաց զենք գործադրել):

Բանվորական շարժման երբեմնի հայտնի գործիչ Նիկոլա Բոմբաչին, որ հետագայում հարեց ֆաշիզմին, Մուսոլինիի վերջին ժամերին նրան շրջապատողների մեջ էր: Բանտարկությունից հետո նա հայտարարեց, որ դուչեի փախուստն Իտալիայից «մանրակրկիտ մտածված է եղել»: Սկզբում Գրանդոլայի հովտում,

նումը: «Վալերիոն» հրահանգ խնդրեց: Պատասխանը պարզ էր. «Կամ դուք նրան կկանգնեցնեք պատի մոտ, կամ ձեզ կկանգնեցնեն»: Իր ժամանակին դա կոչվում էր «սխալ մեկնաբանությունը բացառվում է»:

Մինչ «Վալերիոն» ոստիկանատանը գազազած էր, Լամպրեդին ըմբռնելով իրադրության էությունը, սկսեց գործել այդ ուղղությամբ: Մի կողմ կանչելով ԱԱԿ-ում կոմկուսակցության ներկայացուցիչ Ռենատո Ծոնտիին, նա խնդրեց օգնել իրեն՝ ԻԿԿ տեղական ֆեդերացիայի հետ հարաբերություններ հաստատելու: Նրա հետ մեկտեղ հին կոմունիստ, Իսպանիայի ինտերբրիգադների մարտիկ, Ֆրանսիայում, ապա Իտալիայում քաղաքային պարտիզանական խմբի անդամ, պարտիզանական պահակային խմբի պետ Ռիկարդո Մորդինին:

«Զրուցակիցներիցս իմացա,— հիշում է Լամպրեդին,— մի արտակարգ կարևոր բան, որը համարյա վճռականը եղավ վերջին ժամերին: Նրանք ասացին, որ 52-րդ գարիբալդիական բրիգադի քաղաքական կոմիսար Միքելե Մորետին գիտե, թե նախորդ գիշեր ուր են տարել Մուսոլինիին և Պետաչիին»:

Զրույցի վերջում որոշվեց, որ ԻԿԿ ֆրակցիայի քարտուղար Ալետոն գնա Լամպրեդիի հետ և նրան ներկայացնի Միքելե Մորետիին և ապահովի մյուս կոմունիստների աջակցությունը:

Աուդիզիոն, իր հերթին, Կոմոյից դուրս եկավ ժամը 12.00-ին՝ բռնագրավված երկու մեքենաներում մի կերպ տեղավորելով պահակախմբի 12 զինվոր: Ճանապարհին Աուդիզիոն կանգնեց և բռնագրավեց մի մեծ բեռնատար՝ կցասայլով: Այս տրանսպորտով պարտիզանական պահակախումբը ժամը 14.10 րոպեին ժամանեց Դոնգո:

Այդ պահին արդեն Մուսոլինին Բոնցանիգոյում մի գյուղացու տանն էր: Բանտարկությունից անմիջապես հետո նա տեղավորվել էր Դոնգոյից ոչ հեռու՝ Ջերմազինոյի ֆինանսական պահակախմբի զորանոցում: Սակայն գիշերը, 52-րդ բրիգադի հրամանատարությունը որոշեց Մուսոլինիին տեղափոխել առավել հուսալի տեղ: Դուչեի գլուխը մի լավ փաթաթել էին բինտով, որով անճանաչելի էր դարձել, նստեցրել մեքենան և տարել դեպի հարավ: Ծրագրված էր նրան տանել Կոմոյի շրջակայքում գտնվող Բրունատե, որը մոտ էր Միլանին և հեռու՝ գլխավոր մայրուղուց: Բայց դժվարությամբ հաղթահարելով մի քանի կիլոմետր, երկու մեքենաները, ուր գտնվում էին Մուսոլինին, Պետաչին, պարտիզան-ուղեկցողները, ինչպես և Մորետին ու «Պեդրոն», հարկադրված կանգ առան Մոլտրազիոում: Լճափում չդադարող փոխհրաձգություն էր: Երկար վիճեցին, թե ինչ անել: Հատկապես Մորետին պնդում էր նախնական պլանը փոփոխելու համար: Այսպես ծագեց մի պարտիզանի բարեկամուհու՝ Լիա Դե Մարիայի մոտ գնալու միտքը, որի տունը Բոնցանիգո գյուղից շատ հեռու չէր: Որոշվեց գնալ այնտեղ: Առավոտյան ժամը 5-ին էքսպեդիցիան հասավ նշանակված տեղը: Երկու պարտիզան՝ «Լինոն» և «Սանդրինոն» դռան մոտ ժամապահ կանգնեցին:

Մինչ մի գիշերում դուչեին երկու անգամ տեղից-տեղ էին փոխադրում, նրա բանտարկության լուրը տարածվել էր ամենուրեք, ակտիվացնելով այդ բարձրարժեք որսին փափագողների ջանքերը: Դաշնակից բանակների շտաբ-բնակարանի նպատակը պարզ էր. այստեղ ջանում էին այնպես անել, որ Մուսոլինին անհապաղ հանձնվի իրենց, չբացառելով նրանց համար հատուկ ռազմական օդանավ ուղարկելու հնարավորությունը: Ընդ որում, ամերիկացիների ակտիվությունը չէր սահմանափակվում միայն նշվածով: Մուսոլինիին բռնելու համար ԱՄՆ-ի 5-րդ բանակի 34-րդ դիվիզիայի հրամանատար գեներալ Բոլտին շարժական հատուկ ջոկատ կազմակերպեց: Սրարշավ կտրելով Լոմբարդիայի ճանապարհները, ջոկատը հասավ Կոմո, սակայն ցանկալի արդյունքի չհասավ:

Կոմոյում այդ ժամանակ գործում էր ծովային սպա, իտալական զինվորական հետախուզության պաշտոնական գործակալ, ոմն Ջովանի Դեսի:

## ՄԱՀԱՊԱՏԻԺ

Դուչեին «փախցնելու» առաջին էքսպեդիցիան կազմակերպել է Դեսին՝ ամերիկյան գործակալ Գուաստոնիի օգնությամբ ու գործակցությամբ: Սակայն Կադենաբիոյում խմբի մասնակիցներին բռնեցին «Արդարության և ազատության» ջոկատներից մեկի մարտիկները (գերազանցապես գործողության կուսակցության ազդեցության տակ գտնվող ձախ-ռադիկալ հոսանքի ապստամբական կազմավորումները:— Խմբ.): Իսկ քանի որ խմբի կազմում էր օկրուգում լավ հայտնի սևվերնաշապիկավորների «Մուտի» բրիգադի հրամանատար, Միլանում հայրենասերների գնդակահարության «տխրահռչակ» ղեկավար Ֆրանկո Կոլոմբոն, պարտիզանների կասկածանքներն արագ իրականացան: Բռնվածներին իսկույն կանգնեցրին պատի մոտ գնդակահարման: Ճիշտ է, գնդակահարվեց միայն Կոլոմբոն, Դեսիին, Թեոդորանիին և մյուսներին հաջողվեց փրկվել, բայց հետագայում Դեսին ստիպված եղավ փնտրելու դուչեին փրկելու այլ տակտիկա: Այժմ նրա բոլոր ջանքերն ուղղված էին այն բանին, որպեսզի Կոմոյի ԱԱԿ-ի անդամների միջոցով Մուսոլինիին տեղավորի կենտրոնին մոտիկ մի նահանգում: Հավանաբար, Դեսիի այդ նպատակով կատարած քայլերը Կոմոյի ԱԱԿ-ի անդամների մեքենայով Դոնգո գնալու փորձ էր: Բայց այն ձախողվեց Աուդիզիոյի ակտիվ հակագործողությունների շնորհիվ:

Ինչպե՞ս ընթացան դեպքերը հետագայում: Լամպրեդիի պատմածը չոր է և գործնական: «Դոնգոյի քաղաքային իշխանությունում գարիբալդիական 52-րդ բրիգադի հրամանատարության հետ խորհրդակցելուց հետո,— հիշում է նա,— Աուդիզիոն, Մորետին, վարորդ Ջովամբատիստա Ջենինացան և ես մեկնեցինք Բոնցանիգո: Այս փոքրիկ գյուղի հրապարակում մեքենան կանգնեց: Աուդիզիոն կրակեց օդում, ստուգելու համար ավտոմատը: Ոտքով գնացինք մինչև Դե Մարիայի տունը: Բարձրացանք աստիճաններով: Մուսոլինիի և Պետաչիի սենյակի դռան մոտ ժամապահում էին պարտիզաններ «Լինոն» և «Սանդրինոն»: Լավ հիշում եմ, երբ ներս մտանք, Մուսոլինին կանգնած էր ինձնից աջ, իսկ Պետաչին պառկած էր մահճակալին: Ինձ զարմացրեց դուչեի տեսքը, որն այնքան նման չէր ֆաշիստական պրոպագանդայի հորինած ուժեղ և կորովալի մարդու կերպարին: Նրա ձեռքերը թեթևակի պարզած էին և յուրաքանչյուրում բռնել էր ակնոցների մեկական պատյան: Չհասկացա՝ միանգամից նրա ինչի՞ն էր պետք երկու զույգը...»:

Այդ տեսարանի մասնակիցներից և ոչ մեկը չի հիշում այն կարճ ռեպլիկները, որ փոխանակվեցին սենյակում: Համենայնդեպս, բոլորը համամիտ են, որ ոչ մի «պատմական ֆրազ» չի արտասանվել: Մորետին հիշեց միայն, որ երբ ներս մտան նոր մարդիկ, Մուսոլինին հուզվեց և գոչեց. «Ի՞նչ է պատահել»:

Մի քանի րոպեում մենք հավաքվեցինք: Այնուհետև Աուդիզիոն, Լամպրեդին, Մորետին և երկու դատապարտյալներ փողոց դուրս եկան: Մինչև մեքենան մոտավորապես հարյուր մետրը էր: Դուչեի վերջին անցման մասին Աուդիզիոն հիշում է. «Մեքենայում ես նրան աջ կողմը նստեցրի: Պետաչին նստեց ձախ կողմում: Ես տեղավորվեցի դրսում՝ ավտոմեքենայի աջ թևին, ուղիղ Մուսոլինիի դիմաց, որպեսզի տեսադաշտից ոչ մի ակնթարթ բաց չթողնեմ նրան: Մեքենան սկսեց դանդաղ բարձրանալ լեռը: Հազիվ էինք հավասարվել մի դղյակի ցանկապատին, հրամայեցի կանգ առնել»:

Ինչպես հիշում է Մորետին, Աուդիզիոյի ընտրած տեղը Բելմոնտի դղյակի պարսպապատ դարպասի մոտ էր, որը գտնվում էր Բոնցանիգոյին կից Ջուլինո դի Մեձեգրա գյուղի ծայրամասում: Ցատկելով գետնին, «Վալերիոն» զննեց շրջապատը, մի քանի անգամ ետ ու առաջ գնաց ճանապարհով: Սպասումի այդ կարճ րոպեներին Լամպրեդին մոտեցավ մեքենայի այն դռանը, ուր նստած էր Մուսոլինին: «Ես թեքվեցի պատուհանին,— հիշում է Լամպրեդին,— և ասացի. «Ո՞վ կարող էր մտածել, թե դու՝ կոմունիստներին տարիներ շարունակ հետապնդողդ, պատասխան պետք է տաս հատկապես կոմունիստներին»: Մուսոլինին ոչինչ չպատասխանեց: Պետաչին երկար նայեց ինձ հարցական հայացքով:

Մուսոլինիին և նրա ուղեկցուհուն դուրս բերին մեքենայից ու կանգնեցրին դարպասից ոչ հեռու, պատի մոտ: «Աուդիզիոն,— պատմում է Լամպրեդին,— բարձրացրեց ավտոմատը, բայց հրացանը չբացվեց: Ես կանգնած էի նրա աջ կողմում և երբ տեսա, որ նրա զենքն անսարք է, թիկնոցի գրպանից հանեցի ատրճանակը: Բայց զուր էի սեղմում իջեցուցիչ կեռը, իմ ատրճանակը նույնպես չէր կրակում: Այդ ժամանակ կանչեցինք Մորետիին, որը մի քանի տասնյակ մետրի վրա էր: Աուդիզիոն նրանից վերցրեց ավտոմատը և բացեց կրակաշարը: Այդ բոլորը տևեց երկու կամ երեք րոպե, որոնց ընթացքում Մուսոլինին մնաց մեջքը պատին սեղմած, անշարժ, իսկ Պետաչին գոռում էր, որ մենք իրավունք չունենք նրան գնդակահարելու, և դես ու դեն ընկնելով, փորձում էր ասես թե իր մարմնով ծածկել նրան:

Ժամը 16 անց էր 10 րոպե: Աուդիզիոյի Դոնգո ժամանելու պահից անցել էր միայն երկու ժամ, երկու լարված ժամեր, որոնց ընթացքում կատարվեց անցքերի վճռական շրջադարձը...

«Վալերիոյի» և «Գուիդոյի» ՀԻԱԱԿ-ի հրամանը կատարելու մեկնելուց առաջ, Դոնգոյի քաղաքային իշխանության աշխատասենյակներից մեկում Աուդիզիոյի, Լամպրեդիի և «Պեդրոյի» (հետո նրանց միացավ Մորետին) մասնակցությամբ կայացավ խորհրդակցություն, որտեղ կալանված ֆաշիստների ընդհանուր ցուցակից ընտրվեցին 15 հոգի, որոնց անպայման պետք էր գնդակահարել:

Բռնված ֆաշիստները գտնվում էին երեք տեղում. մեծ մասը՝ Դոնգոյում, Մուսոլինին և Պետաչին՝ Բոնցանիգոյում, իսկ առավել կարևոր ղեկավարներից մի քանիսը՝ Ջերմազինոյի ֆինանսական պահակախմբի զորանոցում: «Պեդրոն» ցանկություն հայտնեց գնալու նրանց ետևից: Հետագայում նա խոստովանեց, որ գնաց միայն Մուսոլինիի մահապատիժը մի քանի ժամով հետաձգելու հույսով, որի ընթացքում հնարավոր կլինի ՀԻԱԱԿ-ի որոշումից

տարբեր մի որոշում կայացնել: Սակայն նրա գնալուց անմիջապես հետո Աուդիզիոն, Լամպրեդին և Մորետին մեկնեցին Բոնցանիգո: Վերադառնալով, «Պեդրոն» իմացավ, որ Մուսոլինին և Պետաչին արդեն գնդակահարված էին:

Այժմ մնացել էր միայն մահապատժի ենթարկել մյուս ղեկավարներին, որոնք իրենց ժամին էին սպասում Դոնգոյի քաղաքային վարչության «ոսկյա սալոնում»: Նավակայանի ցածլիկ եզրապատի մոտ էր տեղի ունենալու էկզեկուցիան: Մի օր առաջ զենքը ձեռքներին բռնված ավելի քան 50 ֆաշիստական գործիչներից գնդակահարվեցին ընդամենը 18-ը, դրանց մեջ էին և Կլարա Պետաչին ու Մուսոլինին: Եթե գործեին ՀԻԱԱԿ-ի դեկրետներին հույժ համապատասխան, գնդակահարվածների ցուցակը անհամեմատ մեծ կլիներ: Սակայն որոշված էր մահապատժի ենթարկել միայն նրանց, ովքեր առավել ծանր պատասխանատվություն էին կրում ռեժիմների համար: Այդպիսով, Դոնգոյի ափին ոչնչացրին «հանրապետական ֆաշիստական կուսակցության» քարտուղար Պավոլինիին, մինիստրների սովետի նախագահին առընթեր պետական քարտուղար Բարակուին, «ժողովրդական կուլտուրայի» մինիստր Մեձասոմային (նա էր ընտորագրել ֆաշիստական բանակում ծառայելուց խուսափողներին մահվան դատապարտելու սպառնալից հայտարարությունները), հասարակական աշխատանքների մինիստր Ռոմանոյին, կապի մինիստր Լիվերանիին և ներքին գործերի մինիստր Ձերբինոյին. մնացածները՝ Կոպոլան, Պորտան, Հաթին, Դակուանոն, Ուտիմպերգերը, Կազալինուովոն, Կալիստրին, Նուդին և Բոմբաչին կարևոր պոստեր էին գրավում «Սալո հանրապետության» պետական և կուսակցական ապարատում կամ ղեկավարում էին «սև բրիգադը»:

Ֆաշիստական հանցագործների դատավճիռն իրագործվեց մոտավորապես ժամը 17.45 րոպեին: Դրան հաջորդեց համընդհանուր հրաձգությունը. կրակում էին թե՛ պարտիզանները, թե՛ տեղացիները՝ միակերպ համակված ժողովրդական արդարադատության ավյունով: Երկու հոգի նույնիսկ պատահաբար թեթև վիրավորվեցին: Այնուհետև դիակները գցեցին Աուդիզիոյի բռնագրաված բեռնատար մեքենաների մեջ: Ածանոյում, կես ճանապարհին, վերցրել էին նաև Մուսոլինիի և Պետաչիի դիակները...

Այս սպասումը չհաշված, զորամասը միայն մեկ անգամ խլացրեց շարժիչների ձայնը, երբ Մենաջոյի մոտ նրան հանդիպեց ամերիկյան առաջին պարեկը: Կանգնեցնելով մեքենաները, Աուդիզիոն և Լամպրեդին ներկայացրին փաստաթղթերը: «O քեյ, պարտիզաններ»,— ասացին ամերիկյան զինվորները, թույլ տալով նրանց շարունակել ճանապարհը:

## ՀԻՆԳ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՈՐՈՇՈՒՄՆ Է՝ ԳՆԴԱԿԱՀԱՐԵԼ

Ապրիլի 29-ի առավոտյան «Ունիտա» և «Ավանտի» լրագրերի ողջ էջով մեկ տպված վերնագրերն ազդարարում էին Մուսոլինիի գնդակահարությունը: Երկու թերթերն էլ լույս տեսան մեծ տպաքանակով, բայց իսկույն քսպառվեցին. լրագիրը ձեռքից ձեռք էր անցնում (երկու էջից էր բաղկացած ողջ համարը): Գարնանային պարզ, տաք կիրակի էր. այդ օրերին Միլանի փողոցներն ու հրապարակները լեփ-լեցուն էին մարդկանցով: Ռազմական տարիներից հետո այդ առաջին խիտ բազմությունն էր հրապարակներում: Իտալիայում սկսվում էր հետռազմական ժամանակաշրջանը:

Ջուլինո դի Մեձեգրայի և Դոնգոյի էկզեկուցիայի վերաբերյալ հաղորդումը Միլանում ընտացվեց կես գիշերին. ետդարձի ճանապարհին Աուդիզիոյին և Լամպրեդիին պատահած դեպքը հնարավորություն չընձեռեց նրանց լուրը շուտ հաղորդելու: Լուիջի Լոնգոն լուրին էր սպասում «Կորիերե դելա սերա» տպարանում, ուր այն ժամանակ տպագրվում էր «Ունիտա» թերթի միլանյան պրակը: Ժամանակն անցնում էր, բայց վաղուց սպասվող հեռախոսային զանգը չկար: Էջերն արդեն կապված էին և, մինչև ռոտացիոն մեքենաները գործարկելը, մնացել էր միայն մի քանի րոպե: Այդ պահին իսկ հնչեց հեռախոսի զանգը, որը տակնուվրա արեց լրագրի ողջ էջը: Փորձնական օրինակի համար հաստ թղթի կտորի վրա տպված է հետևյալ վերնագիրը. «Հանուն ժողովրդի պարտիզանները մահապատժի են ենթարկել Մուսոլինիին և նրա արբանյակներին»: Խոշոր տառերով շարված երկու ենթավերնագրերը ճշգրտում էին գնդակահարության տեղն ու ժամը: Ստորև զետեղված էր գնդակահարված ֆաշիստների ոչ լրիվ ցուցակը: Մեկնաբանությունների ժամանակ չկար: Աուդիզիոն և Լամպրեդին ցանկանում էին պատմել իրենց հետ ողջ կատարվածի մասին, սակայն Լոնգոն պահանջեց կարճ շարադրել ամենաէականը: Թերթը պետք է լույս տեսներ հաշված րոպեներում:

Հաղորդագրության վերջին տողերում ասված էր, որ գնդակահարվածների դիակները գիշերվանից կախված են Լորետո հրապարակում, այնտեղ, ուր 1944 թ. օգոստոսին ֆաշիստները գազանաբար դատաստան տեսան Դիմադրության մասնակից 15 պատանդների հետ: «Այդ տհաճություն է պատճառում ազգային ազատագրության կոմիտեի մեր շատ ընկերներին,— պատմում է Լոնգոն:— Բայց ես կարծում եմ, որ ճիշտ ենք վարվել: Դա անհրաժեշտ էր նրա համար, որ ժողովուրդը համոզվի, թե արդարությունը հաղթանակեց: Այդ անհրաժեշտ էր նաև նրա համար, որ կտրվեց բռնության ու վրեժխնդրության գործողությունների շղթան, որն անշուշտ կքանդվեր, եթե չստեղծվեր այն պարզ զգացողությունը, թե գլխավոր հանցագործները կրել են իրենց արժանի պատիժը և դրանով իսկ ավարտվեց պատմության այդ գլուխը»:

Այդ իսկ առավոտյան ՀԻԱԱԿ-ը արտակարգ նիստ հրավիրեց, ուր ձևակերպեց հռչակավոր հայտագրի տեքստը, որով ֆաշիզմի ղեկավարների գնդակահարությունը գնահատվում էր որպես «վճռական խզում» դրան նախորդող ֆաշիզմի քսանամյակից»: «Մուսոլինիի և նրա հանցակիցների գնդակահարությունը ՀԻԱԱԿ հրամանով,— ասված է այդ փաստաթղթում,— հանդիսանում է պատմական փուլի անհրաժեշտ ավարտը, որի հետևանքով մեր երկիրը նյութապես և բարոյապես դեռևս գտնվում էր փլատակների վրա: Այն զինված ապստամբության ավարտն է, մեր հայրենիքի վերածնունդն ու վերակառուցումը նշանավորող նախադրյալը: Իտալական ժողովուրդը չէր կարող սկսել նորմալ, ազատ կյանքը, որից քսան տարի զրկել էր նրան ֆաշիզմը, եթե ՀԻԱԱԿ-ը ժամանակին, վճռականորեն չիրագործեր պատմության կայացրած մահավճիռը: Այդ ամոթալի ու հանցագործ անցյալի հետ վճռական կապերի խզմամբ միայն իտալական ժողովուրդը կարող էր հավաստիանալ, որ ՀԻԱԱԿ-ը լի է վճռականությամբ՝ հաստատ ընթանալու երկրի դեմոկրատական բարեփոխման ուղիով: Միայն այս գնով են պայմաններ ստեղծվում այն բանի համար, որ ապստամբության ավարտից հետո, ֆաշիզմի մնացուկներն արմատախիլ արվեն: Եվ արվել են ամենաօրինական ձևերով»:

Սերենիի և Պերտինիի կազմած այդ տեքստն ստորագրել էին ՀԻԱԱԿ-ի հինգ կուսակցությունների բոլոր ներկայացուցիչները. ԻԿԿ-ից՝ Լոնգոն և Սերենին, սոցիալիստներից՝ Մորանդին և Պերտինին, գործողության կուսակցությունից՝ Պարին և Վալյանին, լիբերալներից՝ Արպեզանին և Յաչինին, քրիստոնյա դեմոկրատներից՝ Մարացոն և Աուգուստո դե Գասպերին (Ալչիդե դե Գասպերիի եղբայրը, որը հետագայում դարձավ պրեմիեր-մինիստր): Ոչ ոք բացահայտ չառարկեց: Ավելին, տարբեր կուսակցությունների գործիչներ այն ժամանակ իրար ընդհատելով շեշտում էին իրենց դերն ու ծառայությունները այն որոշման ընդունմանը, որի համաձայն գնդակահարվեցին «Սալո հանրապետության» ղեկավարները: Միայն հետագայում, երբ փոխվել էր Իտալիայի քաղաքական կլիման, որոշ լիբերալներ ու դեմոկրատ քրիստոնյաներ փորձում էին թաքցնել տպավորությունը իրենց՝ որպես հետևողական ֆաշիստների մասին, ակտիվ մասնակցելով արդեն ծավալված հակակոմունիստական կամպանիաներին...

Այսպիսով, 1945 թ. ապրիլի 27-ն ու 28-ը նշանավորում են ազգային ապստամբության հաղթական գագաթնակետը: Այս հաղթանակը, ինչպես, ի դեպ, Դիմադրության մյուս բոլոր հաջողությունները, հնարավոր դարձավ ոչ միայն նրա մասնակիցների անձնազոհության, այլև միասնության այն քաղաքականությամբ, որի նպատակն էր զանգվածներին դարձնել ֆաշիզմի և նացիզմի դեմ մղվող ճակատամարտերի իսկական «գլխավոր գործող անձ»:

Մուսոլինիի և այլ գլխավորների կալանքն ու մահապատիժն ինքնին ուսանելի են և լակմուսի թղթի պես ի հայտ են բերում գաղտնի նկրտումի ու հականկրտումների բախումները, նշանավորելով հակաֆաշիստական ճակատամարտի վերջնական ավարտը: Եվ սկսած գործը մինչև վերջ տանելու համար, այս դեպքում, անշուշտ, բավական չէր միայն ապստամբական շարժման մեջ ներգրավված զանգվածների կամքը, եթե նույնիսկ այն ամրապնդվում էր Դիմադրության ղեկավարների մեծամասնության մտադրություններով: Որպեսզի Իտալիայի պատմության մեջ իրականանար այն «վըճռական խզումը», որի մասին խոսվում էր Դիմադրության փաստաթղթերում, պետք էր և կոփված կազմակերպություն, որն ունակ լիներ ստիպելու իրագործել այն որոշումները, որոնք նա ընդունել էր հակաֆաշիստական պայքարի մյուս մասնակիցների հետ: Այդպիսի կազմակերպություն էր Իտալիայի կոմունիստական կուսակցությունը:

«За рубежом» № 14, 1973.

# ՆԱՏՕ-Ի ԵՐԿՐՆԵՐԻ ՌԱԶՄԱԿԱՆ ԾԱԽՍԵՐԸ*

*Սովետական Միության և եղբայրական սոցիալիստական պետությունների խաղաղասիրական արտաքին քաղաքականության շնորհիվ միջազգային ասպարեզում կատարված դրական տեղաշարժերը լայն արձագանք են գտել ՆԱՏՕ-ի երկրների աշխատավորական լայն խավերի շրջանում, որոնք պահանջում են վերջ տալ վտանգավոր և անիմաստ սպառազինությունների մրցավազքին։*

*ՆԱՏՕ-ի գոյության 24 տարիների ընթացքում նրա ընդհանուր ռազմական ծախսերը կազմել են 1 տրիլիոն 700 միլիարդ դոլար։ Ընդ որում, նկատելի է ռազմական հատկացումների հետագա ավելացման բացահայտ տենդենց։ 1967 թ. ՆԱՏՕ-ի տարեկան ռազմական բյուջեն եղել է 100 միլիարդ դոլարից ավելի. այդ թիվը տարեցտարի մեծանում է։ Այսպես, օրինակ, ՆԱՏՕ-ի արևմտաեվրոպական մասնակիցների տարեկան ռազմական ծախսերը միայն 1967—1971 թթ. ավելացել են գրեթե 4,5 միլիարդ դոլարով։ Անցյալ տարվա դեկտեմբերին Բրյուսելում կայացած ՆԱՏՕ-ի խորհրդի սեսիայում որոշվեց կրկին ավելացնել այդ երկրների ռազմական հատկացումները, որոնք 1973 թ., 1972 թ. համեմատությամբ, կաճեն 1,5 միլիարդ դոլարով։*

*Վերջին տարիներին առավել ցայտուն դրսևորվեցին այն խորացող հակասությունները, որոնք առկա են ԱՄՆ-ի և նրա արևմտաեվրոպական դաշնակիցների միջև։ ԱՄՆ-ը ձգտում է ՆԱՏՕ-ի ամրապնդման և արևմտյան Եվրոպայում իր զորքերի պահպանման հետ կապված ծախսերի մեծ մասը բարդել իր արևմտաեվրոպական դաշնակիցների վրա։*

ԱՄՆ-ը *ռազմական ծախսերով ՆԱՏՕ-ում գրավում է առաջին տեղը։ 1974 թ. ԱՄՆ-ի ռազմական բյուջեն պլանավորվում է 85,2 միլիարդ դոլար։ ԱՄՆ-ը ձգտում է բազմապատկել իր ռազմական ուժերի հզորությունը, զարգացնել ու կատարելագործել ստրատեգիական զենքի հիմնական տեսակները, մեծ ուշադրություն է հատկացնում իր դաշնակիցներին ժամանակակից զենքով զինելուն։*

Մեծ Բրիտանիան, *որը ակնկալում է «եվրոպական խմբի» լիդերի դերը, 1973/74 թթ. ֆինանսական տարվա համար պլանավորում է 4338,3 միլիոն ֆունտ ստեռլինգի ռազմական ծախսեր (այդ թվում՝ պաշտպանության մինիստրության միջոցով 3937,4 միլիոն և մյուս գերատեսչությունների միջոցով 400,9 միլիոն ֆունտ ստեռլինգ)։ 1973/74 թթ. ֆինանսական տարվա ռազմական բյուջեն նախորդ տարվա համեմատությամբ ավելի է 523 ֆունտ ստեռլինգով։ Պաշտպանության մինիստրությունը նախատեսում է ավելացնել միջուկային զենքի արտադրությունը։*

Ֆրանսիան *(դուրս է եկել ՆԱՏՕ-ի ռազմական կազմակերպությունից) նախատեսել է 1973 թ. ֆինանսական տարում կատարել 34,8 միլիարդ ֆրանկի ռազմական ծախսեր։*

*Այսպիսով, ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդի այս երեք մշտական անդամների ռազմական ծախսերը կազմում են մի ահռելի գումար՝ 100 միլիարդ դոլար։*

ԳՖՀ*-ի ռազմական բյուջեն 1973 թ. կկազմի 26,5 միլիարդ մարկ, որը 6,9 տոկոսով ավելի է անցյալ տարվանից։ Եթե հաշվի առնենք այն միջոցները, որ ԳՖՀ-ն հատկացնում է այսպես կոչված քաղաքացիական պաշտպանությանը, ամերիկյան զորքերի պահպանությանը և այլն, ապա Արևմտյան Գերմանիայի ռազմական ընդհանուր ծախսերը գերազանցում են 30 միլիարդ մարկից։*

*Ընթացիկ տարում* Իտալիայի *ռազմական բյուջեն 2294,5 միլիարդ լիր է կամ 450 միլիարդով ավելի, քան 1972 թ.։*

*1973/74 թ. ֆինանսական տարում աճել են* Կանադայի *ռազմական ծախսերը, դրանք 2,6 միլիարդ դոլարից ավելի են։*

*Աճել են նաև ՆԱՏՕ-ի մյուս պետությունների՝* Նորվեգիայի *(9,2 տոկոսով),* Բելգիայի *և մյուս երկրների ռազմական ծախսերը։* Դանիայում *ռազմական հատկացումները մնացել են անցյալ տարվա մակարդակին, բայց նախատեսվում է դրանց հետագա ավելացում։*

*Վերոհիշյալ փաստերը ակնառու ցույց են տալիս, որ Հյուսիսատլանտյան պայմանագրի կազմակերպության ղեկավարներն ու գեներալները շարունակում են ռազմականացման հին կուրսը։ Նրանք երբեմն շարունակում են կրկնել «սառը պատերազմի» ժամանակների հին երգը «սովետական վտանգի» մասին, դրանով իսկ կամենալով սարսափի մեջ պահել ժողովրդական մասսաներին։ Սակայն դրանք ապարդյուն ճիգեր են։ ՆԱՏՕ-ի անդամ երկրների աշխատավորական մասսաները, հասարակության լայն խավերը վճռականորեն հանդես են գալիս իրենց պետությունների սպառազինությունների մրցավազքի դեմ, իրենց ավանդը մուծում խաղաղության պահպանման, միջազգային անվտանգության ամրապնդման և ժողովուրդների միջև փոխշահավետ համագործակցության ասպարեզում։*

ՅՈՒ. ԳԱՎՐԻԼՈՎ

«Международная жизнь», № 11, 1973 г.

* Տպագրվում է որոշ համառոտումներով.— ԽՄԲ.։



# ԱՇԱԿԵՐՏԻ ԱՇԽԱՐՀԱՅԱՑՔԻ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ՀԶՈՐ ԳՈՐԾՈՆԸ

## (ԷՋԵՐ ՄԱՆԿԱՎԱՐԺԻ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅՈՒՆԻՑ)

*Եթե ձեր սաների համար գիրքը դառնա միշտ նոր, միշտ անհասանելի մի հրաշալիք, եթե երիտասարդը ձգտի առանձնանալ՝ հաղորդակցվելու համար գրքի հետ, եթե պատանեկության շրջանում լինեն գրքին սիրահարված, շատ ու շատ բաներից գիրքը գերադասող «խենթեր», կլուծվեն դպրոցական կյանքի շատ բարդ խնդիրներ և, ամենից առաջ, կվերանան անհետաքրքրասիրությունը, անտարբերությունը գիտելիքների նկատմամբ։*

*Վ. Ա. ՍՈՒԽՈՄԼԻՆՍԿԻ*

Գրականության դասատուների հետ մեկտեղ պատմության, հասարակագիտության և աշխարհագրության ուսուցիչները հաճախ գանգատվում են, որ երբ հարկ է լինում առանձին թեմաների վերաբերյալ հանձնարարել լրացուցիչ գրականություն, աշակերտների մեծ մասը չի կարդում, երբեմն պատճառաբանելով, թե՝ գիտենք, լսել ենք, տեսել կինո և այլն, թե ներկա գիտատեխնիկական դարում ո՞ւմ են պետք այդ առարկաները, որտե՞ղ են դրանք օգտագործվելու, կարևորը ժողովրդական տնտեսության զարգացումն է, դրա վերափոխումը՝ գիտատեխնիկական բազայի հիման վրա, թե մեր դարը մաթեմատիկայի, ֆիզիկայի, քիմիայի դար է, հումանիտար առարկաները երկրորդական են դառնում և այլն, և այլն։

Գրադարանի վարիչն էլ հաստատեց, որ, իրոք, պակասել է գրադարանից օգտվողների թիվը, նրանց մեջ քիչ են, հատկապես, բարձր դասարանցիները։

Երևույթը չէր կարող չանհանգստացնել և, միաժամանակ, չհետաքրքրել մեզ։ Որոշեցինք ուսումնասիրել հումանիտար առարկաներով անբավարար զբաղվելու պատճառները և սեփական կարծիք ու համոզմունք ունենալով այդ հարցերի վերաբերյալ, ջանալ վերացնելու թերությունները։ Այդ նպատակով կազմակերպեցինք անհատական և կոլեկտիվ զրույցներ բարձր դասարանցիների հետ, բանավեճեր, գրավոր հարցեր առաջադրեցինք, ուսումնասիրեցինք գրադարանի գործունեությունը, հումանիտար առարկաներից ավելի շատ ժամեր լսեցինք և այլն։ Ահա ուսումնասիրության արդյունքները։

Նախ՝ գրադարանի մասին։ Պարզվեց, որ 1969/70 ուսումնական տարում VIII—X դասարանների 180 աշակերտներից գրադարանից օգտվել են 145 հոգի, որոնց վերցրած գրքերի քանակը հասնում է մոտ 800-ի. յուրաքանչյուր աշակերտի՝ տարեկան մոտ 6 գիրք։ 1970/71 ուսումնական տարում՝ նույնքան աշակերտներից գրադարանից օգտվել են 96 հոգի, յուրաքանչյուրին միջին հաշվով՝ 4 գիրք։ 1971/72-ին համապատասխանաբար՝ 76։ Համեմատաբար ավելի ակտիվ են եղել VIII—IX դասարանցիները։ Ընթերցասերների մեծ մասն աղջիկներ են։ Պարզվեց նաև, որ միջին հաշվով յուրաքանչյուր աշակերտ տարվա մեջ կարդում է 10—12 գիրք, որոնց մեջ ծրագրային են 2—3-ը. մյուսները կողմնակի, գեղարվեստական գործեր են։

Որոշ աշակերտների ներկայացրած ցուցակներում քիչ են ընդհանրապես հայ գրականության, մասնավորապես սովետահայ, ժամանակակից գրականության երկեր։ Աշակերտներին առաջադրած մեր հարցերի գրավոր պատասխանների, բանավեճի համառոտ արդյունքների

հրապարակումը ինչպես ուսուցիչների, մեր գրողների համար նույնպես հետաքրքրական կլինի:

Նախ նշենք, որ կարծիքները իրարամերժ են: Աշակերտների մեծ մասը դրական կարծիք ունի մեր ժամանակակից, ինչպես և երիտասարդ գրողների մասին, գովում են նրանց առանձին գրվածքներ, բանաստեղծություններ: Ըստ նրանց ժամանակակից գրողը պետք է ապրի իր ժամանակի խոհերով, հոգսերով ու հեռանկարներով:

Սակայն մի մասն էլ, դժգոհ են ժամանակակից գրողներից, գտնում են, որ նրանց գործերի գեղարվեստական մակարդակը չի բավարարում իրենց: Ուրեմն, կարդալու խնդրում, սիրելի ուսուցիչներ,— գրում են նրանք,— պետք է մեղադրել ոչ միայն մեզ, այլև մեր գրողներին:

Այդ աշակերտների պատասխանները կարդալիս հիշեցի Լ. Ի. Բրեժնևի խոսքերը ՍՄԿԿ XXIV համագումարում: «Թող թույլ տրվի այստեղից նշել, որ մեզանում տակավին երևան են գալիս ոչ քիչ ստեղծագործություններ, որոնք խոր չեն բովանդակությամբ, ոչ էլ արտահայտիչ են ձևով: Երբեմն նույնիսկ այնպես է լինում, որ ստեղծագործությունը նվիրված է լավ, հրատապ թեմայի, բայց այնպիսի տպավորություն է ստեղծվում, որ արվեստագետը խնդրին մոտեցել է չափազանց թեթևակի, աշխատանքի մեջ չի դրել իր տաղանդի ողջ ուժը»:

Ոմանք գանգատվել են, որ մեր գրողները քիչ են անդրադառնում դպրոցական կյանքի ամենատարբեր հարցերին, աշակերտների և ուսուցիչների փոխհարաբերություններին: Փոխվել են դպրոցի առջև դրված խնդիրները ու պահանջները, սակայն դրանք իրենց գեղարվեստական արտահայտությունը չեն գտնում գրականության մեջ:

Նախասովետական շրջանի ականավոր գրողները ինչ-որ չափով անդրադարձել են իրենց ժամանակի դպրոցի հարցերին, նկարագրել կիսագրագետ ուսուցիչներին, նրանց ձեռքին տառապող աշակերտներին: Կարդալով այդ ստեղծագործությունները՝ որոշ գաղափար ես կազմում այն ժամանակվա դպրոցի, դրան ներկայացվող պահանջների մասին, իսկ այժմ դպրոցին նվիրված ոչ մի գեղարվեստական երկ չկա:

Ահա ինչ է գրել աշակերտներից մեկը.

— Բոլորը չէ, որ միանգամից սառչում են գրքից, կարդալուց. եթե կարդալը բնավորության գիծ է դարձել, սովորություն, նա չի կտրող այդքան շուտ, կինոյի, հեռուստացույցի պատճառով, այլևս չկարդալ: Հակառակը, երբ դիտես, որ որևէ վեպ, պոեմ էկրանացված կամ բեմականացված է, աշխատում ես նախօրոք կարդալ, խորանալ բովանդակության մեջ, ճանաչել հերոսներին, տեսնելու համար թե ինչպե՛ս է բեմականացվել կամ էկրանացվել այդ գործը, դերասանն ինչպե՛ս է կատարում քո սիրած, կամ չսիրած հերոսի դերը: Մեր կարծիքով դպրոցականների հոգում գիտելիքների ծարավ հարուցելու համար անհրաժեշտ է հոգալ կյանքի ամենակարևոր, ամենահիմնական օջախների՝ գրադարանների մասին: Լավ է ասել ՍՍՀՄ մանկավարժական գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ Վ. Ա. Սուխոմլինսկին. «Քիչ ընթերցող ունեցող գրադարանը քնած հսկայի է նման. պետք է ամեն գնով արթնացնել այդ հսկային»: Այդ նպատակով մենք, նախ՝ ջանացինք պարզել մեր աշակերտների ընթերցասիրության մարման պատճառները: Դասալսումները հաստատեցին ուսուցիչների կարծիքը. աշակերտների զգալի մասը, հաճախ կեսից ավելին չեն կարդում հանձնարարված գրականությունը: Շատերը խոստովանեցին, որ մի տեսակ սառել են, կտրվել գրքից, գրադարանից: Պատճա՞ռը. «ժամանակը չի բավարարում», «ժամանակ չունենք», «դասերն այնքան շատ են ու դժվար, որ եթե ամբողջ օրը նստենք միայն դասերի վրա, գուցե և չհասցնենք»,— սրանք են աշակերտության մեծ մասի պատասխանները: Բացի դրանից, մի՞թե մեր ժամանակներում,— ասում են նրանք,— միայն դասերն են մեզ հետաքրքրում: Մեր սերունդն ապրում է գիտության, տեխնիկայի, կուլտուրայի, սպորտի բուռն զարգացման ժամանակաշրջանում: Հետաքրքրասիրությունները այնքա՜ն շատ են, այնքա՜ն բան կա կյանքից վերցնելու, ծանոթանալու, որ շատ քիչ ժամանակ է մնում կարդալու, սովորելու համար: Մի՞թե մենք չպետք է օգտվենք այդ ամենից, չէ՞ որ դրանք հաճախ ավելի հետաքրքիր ու գրավիչ են, քան մեր դասերը, տնային հանձնարարությունները ու գրքերը...

Քիչ կարդալու մյուս պատճառը աշակերտության մի մասը համարում է կինոն, հեռուստացույցը:

Ինչպես հայտնի է, հեռուստացույց ունեն համարյա բոլորը, այն դարձել է մի տեսակ անհրաժեշտություն. ինչպես աշակերտներից մեկն է գրել՝ «Այլևս դժվար է պատկերացնել առանց հեռուստացույցի»:

Մեր խնդիրը չէ ցույց տալ, թե հեռուստացույցն ինչ դեր է կատարում, ինչ նշանակություն ունի մարդկանց, ուսանողների, դպրոցականների ընդհանուր զարգացման համար. մեր նպատակն է պարզել, թե հեռուստացույցը, իր դրական կողմերով հանդերձ, ի՛նչ ներգործություն է ունենում, ինչպե՛ս է անդրադառնում սովորողների տնային աշխատանքների կատարման, ընթերցանության և, ընդհանրապես, ուսման, առաջադիմության վրա, օգնո՞ւմ, թե՞ խանգարում է:

Պատասխանողների մոտ մեկ երրորդը գտնում է, որ հեռուստացույցն ընդհանրապես չի խանգարում ուսմանը, տնային աշխատանքների կատարմանը. ընդհակառակը, օգնում է, զարգացնում, ընդլայնում մտահորիզոնը, հարստացնում գիտելիքները, թարմացնում միտքը, նպաստում դասապատրաստմանը: Սրանք այն աշակերտներն են, ովքեր դիտում են ոչ թե բոլոր հաղորդումները, այլ ընտրում, դիտում են իրենց գիտելիքների հարստացմանը, դասերին օգնող հաղորդումները:

«Այդ հաղորդումների միջոցով,— գրել է մեկը,— ինձ համար հասկանալի են դառնում այնպիսի հարցեր, որոնց պատասխանը, նկարագրվող դեպքերը դժվար թե կարողանայի այդպես լավ պատկերացնել միայն ուսուցչի պատմածով, դասագրքով կամ, նույնիսկ՝ գեղարվեստական գրականության միջոցով: Հեռուստացույցն օգնում է մեզ՝ խնայելու ժամանակը, քիչ զբաղվելու ընթերցանությամբ»:

Մի մասն էլ գտնում է, որ այն, ինչ պետք է կարդան օրերով, աչք ու գլուխ ցավեցնեն, դիտում են հեռուստացույցով. ինչու նորից կարդալ, մանավանդ որ հանձնարարված գրականության զգալի մասն էկրանացված կամ բեմականացված է, ցուցադրվում է ուսումնական հաղորդումների ժամանակ, իսկ մեր ժամանակը քիչ է,— գրում են նրանք,— առարկաները էլ շատ են ու դժվար:

Աշակերտների մի մասն էլ գանգատվում է, որ, չնայած հեռուստացույցի շատ առավելություններին, այն պարզապես խանգարում է իրենց, մանավանդ երբ բնակարանային պայմանները հարմարավետ չեն, ընտանիքը բազմանդամ է: Հեռուստացույցը կտրում է նրանց գրքից. եթե, մանավանդ, ծնողներն էլ տարված են դրանով, վերանում է ամեն ռեժիմ, կարգ ու կանոն, հսկողություն:

— Հեռուստացույցը պարզապես խանգարում է բոլորիս,— ասում է մեկ ուրիշը,— մինչև անցյալ տարի հեռուստացույց չունեինք և ծնողներս էլ դիտմամբ չէին գնում, որպեսզի մեր դասերին չխանգարի: Շատ ստիպելուց հետո գնեցին: Եվ ի՞նչ. մինչև հեռուստացույց գնելը լավ էինք սովորում, 3 երեխաներով էլ հարվածային էինք, մեզնից ոչ ոք «3» չուներ. սակայն այս տարի բոլորիս գնահատականներն իջան:

Ոմանք գրում են, որ կարդալու սովորությունն աստիճանաբար փոխարինվել է հեռուստացույց դիտելու սովորությամբ և այլևս չեն կարդում ո՛չ միայն գեղարվեստական և հանձնարարված ծրագրային գրականությունը, այլ նույնիսկ՝ թերթեր, ամսագրեր: Մամուլին փոխարինել են «Նովոստի», «Վրեմյա», «Համայնապատկեր» հեռուստացուցային հաղորդումները:

Հատ ու կենտ աշակերտներ գիրք չկարդալը պատճառաբանում են հետևյալ կերպ.

— Ընտանիքում օգնում եմ մորս, ժամանակ չի մնում կարդալու:

— Հաճելի զբաղմունքներ շատ կան, կարդալու ժամանակ չի մնում:

— Ուշադրությունս բևեռել եմ այն առարկաների վրա, որոնցից քննություն պետք է հանձնեմ իմ ընտրած բուհում:

— Գիրք կարդալը սովորության հարց է, եթե մանկուց այդ բանը իմ մեջ չեն դաստիարակել, այլևս դժվար կլինի:

Ոմանք էլ խոստովանում են, որ ինչպես աշխատանքում, այնպես էլ կարդալում ծուլանում են:

Իհարկե, այս պատճառաբանությունները ընդհանուր չեն և որակ չեն կազմում:

Հանգամանալի ուսումնասիրությունից պարզվում է, որ մեր աշակերտների քիչ կարդալու պատճառները կապված են ո՛չ միայն ժամանակի գործոնի, հեռուստացույցի հետ, այլև մի շարք էական պատճառների, որոնք չի կարելի անտեսել:

Աշակերտներին ընթերցասեր, գրասեր դարձնելու գործում մեծ է ուսուցչի, մանավանդ լեզվի և գրականության ուսուցչի անձնական օրինակը, նրա դերը:

Աշակերտները շատ շուտ են նկատում, թե որ ուսուցիչն է ապրում իր առարկայով ու գործով, ընթերցասեր է, պատրաստված, հետևողական ու հոգատար: Ընթերցասիրության զարգացման համար շատ կարևոր են ուսուցչի վարժ, արտահայտիչ, զգացմունքով կարդալը, հետաքրքիր պատմելը, ժամանակակից գրական-հասարակական կյանքով, նորություններով հետաքրքրվելը, աշակերտներին այդ ամենին հաղորդակից դարձնելը: Մինչդեռ կան ուսուցիչներ, որոնք չեն փայլում պատրաստվածությամբ, գրասիրությամբ, սահմանափակվում են միայն դասագրքերով, իրենց սառն, անտարբեր վերաբերմունքով սովորողին վանում են իրենցից, ավանդած առարկայից և կտրում գրքից:

Տասներորդ դասարանցիներից մի քանիսը գրում են.

Մենք ևս այն կարծիքին ենք, որ մարդը մանկուց սիրում է գիրքն ու գրականությունը: Դեռ դպրոց չհաճախող երեխան ստիպում է ծնողներին, մեծերին, որպեսզի իր համար գրքեր գնեն, կարդան հեքիաթներ, տարբեր դիպ-

վածներ պատմեն և այլն: Սակայն, երբ մեծանում են, նրանցից ոմանք, որոշ ուսուցիչների մեղքով, որոնք կոպիտ են, վանող, վիրավորող, կտրվում են գրքից, կարդալուց:

Պատահում է, որ ուսուցիչն իր գիտելիքներով, դասավանդման ձևերով ու մեթոդներով չի կարողանում հետաքրքրասիրություն հարուցել առարկայի նկատմամբ, ինքն էլ մի կերպ, չոր ու ցամաք, իր հնացած գիտելիքներով, «յոլա» է տանում, «մեռցնում 45 րոպեն»: Երբ դասատուն չի ապրում իր առարկայով ու գործով,— գրում են աշակերտները,— մեզ թվում է՝ նա սխալ է ընտրել իր մասնագիտությունը:

Ընթերցասիրության զարգացման համար կարևոր նշանակություն ունի գրականության պատշաճ ավանդումը: Լավ գրքի վերընթերցումը հոգեկան պահանջ կդառնա այն դեպքում, երբ աշակերտը մանկուց զգա խոսքի գեղեցկությունը, համն ու հոտը, ամենանրբին երանգները, երբ խոսքի միջոցով նրա համար բացվի ո՛չ միայն մտքերի հարստությունը, այլև գեղեցկությունը: Հուզմունքից, բնական, արտահայտիչ ընթերցանությամբ ու պատմելով ուսուցիչը պետք է կարողանա ներգործել աշակերտների վրա, հուզել, անցածը հուզմունքի վերածել:

Մեր նախկին ուսուցիչը՝ Զ-ն, որն այժմ փոխադրվել է ուրիշ դպրոց, վեպը վերլուծելիս գործող անձանց ներկայացնում էր շատ կենդանի, վերհանում նրանց բնավորության, ներքնաշխարհի, բարոյական ու քաղաքական հայացքների, գործելակերպի առանձնահատկությունները: Ծունչներս պահած, համակ ուշադրություն դարձած, լսում էինք նրան, իսկ պատմած դեպքերը, անձինք, կինոժապավենի նման անցնում էին մեր աչքի առջևով, ուսուցչի հետ միասին ապրում, հուզվում, տխրում կամ ուրախանում էինք: Հոգեկան ինչպիսի՜ բավականություն էինք զգում գրականության ժամերին, հոգնել, ձանձրանալ չկար, չէինք ուզում վերջանար դասը, մանավանդ երբ պատմելու, նկարագրելու հետ միաժամանակ ուսուցիչն անկեղծ, հուզիչ զգացմունքայնությամբ գեղեցիկ հատվածներ էր արտասանում... Բոլորս սիրում էինք նրան և նրա առարկան, անհամբեր սպասում այդ ժամերին: Մեզնից շատերն անգիր էին սովորում առանձին ոտանավորներ, արձակ հատվածներ. որքա՜ն գրքեր էինք քննարկում, ռեֆերատներ կարդում, վիճում, բեմականացնում մեր անցած պիեսները: Ունեինք և գրական, ասմունքի խմբակներ... Իսկ հետո... փոխվեց ուսուցիչը, եկավ նորը, մռայլ, չոր ու ցամաք, անտրամադիր, կարծես զոռով են մտցրել դասարան, աշխարհի ցավն ու վիշտն իրեն են տվել. դասերի ժամանակ ոչ մի նոր միտք, սրտաբաց զրույց, հուզմունք, բացատրություն: Դասագրքից դուրս ոչինչ չկա, — ցավով ասում են աշակերտները:

Այս առիթով հիշեցի հենց վերջերս ինձ մոտ եկած մի ծնողի, որ գանգատվում էր ուսուցչուհիներից մեկի անտարբեր վերաբերմունքից:

— Աղջիկս մեծ ունակությունների տեր չէ, — ասաց նա,— դժվարանում է հատկապես մաթեմատիկական առարկաներից. հաճախ հարկ է լինում նրան օգնել: Սակայն, ինչ վերաբերում է հայոց լեզվին ու գրականությանը, իր նախկին ուսուցչուհին և մենք հասել ենք այն բանին, որ նա սիրում, լավ հասկանում է մեր գրականությունը, շատ է կարդում, նշումներ անում, գրառում թևավոր խոսքեր, հավանած բանաստեղծություններն անգիր անում: Նա մասնակցում էր դպրոցի գրական խմբակին, ռեֆերատներ գրում: Մի խոսքով հայոց լեզուն ու գրականությունը նրա համար միշտ առաջնային էին ու, ճիշտն ասած, մենք էլ ուրախանում էինք դրանով: Սակայն այս տարի աղջիկս անճանաչելի է դարձել. այդ առարկաներից նույնիսկ երկուսներ է ստանում: Լեզվի ու գրականության դասերի օրերին անտրամադիր է դառնում, մռայլվում... Այլևս գիրք չի կարդում, ոչ էլ սիրում է անգիր սովորել, արտասանել: Ի՞նչ է պատահել: Անհանգստացանք: Նման փոփոխությունը վերագրեցինք տարիքին, համարեցինք անցման շրջանի, ինչ-որ հույզերի, մտքերի հետևանք, և այն է՝ քիչ էր մնում հաշտվեինք այդ վիճակին: Պարզվեց՝ փոխվել է դասատուն, եկել է նորը, որ ոչ ոգևորում է, ոչ օգնում, բավարարվում է միայն դասագրքում եղածը սառն անտարբերությամբ վերապատմելով: Այսպիսով նա սառեցրել է երեխաների հետաքրքրասիրությունը լեզվի, գրականության նկատմամբ: Ուսուցիչը պետք է երեխաներին հուզել կարողանա,— շարունակեց նա,— երեխաների մեջ սեր արթնացնի իր առարկայի նկատմամբ, իսկ եթե սերը կա, ոչ թե մարի, այլ բորբոքի այն: Մյուս երեխաս,— շարունակեց նա,— պատմում էր, թե ինչպես իրենց գրականության ուսուցչուհին գրավոր աշխատանք էր հանձնարարել «Կարևորը մարդ լինելն է» թեմայով: Իրենց դասարանցի հաշմանդամ մի աղջիկ իր գրածում գանգատվել էր, որ շատ է վիրավորված մի քանի ընկեր-ընկերուհիներից, որոնք ծաղրել, երբեմն երեսով են տվել իր ֆիզիկական արատը, ինքը հոգեպես խիստ ընկճված է, մինչդեռ իրեն թըվում էր, թե ընկեր-ընկերուհիները, հակառակը, պետք է սփոփեն, մխիթարեն իրեն, ավելի հոգատար, ջերմ վերաբերվեն:

Դասարանում գրավոր աշխատանքի արդյունքները վերլուծելիս, երբ հերթը հասել է



այդ աղջկան, ուսուցչուհին շատ անկեղծ հուզվել է, հուզմունքը համակել է ողջ դասարանին: Այդ դասից հետո փոխվել է երեխաների վերաբերմունքը աշակերտուհու նկատմամբ, մտերմացել են նրա հետ, դարձել հոգատար ընկեր, մոռացնել տվել անձնական վիշտը: Այսպես պետք է լինի դասատուն, մանավանդ գրականության դասատուն, որ իր կատարածը, ասածը հետք թողնի երեխաների հոգում,— վերջացրեց հուզված ծնողը, ապա խնդրեց, որ օգնենք իրեն երեխայի հարցում և ուսուցչուհուն հայտնենք երեխաների կարծիքն իր մասին:

Իհարկե, մենք այն կարծիքին չենք, որ աշակերտի հոգում գրքի, գրականության և ընդհանրապես ընթերցանության նկատմամբ հետաքրքրասիրություն պետք է արթնացնեն ու բորբոքեն միայն լեզվի, գրականության դասատուները. մանկավարժական ողջ կոլեկտիվի խնդիրն է այդ: Երբ մանկավարժները հետաքըրքըրվում, կարդում են լույս տեսած գրականությունը, տիրապետում բանավոր գեղարվեստական խոսքին, հաճախ իրենց կարդացածին հաղորդակից դարձնում աշակերտներին, ավելի պատկերավոր դարձնելու համար դիմում են գեղարվեստական գրականությանը, մեջբերումներ անում համապատասխան հոդվածներից, օրինակներ են բերում, արտասանում գողտրիկ ոտանավորներ, դիմում համեմատություններ, առակների, դասը, անշուշտ, դառնում է հետաքրքրական, դյուրըմբռնելի:

Սակայն, ցավոք, մեր ուսուցիչների շրջանում էլ կան մարդիկ, որ ասես իրոք սառել են գրքից, հաճախ իրենց ավանդած առարկայից այն կողմ չեն անցնում, նույնիսկ իրենց առարկայի հետ կապված գրականությունը չեն կարդում:

Դասալսումների ընթացքում հաճախ տեսնում ենք, թե ինչպես ուսուցիչն էլ դժվարանում է պատմել, խոսել, բացատրել, մի կերպ յոլա է տանում:

Սովորողների սիստեմատիկ կարդալուն, ինչպես իրենք են նշել, խանգարում է ծրագրային գրքերի պակասը, ինչպես դպրոցական գրադարաններում, նույնպես և գրախանութներում: Կա՛մ դրանք չկան, կա՛մ այնքան քիչ են, որ երկար ժամանակ հերթի պետք է սպասենք, որ կարողանանք կարդալ, իսկ այդքան ժամանակ չի լինում: Այդ գրքերը չկան նաև գրախանութում: Մի ժամանակ Դպրոցական գրադարան խորագրով լույս էին տեսնում ծրագրային գըրքերը. մի՞թե չի կարելի վերսկսել այդ գործը. թերևս այդ արվի գրախանութներում մեծ քանակությամբ կուտակված այն գրքերի հաշվին, որոնք միայն տպագրվում ու չեն վաճառվում:

Մի քանի խոսք ինֆորմացիայի աղբյուրների, հեռուստատեսության մասին: Նախ՝ դրանց միջոցով երեխաների ստացած գիտելիքները լիարժեք ու սիստեմավորված չեն, դրանք հաճախ չեն համընկնում դպրոցական պետական ծրագրերի պահանջներին: Ուստի և բավարարվել միայն ինֆորմացիայի այդ միջոցներով, նշանակում է գիտելիքների ընդհանուր համակարգում շատ բան բաց թողնել:

Մեր կարծիքով դպրոցի և ուսուցման նկատմամբ որոշ աշակերտների հետաքրքրասիրության թուլացումը ոչ թե ժամանակակից ինֆորմացիայի ձևերի հետևանք է, այլ դպրոցական աշխատանքի, հիմնականում ուսուցչի կողմից դասի գիտական, մեթոդա-մանկավարժական ոչ ճիշտ կազմակերպման, ուսուցչի վերաբերմունքի:

Զժխտելով մաթեմատիկայի, քիմիայի, ֆիզիկայի բացառիկ դերը, գտնում ենք, որ տարվել միայն դրանցով, աչքաթող անել հումանիտար առարկաների ուսուցումը, նշանակում է հասարակությանը չտալ լիարժեք, գաղափարապես հասուն, կայուն վարքագիծ ունեցող մարդիկ: Մեր դարն ամենից առաջ մարդու դար է, բոլորը չէ, որ մաթեմատիկոսներ, ֆիզիկոսներ, քիմիկոսներ են դառնալու. սակայն սովետական քաղաքացիներ, աշխատողներ, ծնողներ, հայրեր ու մայրեր բոլորն են դառնալու: Առանց հումանիտար առարկաների լիարժեք ուսուցման ու յուրացման հնարավոր չէ կոմունիզմին արժանի սերունդ դաստիարակել:

Առաջավոր գաղափարախոսությունն իրական ուժ է դառնում սոսկ այն ժամանակ, երբ տիրապետում է մասսաներին, նրանց մղում ակտիվ գործողությունների:

Մարդու կարևոր հատկանիշները՝ նրա աշխարհայացքը, հասարակական պարտքի գիտակցումը, սովետական հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը, մարքսիստական աթեիզմը, աշխատանքի նկատմամբ նոր՝ կոմունիստական վերաբերմունքը, կոլեկտիվիզմն ու մարդասիրությունը, կոմունիստական բարոյականությունն ու կենցաղը մարդու հոգում ձևավորվում են, առաջին հերթին, հումանիտար առարկաների միջոցով:

Ահա թե ինչու պետք է շատ կարդալ: Թող դպրոցականներն իրար գիրք նվիրեն, թող ծնողները ևս իրենց երեխաների ծննդյան տոներին գրքեր նվիրեն նրանց: Թող մեր դըպրոցներում ամենաուրախ տոնը դառնա գրքի տոնը:

Հ. Գ. ԳԱՍՊԱՐՅԱՆ
Երևանի Խ. Աբովյանի անվան միջնակարգ դպրոցի դիրեկտոր, վաստակավոր ուսուցիչ

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ 1973 Թ. ՀԱՄԱՐՆԵՐՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ԵՎ ՆՅՈՒԹԵՐԻ ՑԱՆԿ


| | №№ | էջ |
|---|---|---|
| Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հիսնամյակի մասին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի և ՌՍՖՍՀ Գերագույն սովետի համատեղ հանդիսավոր նիստում, 1972 թ. դեկտեմբերի 21-ին | 1 | 3—54 |
| ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը։ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը՝ ընդունված 1973 թ. ապրիլի 27-ին | 5 | 1— 4 |
| ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի որոշումը ՌՍԴԲԿ II համագումարի 70-ամյակի մասին | 5 | 5— 9 |
| Ընկեր Լ. Ի. Բրեժնևի Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետություն կատարած այցի մասին | 6 | 3— 4 |
| Հօգուտ խաղաղության և համագործակցության | 6 | 5— 8 |
| Ընկեր Լ. Ի. Բրեժնևի Ամերիկայի Միացյալ Նահանգներ կատարած այցի արդյունքների մասին | 7 | 1— 3 |
| ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի և Ֆրանսիայի հանրապետության պրեզիդենտ Ժ. Պոմպիդուի հանդիպման արդյունքների մասին | 7 | 4 |
| Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Հանուն արդարացի, դեմոկրատական խաղաղության, հանուն ժողովուրդների անվտանգության և միջազգային համագործակցության | 11 | 3—25 |
| Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի որոշումը | 12 | 39—45 |


## ԱՌԱՋՆՈՐԴՈՂՆԵՐ


| | №№ | էջ |
|---|---|---|
| Բոլորիս պատվի գործը | 2 | 3— 8 |
| Վճռական բեկում է պետք | 3 | 3— 8 |
| Լենինյան կուրսով | 3 | 9—16 |
| Մարքսիզմ-լենինիզմի կենսահաստատ ուժը | 4 | 3—12 |
| Առավել նպատակասլաց ու ներգործուն | 5 | 10—15 |
| Հասարակության հեղափոխական վերափոխման մեծ դրոշակակիրը | 7 | 5—15 |
| Անշեղորեն կենսագործենք կուսակցության մեծ կանխագծումները կրթության բնագավառում | 9 | 3— 8 |
| Անթերի կատարենք հնգամյակի վճռական տարվա առաջադրանքները | 10 | 3—10 |
| Դեպի նոր հաղթանակներ | 11 | 26—33 |


## ՀՈԴՎԱԾՆԵՐ


| | №№ | էջ |
|---|---|---|
| Աբրահամյան Ա. Ս.— Ներգործուն և արդյունավետ ուսուցման համար | 10 | 20—27 |
| Ադոյան Ա. Գ.— Ստեղծագործական կոլեկտիվի դժվարին ուղիներով | 9 | 17—30 |





| | №№ | էջ |
|---|---|---|
| Ալեքսանդրով Պ. Ս.— Գիտնականի կոչումը | 6 | 17—27 |
| Ամիրյան Ս. Ս.— Բանվոր դասակարգի սոցիալական զարգացումը | 3 | 27—36 |
| Անանյան Լ. Զ.— Սոցիալիստական մրցությունն արդի էտապում | 7 | 65—71 |
| Անիսիմով Պ. Պ.— ՀԿԿ Կենտկոմի պլենումների միջև ընկած ժամանակամիջոցում (1973 թ. ապրիլ—նոյեմբեր) Կենտկոմի բյուրոյի աշխատանքի մասին | 12 | 27—38 |
| Առաքելյան Գ. Ա.— Հայաստանը «Պրավդա»-ի էջերում | 6 | 35—43 |
| Առաքելյան Մ. Հ.— Պատմական հաղթանակի վճռական փուլը | 2 | 9—16 |
| Ասլանյան Ա. Տ.— Հրատապ հարցեր, կարևոր անելիքներ | 2 | 23—30 |
| Ածատրյան Ե. Թ.— Բարձրացնել հանրային արտադրության արդյունավետությունը | 7 | 48—57 |
| Արաբյան Ի. Ա.— Աշխատանքային օրենսգիրքը և աշխատավորական կոլեկտիվները | 10 | 39—45 |
| Արզումանյան Մ. Ս.— Չապականել, ռացիոնալ օգտագործել Սևանի ջուրը | 4 | 41—44 |
| Գաղուկյան Նելլի— Հերոսության ըմբռնման զարգացումը սոցիոլոգիական հայացքներում | 11 | 42—49 |
| Գարակով Գ. Հ.— Բարելավել ինժեներների մաթեմատիկական կրթությունը | 3 | 44—48 |
| Դուբինին Ն.— Ժամանակակից գենետիկայի պրոբլեմները | 10 | 28—38 |
| Եղիազարյան Ա. Մ.— Ազգային հարցի մարքս-լենինյան ուսմունքի զարգացումը | 8 | 25—32 |
| Ենգիբարյան Վ. Վ.— Երիտասարդության համաշխարհային փառատոնը և գաղափարական պայքարը | 6 | 49—55 |
| Երիցյան Խ. Հ.— Ընդդեմ արդի ռևիզիոնիզմի | 1 | 55—63 |
| Զագլադին Վ.— Ողջ մարդկության ապագան | 3 | 17—26 |
| Իգիթխանյան Մ. Խ.— Գաղափարախոսությունը և կառավարումը | 5 | 16—25 |
| Իսայան Թ. Մ.— Սոցիալիզմը և բարոյական առաջընթացը | 2 | 31—36 |
| Կարապետյան Ս. Ա.— Կառավարման արդյունավետ կառուցվածքը | 12 | 46—52 |
| Կունինա Ա.— Միջազգային հարաբերությունների զարգացման բուրժուական տեսությունների քննադատությունը | 5 | 26—37 |
| Հակոբյան Ելենա— Երկարաժամկետ կանխորոշումը գյուղատնտեսության պլանավորման կարևոր էտապն է | 11 | 50—54 |
| Հակոբյան Հ. Մ.— Արդի կապիտալիզմը և սոցիալական հավասարության պրոբլեմը | 12 | 62—71 |
| Հակոբյան Մ. Հ.— Սովետների գործունեության կարևոր ոլորտները | 6 | 28—34 |
| Հայրիյան Ս. Պ.— Առողջապահությունը և արդի գյուղական ընտանիքը | 11 | 55—61 |
| Հարությունյան Լ. Վ.— Բնակչության աճը և երկրագնդի սննդի ռեսուրսները | 9 | 39—45 |
| Հովսեփյան Ս. Ս.— Գիտության թելադրանքով | 2 | 37—45 |
| Ղալումյան Վ. Բ.— Ռացիոնալ օգտագործել գյուղատնտեսական արտադրամիջոցները | 2 | 17—22 |
| Ղարիբյան Գ. Ա., Հակոբյան Լ. Ն.— ՍՍՀՄ սպառման հասարակական ֆոնդերը | 1 | 64—71 |
| Մամիկոնյան Գ. Վ.— ՍՄԿԿ պայքարն ընդդեմ չինական ղեկավարների հակասովետական կուրսի | 5 | 49—54 |
| Մարտիրոսյան Հ. Հ.— Պատմության կեղծարարները գործում են | 9 | 31—38 |
| Մուրադյան Նվարդ— Սոցմրցման ծավալումը պրոֆմիությունների կենսական խնդիրն է | 4 | 23—30 |
| Նավասարդյան Ռ. Գ.— Նոր մարդու ձևավորման կարևոր գործոնը | 3 | 37—43 |
| Պապյան Ս. Կ.— Լուրջ հասումներ խաղաղության պայքարում | 2 | 46—51 |
| Պապյան Ս. Կ.— ՍՄԿԿ լենինյան արտաքին քաղաքական կուրսի նոր հաղթանակները | 8 | 3—12 |
| Սահակյան Ռ. Ի.— Ազգային և ինտերնացիոնալ շահերի զուգակցումը սոցիալիզմի աշխարհում | 9 | 9—16 |
| Սարգսյան Վ. Հ.— Սովետական ժողովրդի մարտական ավանգարդը | 10 | 11—19 |
| Սարոյան Էմմա— Գրենք ճիշտ և արտահայտիչ լեզվով | 7 | 74—81 |
| Սիլվանյան Հ. Հ.— Մեծ առաջընթացի հուսալի գրավականը | 6 | 44—48 |
| Սիմոնյան Ա. Ս.— Պահանջմունքների հասարակական արժույթը | 12 | 53—61 |

| | № № | էջ |
|---|---|---|
| Սիմոնյան Ռ. Հ.— *Ընդդեմ սոցիալիզմի «մոդելների» բուրժուական տեսության* | 6 | 9—16 |
| Վարդանյան Կ. Ս.— *Հայրենասիրության դասակարգային էությունը* | 5 | 38—48 |
| Վարդանյան Հ. Ա.— *Ռազմական էկոնոմիկան և ժամանակակից կապիտալիստական վերարտադրությունը* | 7 | 58—64 |
| Քոչինյան Ա. Ե.— *ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների կատարման, կուսակցական և պետական կարգապահության ամրապնդման գործում սկզբնական կուսկազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը բարձրացնելու միջոցառումների մասին* | 12 | 3—26 |
| Քոչարյան Ս. Ա.— *Ժամանակակից միլիտարիզմի ռեակցիոն էությունը* | 4 | 31—40 |
| Քոչարյան Ս. Ա.— *Խաղաղության ստրատեգիան սոցիալական համակարգերի գոյակցությունն է* | 11 | 34—41 |
| Օդուև Ս. Ֆ.— *Լենինյան փիլիսոփայական ժառանգությունը և ժամանակակից ռևիզիոնիզմի քննադատությունը* | 4 | 13—22 |
| Ֆեոդորով Գ. Կ., Նովիկով Ի. Բ.— *Մարդու և բնական միջավայրի փոխհարաբերությունների պրոբլեմները* | 8 | 13—24 |
| *Հուզող մի հարցի մասին* | 7 | 72—73 |
| *Տեղական սովետների ընտրությունների փայլուն արդյունքները* | 7 | 42—47 |


## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ


| | № № | էջ |
|---|---|---|
| Ալավերդյան Լ. Ս.— *Առաջնահերթ խնդիր* | 8 | 41—46 |
| Արիստակեսյան Ս. Ա.— *Նախ և առաջ աշխատանքի արտադրողականություն* | 2 | 52—59 |
| Բաբաջանյան Ս. Հ.— *Կազմակերպությունը և արտադրությունը* | 6 | 65—71 |
| Դուրունյան Ա. Գ.— *Կուսկոմիտեն և խնայողության ռեժիմը* | 3 | 55—61 |
| Դավթյան Գ. Վ.— *Մեր կարևոր խնդիրը* | 3 | 62—67 |
| Զալինյան Ա. Գ.— *Բարձր մակարդակով վարել կուսփաստաթղթերի փոխանակումը* | 4 | 45—50 |
| Կոստանյան Ռ. Բ.— *Գոհացուցիչ արդյունքներ* | 9 | 63—66 |
| Հակոբյան Հ. Ս.— *Սոցիալիստական մրցության առաջմղիչ ուժը* | 9 | 46—52 |
| Հովհաննիսյան Կ. Ա.— *Արտադրության ռեզերվների և հնարավորությունների օգտագործման համար* | 10 | 46—53 |
| Ճշմարիտյան Յու. Հ.— *Անհրաժեշտ գործնականությամբ* | 2 | 60—62 |
| Նախշճարյան Գ. Ս.— *Ոգեշնչող հեռանկարներ* | 10 | 54—62 |
| Սարգսյան Վ. Թ.— *Կոմունիստների նախաձեռնությունը հաջողությունների երաշխիքն է* | 7 | 82—86 |
| Սաճանյան Ա. Մ.— *Աշխատանքային դաստիարակության նոր օղակը* | 6 | 56—64 |
| Սաճանյան Ա. Մ.— *Առաջընթացի կարևոր գործոնը* | 9 | 53—62 |
| Սաֆարյան Ա. Ա.— *Կուսկազմակերպության մարտունակության բարձրացման համար* | 8 | 47—52 |
| Օհանջանյան Նինա— *Բարելավել ներկուսակցական ինֆորմացիան* | 4 | 51—56 |
| *Քաղաքական ուսուցման բարձր մակարդակի համար* | 3 | 49—54 |


## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ


| | № № | էջ |
|---|---|---|
| Ադամյան Լ. Ի.— *Խստորեն պահպանել հանրային հողը՝ համաժողովրդական հարստությունը* | 10 | 63—68 |
| Ավանյան Ս. Հ.— *Վերելքի ճանապարհով* | 7 | 99—105 |
| Ավետիսյան Խ. Ա.— *Բնակչության միջհանրապետական միգրացիան* | 3 | 68—74 |
| Արզումանյան Պ. Ռ.— *Խաղողագործության և պտղաբուծության զարգացման հեռանկարները Հայաստանում* | 6 | 72—78 |
| Բաղյան Վ. Մ.— *Կատարելագործել ժամանակավարձային բանվորների աշխատանքի նորմավորումը* | 10 | 75—79 |
| Բարսեղյան Ռ. Ա.— *Աշխատանքային կարգապահությունը և արտադրությունը* | 7 | 94—98 |
| Բոլիբեկյան Լ. Ա.— *Գյուղատնտեսության էական մի հարց* | 3 | 75—80 |





| | № № | էջ |
|---|---|---|
| Գիմոյան Գոհար— *Գիտատեխնիկական առաջընթացը և կանանց աշխատանքը* | 6 | 79—85 |
| Դանիելյան Շուշիկ— *Պահանջարկի էությունը և նրա զարգացման օրինաչափությունը* | 4 | 71—75 |
| Դիլիկյան Հ. Ա.— *Հաշվի առնել բնակչության պահանջարկը* | 9 | 67—73 |
| Դաբեկյան Հ. Հ.— *Ճարտարապետությունը և հանդիսատը* | 10 | 69—74 |
| Կարապետյան Կ. Մ.— *Պետպլանի միջամտությունն անհրաժեշտ է* | 4 | 65—70 |
| Կիրակոսյան Ա. Ս.— *Կատարելագործել հանրապետության նյութատեխնիկական մատակարարումը* | 8 | 53—61 |
| Կուրեղյան Վ. Ա.— *Երիտասարդության աշխատանքային ռեսուրսների կազմավորման հարցեր* | 7 | 87—93 |
| Հարությունյան Լյուդմիլա— *Բնակչության աճի ու սպառման հարաբերակցությունը* | 2 | 63—70 |
| Հովհաննիսյան Սիրուշ— *Գյուղատնտեսության ինտենսիվացման հարցի շուրջ* | 8 | 67—70 |
| Ղազարյան Վ. Հ.— *Խորդենին արժեքավոր կուլտուրա է* | 8 | 62—66 |
| Մանուկյան Հ. Ս.— *Ջրակայքի կոլտնտեսության առօրյան* | 11 | 67—73 |
| Մկրտչյան Յու. Գ.— *Աշխատողների առողջության պահպանումը արտադրության մեջ* | 9 | 74—78 |
| Նազարյան Ա. Խ., Գրիգորյան Ս. Մ.— *Մեքենաշինության տեխնիկական զինվածությունն առաջնահերթ խնդիր է* | 5 | 60—65 |
| Շահբազյան Սվետլանա— *Աշխատանքային ռեսուրսների անսպառ աղբյուրը* | 11 | 62—66 |
| Շահինյան Էդ. Պ.— *Լուծում պահանջող կարևոր խնդիրներ* | 4 | 57—64 |
| Պետրոսյան Էլմիրա— *Արդյունավետության հուսալի ազդակները* | 2 | 76—78 |
| Սովարյան Յու. Մ., Հարությունյան Գ. Գ.— *Արդյունահանող և վերամշակող արդյունաբերության հարաբերակցության հարցի շուրջ* | 5 | 55—59 |
| Տեր—Մխիթարյան Խ. Կ.— *Մեքենաշինությանը՝ պատշաճ ուշադրություն* | 2 | 71—75 |


## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ


| | № № | էջ |
|---|---|---|
| Բարանիկ Զ.— *Համաշխարհային օվկիանոսը, սննդի ռեսուրսները և մոնոպոլիաները* | 4 | 100—105 |
| Կարուշյան Վ. Մ.— *Կապիտալիզմի վալյուտային սիստեմի արդի ճգնաժամը* | 9 | 79—85 |
| Կարապետյան Լ. Մ., Սաղաթելյան Ս. Գ.— *Հակակոմունիզմի ջատագովները գրպարտում են* | 8 | 71—79 |
| Փիլոյան Վարսիկ— *Ճգնաժամը խորանում է* | 5 | 94—101 |
| Տիմաշկովա Օ.— *Սկանդինավյան սոցիալ-դեմոկրատիան և արդի կապիտալիզմը* | 12 | 78—89 |


## ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ


| | № № | էջ |
|---|---|---|
| Աղոյան Ավ. Գ.— *Գիտությունների համակարգը և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը* | 2 | 79—90 |
| Իվանյան Գ. Ա.— *Մարսի նորագույն հետազոտությունները* | 3 | 103—109 |
| Սարուխանյան Լ. Ֆ.— *Ինֆորմացիան և գիտատեխնիկական պրոգրեսը* | 2 | 91—97 |


## ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ


| | № № | էջ |
|---|---|---|
| Այվազյան Ղ. Վ.— *Ականավոր բանաստեղծն ու գիտնականը* | 12 | 72—77 |
| Ավետիսյան Ս. Հ.— *Հանճարեղ գիտնականը* | 4 | 76—82 |
| Ավետիսյան Վ. Ս.— *Հեղափոխության արթուն պահակը Լոռում* | 10 | 80—87 |
| Ավետիսյան Վ. Ա.— *Կուսակցության II համագումարի նյութերի հայերեն հրատարակության պատմությունից* | 7 | 26—32 |
| Բեկարևիչ Ա. Գ., Մարկոսյան Ռ. Խ.— *Հերոսական պայքարի արգասիքը* | 1 | 79—84 |
| Իվանով Բ.— *Ռուսին ժողովրդի պատմության կարևոր ուղենիշը* | 1 | 72—78 |
| Ղարիբջանյան Գ. Բ.— *Լենինյան կուսակցության պատմության նշանակալի տարեթիվը* | 7 | 16—25 |

| | №№ | էջ |
|---|---|---|
| Մովսիսյան Ռ. Լ.— *ՍՄԿԿ ուժի ու հզորության աղբյուրները* | 7 | 33—41 |
| Պապյան Թամար— *Մեծ Հոկտեմբերի անմահ երգիչը* | 8 | 33—40 |
| Սարդարյան Լ. Ա.— *Մեր Բարբյուսը* | 5 | 74—80 |
| Սարոյան Էմմա— *Ինտերնացիոնալիզմը կյանքում* | 1 | 102—107 |


## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ, ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ, ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ


| | №№ | էջ |
|---|---|---|
| Գրիգորյան Կ. Ն.— *Յուրի Վեսելովսկին հայ գրականության մասին* | 9 | 109—112 |
| Գևորգյան Վ. Հ.— *Մրցությունը և շրջանային թերթերը* | 5 | 108—112 |
| Կուրիլով Ա. Ս.— *Նեկրասովյան միջօրեականը* | 3 | 109—111 |
| Նալբանդյան Ս. Ս.— *Ծանրակշիռ մենագրություն աննկուն լենինյանի մասին* | 8 | 107—112 |
| Սարոյան Էմմա— *Հրապուրիչ և ճշմարտացի* | 5 | 102—107 |
| Սարոյան Էմմա— *Գրասերի լրագիրը* | 11 | 92—97 |
| Սիմոնյան Ա. Ս.— *Հռետորական արվեստի գիտական մեկնությունը* | 4 | 106—110 |


## ՄԱՄՈՒԼԻ ԷՋԵՐԻՑ


| | №№ | էջ |
|---|---|---|
| Կանդիանո Ցալասկի— *Մուսոլինիի վախճանը* | 12 | 90—99 |
| Ամիրբեկյան Վ. Մ.— *Ռազմաճակատային հայերեն թերթերը մարտական դիրքերում* | 10 | 108—112 |
| *Դաստիարակել համոզված ինտերնացիոնալիստներ* | 5 | 81—88 |


## ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ


| | №№ | էջ |
|---|---|---|
| Արզումանյան Ս. Մ.— *Երևելի ծովակալը և տաղանդավոր գիտնականը* | 2 | 107—112 |
| Սարկիսով Հ. Ա.— *Սոցիալիստական էկոնոմիկայի կազմակերպիչը* | 10 | 96—100 |


## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ


| | №№ | էջ |
|---|---|---|
| Ավետիսյան Կ. Ա.— *Փափազյանը ռեալիզմի հետևողական պաշտպան* | 3 | 94—98 |
| Գաբրիելյան Գ. Հ.— *Գիտական տեսությունների առարկայական բնագավառների հիերարխիայի մասին* | 8 | 97—102 |
| Կարամեշիշյան Ռ. Ա.— *Գաղափարախոսական աշխատանքը Հայաստանում Հայրենական մեծ պատերազմի տարիներին* | 9 | 105—108 |
| Հակոբյան Ա. Ա.— *Վերապատրաստել մանկավարժներին* | 3 | 99—101 |
| Հարությունյան Մելանյա— *Փիլիսոփայության առարկայի տրամաբանական պոզիտիվիստական ըմբռնման քննադատությունը* | 8 | 103—106 |
| Հովհաննիսյան Գ. Հ.— *Սեփականությունը որպես տնտեսական կատեգորիա* | 3 | 88—94 |
| Հովսեփյան Ա. Ս.— *Պատմական մատերիալիզմը և սոցիալական հոգեբանությունը* | 10 | 101—107 |
| Մարգարյան Ե. Ս.— *Ինչպե՞ս անվանել* | 4 | 111—112 |
| Մկրտչյան Գ. Հ.— *Սովորույթի դերը հասարակական կյանքում* | 11 | 98—104 |
| Նալբանդյան Արուսյակ— *Դաստիարակության էական միջոց* | 6 | 108—112 |
| Սահարյան Վ. Պ.— *Ռազմահայրենասիրական դաստիարակության նշանակությունը* | 11 | 105—112 |


## ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ


| | №№ | էջ |
|---|---|---|
| Ավետիսյան Վ. Ա.— *Նոր էջեր Սուրեն Սպանդարյանի կյանքից ու գործունեությունից* | 1 | 94—101 |
| Էմեֆուզյան Վ. Ս.— *Սերգո Օրջոնիկիձեն սիբիրյան աքսորավայրում* | 6 | 94—98 |




## ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ


| | №№ | էջ |
|---|---|---|
| Սահանյան Ա. Մ.— *Պահպանենք լավ ավանդույթները* | 1 | 108—111 |


## ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ


| | №№ | էջ |
|---|---|---|
| Մանասերյան Ն. Մ.— *Ճիշտ կարգավորել հանրային հողօգտագործումը* | 6 | 99—107 |


## ՀՈՒՇԱԳՐՈՒԹՅՈՒՆ


| | №№ | էջ |
|---|---|---|
| Միկոյան Ա. Ի.— *Նիժնի Նովգորոդում* | 1 | 85—93 |
| Միկոյան Ա. Ի.— *Նիժնի Նովգորոդում* | 2 | 98—106 |
| Միկոյան Ա. Ի.— *Նիժնի Նովգորոդում* | 3 | 81—87 |
| Միկոյան Ա. Ի.— *Նիժնի Նովգորոդում* | 4 | 93—99 |
| Միկոյան Ա. Ի.— *Նիժնի Նովգորոդում* | 6 | 86—93 |
| Միկոյան Ա. Ի.— *Նիժնի Նովգորոդում* | 7 | 106—111 |
| Միկոյան Ա. Ի.— *Նիժնի Նովգորոդում* | 8 | 89—96 |
| Միկոյան Ա. Ի.— *Նիժնի Նովգորոդում* | 9 | 86—92 |
| Միկոյան Ա. Ի.— *Նիժնի Նովգորոդում* | 10 | 88—95 |
| Միկոյան Ա. Ի.— *Նիժնի Նովգորոդում* | 11 | 84—91 |
| Պողոսյան Հռիփսիմե— *Հեղափոխության և պոեզիայի ներդաշնակությունը* | 9 | 93—97 |


## ԵՐԻՏԱՍԱՐԴ ՍԵՐՆԴԻ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ


| | №№ | էջ |
|---|---|---|
| Աթայան Ռ. Ա.— *Վ. Սուխոմլինսկու մանկավարժական հայացքները* | 8 | 80—89 |
| Գասպարյան Հ. Գ.— *Աշակերտի աշխարհայացքի ձևավորման հզոր գործոնը* | 12 | 101—105 |
| Կանցյան Լ. Հ.— *Միջնակարգ կրթության զարգացման և կատարելագործման համար* | 9 | 98—104 |


## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ


| | №№ | էջ |
|---|---|---|
| Սադաղյան Ա. Ա.— *ՀԿԿ գործունեությունը կոլեկտիվ ղեկավարության ասպարեզում* | 5 | 66—73 |


## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻՆ


| | №№ | էջ |
|---|---|---|
| Ցիլիպով Ն.— *Գիտատեխնիկական առաջընթացի տնտեսական արդյունավետությունը սոցիալիզմի ժամանակ* | 4 | 83—92 |


## ՄԵԾ ՀԱՅՐԵՆԱԿԱՆԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ


| | №№ | էջ |
|---|---|---|
| Սահակյան Մ. Գ.— *Վրիժառուների ինտերնացիոնալ պարտքը* | 5 | 89—93 |


## ԳՐԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ


| | №№ | էջ |
|---|---|---|
| Ստեփանյան Գ. Խ.— *Ռոմանտիզմի շրջանի արևմտահայ գրականության սոցիալական թեման* | 11 | 74—83 |
| *Մեր նյութերի հետքերով* | 7 | 112 |
| *Մեր նյութերի հետքերով* | 11 | 111 |
| *«Լենինյան ուղիով» ամսագրի 1973 թ. համարներում տպագրված հոդվածների ու նյութերի ցանկ* | 12 | 106—111 |

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվա[illegible] անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հապավումներով հրապարակված [illegible] մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։



Адрес редакции: 375033 Ереван-33, Барекамутян, 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64։

ՎՖ 06502 Պատվեր 1934 Թղթի չափսը 70×108 1/16։ Տիրաժ 13.068 Գինը 25 կոպ

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 3/XII 1973 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան։ Ալ. Խաչհակյան փող. № 28։



## ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

### ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՄՈՎՍԻՍՅԱՆ Ռ. Լ. և ուրիշներ.— Պայքարի և հաղթանակների փառապանծ ուղի։ *ՌՍԴԲԿ երկրորդ համագումարի 70-ամյակի առթիվ։ Երևանի համալսարանի հրատ., 1973։*

ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ Ա. Ն.— Հոկտեմբերյան բարիկադների վրա։ *«Հայաստան» հրատ., 1973 (ռուսերեն)։*

*Մենագրության մեջ շարադրված է հայ բոլշևիկների-կոմունիստների գործունեությունը Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի համար մղված պայքարում։ Այստեղ արտացոլված է այնպիսի ականավոր անձանց գործունեությունը, ինչպիսիք են՝ Ստ. Շահումյանը, Ա. Մյասնիկյանը, Վ. Տերյանը, Վ. Ավանեսովը, Հ. Բժշկյանցը, Ս. Լուկաշինը և ուրիշներ։*

Գիտությունը Հայաստանում 50 տարում։ *Երևան, ԳԱ հրատ., 1973։*

*Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի հրատարակած այս ժողովածուում գետեղված են մեր գիտնականների աշխատությունները հասարակական, ֆիզիկա-մաթեմատիկական, տեխնիկական, քիմիական, կենսաբանական, բժշկական, գյուղատնտեսական գիտությունների զարգացման պատմության վերաբերյալ։*

Մեծ հայրենականի զորավարներն ու զորապետները։ *Ժողովածու։ «Հայաստան» հրատ., 1973։*

*Ժողովածուն ներկայացնում է Ա. Անտոնովի, Ն. Վատուտինի, Ն. Վորոնովի, Ռ. Մալինովսկու, Կ. Ռոկոսովսկու և այլոց հայրենասիրական գործունեությունը Հայրենական մեծ պատերազմում։*

Գրական ժանրեր։ *Պատմական զարգացումը և ժամանակակից վիճակը։ Հեղ. կոլեկտիվ՝ Ջրբաշյան Էդ., Փանյան Յու., Մարգարյան Հ., Մարգունի Հ., «Հայաստան» հրատ., 1973։*

*Հեղինակները քննարկել են գրական ժանրերի չափանիշների ու դասակարգման սկզբունքները, դրանց ծագումը, պատմական զարգացումն ու կրած որակական փոփոխությունները սոցիալիստական ռեալիզմի գրականության մեջ։*

ՍՏԵՓԱՆՅԱՆ Գ. Խ.— Կենսագրական բառարան *(Հայ մշակույթի գործիչներ)։ Երեք հատորով։ Հատոր Ա. (Ա—Թ)։ «Հայաստան» հրատ., 1973։*

Մարդը և էլեկտրոնային հաշվիչ մեքենան *(կառավարման ավտոմատացման հոգեբանական պրոբլեմները)։ Մ., «Экономика» հրատ., 1973։*

*Գրքում տրված է աշխատանքի կառավարման ընդհանուր հոգեբանական բնութագիրը, սահմանված են ավտոմատացման նկատամամբ հոգեբանական մոտեցման ընդհանուր սկզբունքները, քննարկված է մարդու և ԷՀՄ-ի անմիջական հարաբերության այժմյան և հեռանկարային կառուցվածքը։*

*Գրքի հիմքում ընկած են Մոսկվայի պետական համալսարանի հոգեբանության ֆակուլտետի և ՍՍՀՄ ԳԱ հոգեբանության ինստիտուտի աշխատողների ուսումնասիրությունները։*

ՍՏՈԼՅԱՐՈՎ Ի. Ա.— Մաթեմատիկան և կիբեռնետիկան կառավարման պրոցեսում։ *Մ., «Экономика» հրատ., 1973։*

*Այս գրքույկն ընթերցողներին ծանոթացնում է կառավարման կազմակերպման առաջընթացին նպաստող ժամանակակից մեթոդներին, որոշ պատկերացում տալիս մաթեմատիկական ու կիբեռնետիկական մեթոդների մասին։*

Տնտեսական փոխօգնության դաշինքի անդամ երկրների վիճակագրությունը։ *Մ., «Наука» հրատ., 1973։*

ԲՈՐԻՍՈՎԻՉ Գ. Ֆ., ՎԱՍԻԼԵՎ Մ. Գ. և ԴԵԳՈՎ Ա. Գ.— Քիմիական արդյունաբերության իններորդ հնգամյակը։ *Մ., «Химия» հրատ., 1973։*

ԿՈՄԱՐՈՎ Վ. Ե.— Սպասարկման ոլորտը և ժողովրդի բարեկեցությունը, *Մ., «Знание» հրատ., 1973։*

Վիճակագրությունը և էլեկտրոնային հաշվողական տեխնիկան տնտեսագիտության մեջ։ *Մ., «Статистика» հրատ., 1973։*

Գինը՝ 25 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՆՈՐ ՀՈՐԱՏԱՆՑՈՂ ԿՈՄԲԱՅՆ

ПК—9р նոր կոնստրուկցիայի կոմբայնը մեքենայացնում է կարծր ապարների, ածխի և խառը հանքատեսակների հորատանցման աշխատանքները 7—16 մ² հատվածքով։ Եղած կոմբայնների համեմատությամբ այն ունի լուրջ առավելություն— հորատանցման լայնակի կտրվածքի չափերի մեծ դիապազոն (ինչպես մեկ, այնպես էլ երկուղի), առանց վերակարգավորման և մոնտաժային աշխատանքների։

ПК—9р-ի կատարող սարքը քայքայում է լեռնային զանգվածը, բեռնման մասը հավաքում է կտրված լեռնային զանգվածը և տեղափոխում հանքախորշից, կամրջակային և կցային բեռնիչները ածուխը կամ ապարը մղում են հանքախորշում գտնվող կոնվեյերը, վագոնետկան. կոմբայնն ունի նաև էլեկտրասարքավորում, հիդրո-փոշեճնշիչ սխեմ։

Բարձր են կատարող սարքի հզորությունը, շարժունակությունը. ПК—9р-ը ունի նաև բեռնման շրջանցիկ սեղան՝ հավաքող թաթերով։ Ամենակարևոր նորույթը նրա կրակմարիչ սիստեմն է։

## ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ՍՊԻՏԱԿՈՒՑԻ ՍՏԵՂԾՄԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

Սովետական միկրոբիոլոգիական գիտության նոր, կարևոր քայլը սինթետիկ կաուչուկի ստեղծումն է։ Մինչև վերջերս խոշոր նվաճում էր համարվում կերախմորիչների ստացումը նավթավերամշակման թափոններից։ Այժմ միկրոբիոլոգիական սինթեզի նյութերից ստացվել է խմորիչների սպիտակուցային հիդրոլիզատ սննդանյութ։ Բաց դեղին, մաս-սնկային համ ու հոտով փոշի է այն։ Նրա բաղադրության մեջ կան՝ 60—70 տոկոս սպիտակուց, 10—12՝ ածխաջրեր, 4—6՝ հեղուկ. 8՝ հանքաղեր և 2 տոկոս նուկլեինաթթու։ Կան նաև վիտամիններ. 2—10 մգ/կգ$B_1$, 10—15 մգ/կգ$B_2$։

Ջոր հիդրոլիզատը կարելի է օգտագործել (2—5 տոկոսի չափով) ուտելիքը-հացաբուլկեղենը, բանջարեղենի պահածոները, խոհարարական զանազան արտադրանքներն ավելի սննդարար ու համեղ դարձնելու նպատակով։

## ՄԱԹԵՄԱՏԻԿԱՆ ԵՎ ԿԱՐՏՈՖԻԼԸ

Կարտոֆիլի և շաքարի ճակնդեղի ագրոտեխնիկայի՝ Ռումինիայի գիտահետազոտական ինստիտուտում մշակվել է կարտոֆիլի դաշտերի մաթեմատիկական մոդելը. այն օգնում է արագ և հեշտ հաշվելու, թե ինչ քանակությամբ և ինչպիսի պարարտանյութերով պետք է պարարտացնել հողը՝ առավելագույն բերք ստանալու համար։ Այս խնդրի լուծման համար հարկ եղավ հանգամանորեն ուսումնասիրել կարտոֆիլի բազում սորտերը, կլիմայական և եղանակային պայմանները, հողի կազմությունը և այլն։ Արդյունքը եղավ այն, որ պարարտանյութերի նվազ ծախսումով բարձրացավ կարտոֆիլի բերքատվությունն ու որակը։

## 260 ԴՐԱՄԱՆՈՑ ԲԱԶԿԱԹՈՌ

Պրագայի թղթի ֆաբրիկան թողարկում է թղթե կահույքի հարուստ ասորտիմենտ։ Այն թեթև է և էժան։ Սովորաբար, երեխայի մեծանալու հետ, հարկ է լինում ազատվել մանկական կահույքից։ Ամառանոցի համար էլ պետք չէ «հավերժական կահույքը»։ Չեխոսլովակիայում երեխաների համար թղթից պատրաստում են աթոռներ, սեղաններ, գրադարակներ, իսկ ամենափոքրերի համար՝ օրորոցներ ու սայլակներ։ Ամառանոցի համար պատրաստվում է հավաքովի կահույք, որը կարելի է մոնտաժել տարբեր զուգակցումներով։